ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

2

ՓԵՏՐՎԱՐ

ԵՐԵՎԱՆ 1960

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 2
ՓԵՏՐՎԱՐ
1960 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ–ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ–ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVII
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՀԿՊ XXI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՆՈՐ ԽԻԶԱԽՈՒՄՆԵՐԻ Է ԿՈՉՈՒՄ

*Փետրվարի 10—12-ը Երևանում տեղի ունեցավ Հայաստանի Կոմունիստական պարտիայի XXI համագումարը, որը խոշոր իրադարձություն էր ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների, մեր բոլոր աշխատավորների կյանքում: Հայաստանի պարտիական կազմակերպություններն իրենց հերթական համագումարին եկել էին ավելի կուռ ու միասնական շարքերով, ավելի սերտորեն համախմբված ՍՄԿՊ-ի ու նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը:*

*Համագումարը լսեց ու քննարկեց Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի և Վերստուգիչ հանձնաժողովի հաշվետու զեկուցումները, ընդունեց բանաձև և ընտրեց ղեկավար օրգաններ: Համագումարը հավանություն տվեց հաշվետու ժամանակաշրջանում ՀԿՊ Կենտկոմի գործունեությանը և կատարած աշխատանքը գտավ բավարար:*

*ՀԿՊ Կենտկոմի հաշվետվության մեջ, պատգամավորների ելույթներում և համագումարի կողմից միաձայն ընդունված բանաձևում ի մի բերվեցին երկու տարվա աշխատանքի փայլուն արդյունքները և մշակվեցին առաջիկա խնդիրներն ու նրանց հաջող լուծման միջոցառումները:*

*Հաշվետու ժամանակաշրջանը, որն ընդգրկում է 1958 թվականի հունվարին կայացած ՀԿՊ XIX համագումարից հետո անցած ժամանակաշրջանը, լի է պատմական իրադարձություններով ինչպես մեր ամբողջ երկրի, այնպես էլ Սովետական Հայաստանի համար: Այդ ժամանակաշրջանում տեղի ունեցած իրադարձությունների թվում առանձնահատուկ տեղ է գրավում ՍՄԿՊ XXI համագումարը, որը մշակեց մեր երկրում կոմունիզմի ծավալուն կառուցման հոյակապ ծրագիրը, նոր հորիզոններ բացեց ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության, գիտության, կուլտուրայի բուռն զարգացման, սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման համար: Զինված պարտիայի որոշումներով, սովետական մարդիկ նոր, պատմության մեջ չտեսնված խիզախումներ կատարեցին գիտության, տեխնիկայի զարգացման ու մյուս բնագավառներում: Նրանք նվաճեցին տիեզերական նոր տարածություններ, իրականացրին տիեզերական երեք հրթիռների հաջող արձակումը, գործարկեցին «Լենին» ատոմային սառցահատը: Այդ նույն ժամանակաշրջանի կարևոր իրադարձություններից է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ս. Խրուշչովի՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներ կատարած ուղևորությունը, որը վիթխարի դեր խաղաց միջազգային լարվածության թուլացման ու խաղաղության ամրապնդման գործում: Պատմության մեջ նշանակալից ուղենիշ դարձան Միավորված Ազգերի կազմակերպության Ասամբլեայի 14-րդ սեսիայում ընդհանուր և լրիվ զինաթափման վերաբերյալ ընկեր Ն. Ս. Խրուշչովի կողմից մտցրած սովետական առաջարկությունները, ինչպես նաև Սովետական Զին-*

ված Ուժերը ևս մեկ միլիոն 200 հազար մարդով կրճատելու մասին ՍՍՌՄ
Գերագույն Սովետի չորրորդ սեսիայի որոշումը։

Համագումարին Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի տված հաշվետու
զեկուցման մեջ ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Թովմասյանը
հանգամանորեն վերլուծելով հաշվետու ժամանակաշրջանում կատարված աշ-
խատանքը, ցույց տվեց, թե ինչպես ռեսպուբլիկայի աշխատավորները ոգե-
շնչված ՍՄԿՊ XX և XXI համագումարների, պարտիայի Կենտկոմի որոշումնե-
րով, ստեղծագործական եռանդուն աշխատանք են կատարում և իրենց ա-
վանդը մուծում մեր երկրում կոմունիզմի կառուցման վեհ գործում։

ՀԿՊ XXI համագումարը գոհունակությամբ նշեց, որ ռեսպուբլիկայի
պարտիական կազմակերպությունները հաշվետու ժամանակաշրջանում դար-
ձել են ավելի մարտունակ, կատարելագործել են իրենց աշխատանքի ձևերն
ու մեթոդները, նրանք սկսել են ավելի մոտիկից զբաղվել տնտեսական հար-
ցերով, ակտիվորեն ներգործել արդյունաբերական ձեռնարկությունների, կոլ-
տնտեսությունների, սովխոզների աշխատանքի վրա, վեր հանել և լավագույն
ձևով գործի դնել ներքին ռեզերվները՝ ապահովելով պլանային առաջադրանք-
ների կատարումն ու գերակատարումը։ Պարտիական կազմակերպությունների
ծավալած կազմակերպական ու քաղաքական աշխատանքի շնորհիվ վերջին
երկու տարում ռեսպուբլիկայում լուրջ հաջողություններ են ձեռք բերվել ժո-
ղովրդական տնտեսության, կուլտուրայի զարգացման, աշխատավորների բա-
րեկեցության բարձրացման ուղղությամբ։ Հաջողություններն առանձնապես
նշանակալից են արդյունաբերության զարգացման բնագավառում։ Ինչպես
1958, այնպես էլ 1959 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերությունը գե-
րակատարեց համախառն արտադրանքի պլանը։

Պարտիական, սովետական, տնտեսական ու պրոֆմիութենական կազ-
մակերպությունները, մեր բոլոր բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշ-
խատողները Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի անմիջական ղեկավա-
րությամբ ու օգնությամբ հետևողականորեն գործի են վերածում արդյունա-
բերության զարգացման յոթնամյա պլանով նախատեսված մեծ ու պատաս-
խանատու առաջադրանքները։ Նրանց գործադրած ջանքերի և սոցիալիստա-
կան մրցությամբ ստանձնած պարտավորությունների կենսագործման շնոր-
հիվ ռեսպուբլիկայի արդյունաբերությունը յոթնամյակի առաջին տարվա՝ 1959
թվականի համախառն արտադրանքի պլանը կատարեց 105 տոկոսով։ 1959
թվականին, 1958 թվականի համեմատությամբ, արդյունաբերության արտա-
դրանքի աճը ժողովրդատնտեսական պլանով նախատեսված 6,8 տոկոսի փո-
խարեն կազմեց 12 տոկոս և տարեկան պլանից ավելի թողարկվեց մի քանի
հարյուր միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք։ Գոհունակությամբ
պետք է նշել, որ 1959 թվականին ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերու-
թյան համախառն արտադրանքի ծավալը նախապատերազմյանի համեմատու-
թյամբ աճեց ավելի քան 7 անգամ, իսկ 1957 թվականի համեմատությամբ՝
25 տոկոսով։

Անցած երկու տարում շարք են մտել արդյունաբերական նոր ձեռնարկու-
թյուններ, ի հայտ են բերվել մոտավորապես 60 հազար քառակուսի մետր ար-
տադրական տարածություններ, որտեղ կազմակերպվել է արտադրանքի նոր
տեսակների թողարկում։ Արագ տեմպերով զարգացել են արդյունաբերության
բոլոր ճյուղերը՝ հատկապես քիմիական, մեքենաշինական, գործիքաշինա-



կան, գունավոր մետալուրգիայի և շինանյութերի արդյունաբերությունը, խո-
շոր չափով ամրապնդվել է ժողովրդական տնտեսության էներգետիկ բազան։
Հաշվետու ժամանակաշրջանում սկսվեց ու ավարտվեց Աղստաֆա—Երևան
գազամուղի շինարարությունը։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները ծավալուն աշխա-
տանք են կատարել տեխնիկական առաջադիմության, արտադրության մեջ գի-
տության, տեխնիկայի առաջավոր փորձի արմատավորման, արդյունաբերու-
թյան ամբողջ աշխատանքի բարելավման բնագավառում, որի շնորհիվ էլ եր-
կու տարում աշխատանքի արտադրողականությունը աճել է 13 տոկոսով։

Հաջողությունները զգալի են նաև տրանսպորտի, կապի և շինարարու-
թյան բնագավառներում։

Սակայն հաջողությունները կարող էին ավելի մեծ լինել, եթե արդյունա-
բերության ու տրանսպորտի որոշ պարտիական կազմակերպություններ, տըն-
տեսական ղեկավարներ իրենց աշխատանքում լուրջ թերություններ չունենա-
յին։ Նորմալ երևույթ չէ, երբ ռեսպուբլիկայի բոլոր ձեռնարկությունների 12
տոկոսը չի կատարում արդյունաբերական արտադրանքի արտադրական պլանը։
Երևանի էլեկտրալամպերի գործարանը, մսի կոմբինատը, Կիրովականի կարի
ֆաբրիկան երեք տարի է, ինչ չեն կատարում արտադրական պլանները։ Կան
նաև մի շարք ձեռնարկություններ, որոնք չեն կատարում արտադրանքի ասոր-
տիմենտի թողարկման, աշխատանքի արտադրողականության բարձրացման,
ինքնարժեքի իջեցման և շահույթների պլանային առաջադրանքները։

Այդ և եղած մյուս թերությունները նախ հետևանք են այն բանի, որ ժող-
տնտխորհը, նրա ճյուղային վարչությունները, Տեղական արդյունաբերության
մինիստրությունը բավարար օպերատիվություն չեն ցուցաբերում, դիֆերենց-
ված ղեկավարություն և օգնություն ցույց չեն տալիս ետ մնացող ձեռնարկու-
թյուններին ու տեղամասերին։

Համագումարը ժողտնտխորհի, նրա ճյուղային վարչությունների, պար-
տիական կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ միջոցներ ձեռնարկել
եղած թերությունները անհապաղ վերացնելու և յոթնամյակը ժամկետից շուտ
կատարելու ուղղությամբ ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողների
ստանձնած սոցիալիստական պարտավորությունները հետևողականորեն գոր-
ծի վերածելու համար։

ՀԿՊ XXI համագումարը նշեց, որ հաշվետու ժամանակաշրջանը բնութա-
գրվում է նաև գյուղատնտեսական մթերքների արտադրության նշանակալի
աճով, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծու-
թյան մթերատվության ավելացմամբ, ինչպես նաև աշխատանքի արտադրողա-
կանության բարձրացմամբ, կոլտնտեսությունների և սովխոզների եկամուտ-
ների մեծացմամբ, կոլտնտեսականների և սովխոզների բանվորների նյութա-
կան բարեկեցության բարելավմամբ։

1958 թվականին գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավե-
լացնելու գործում ձեռք բերված խոշոր հաջողությունների համար Հայկական
ՍՍՌ-ն պարգևատրվեց ՍՍՌՄ բարձրագույն պարգևով՝ Լենինի շքանշանով։
Ի պատասխան բարձր պարգևի, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխա-
տողները 1959 թվականին նոր հաջողությունների հասան։

Համագումարում բազմաթիվ օրինակներ բերվեցին, թե ինչպես մի շարք
շրջաններ, շատ ու շատ առաջավոր կոլտնտեսություններ, սովխոզներ, բրի-

գադաներ, ֆերմաներ, օղակներ, կոլտնտեսային գյուղի անվանի մարդիկ կեն-
սագործելով սոցիալիստական մրցությունում ստանձնած պարտավորություն-
ները, յոթնամյակի առաջին տարում լուրջ հաջողությունների են հասել գյու-
ղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթե-
րատվության բարձրացման գործում։ Չնայած անցյալ տարվա կլիմայական
անբարենպաստ պայմաններին, Բասարգեչարի շրջանի կոլտնտեսությունները
յուրաքանչյուր հեկտարից ստացան 13,8, Ախուրյանի շրջանի կոլտնտեսու-
թյունները՝ 14,1 ցենտներ հացահատիկ։ Ախուրյանի շրջանի Ախուրիկ գյուղի
կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացել է 520, իսկ օղակավա-
րուհի Սեդա Սարգսյանը՝ 747 ցենտներ շաքարի ճակնդեղ։ Արտաշատի շրջա-
նի կոլտնտեսությունները յուրաքանչյուր հեկտարից հավաքել են 106 ցենտ-
ներ, իսկ Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսությունը՝ 220 ցենտներ, Մեղրու շր-
ջանի Ստալինի անվան կոլտնտեսությունը՝ 260 ցենտներ խաղողի միջին բերք։
Կոտայքի կաթնաանասնապահական սովխոզը 1959 թվականին, նախորդ տար-
վա համեմատությամբ, մսի արտադրությունն ավելացրել է 2 անգամ, կաթի-
նը՝ 17 տոկոսով, բրդինը՝ 80 տոկոսով։ Վեդու շրջանի բամբակագործները
բամբակի հումքի հանձնման պլանը կատարել են 108 տոկոսով։

Գյուղատնտեսության վերելքի գործում ձեռք բերված հաջողությունների
կողքին համագումարը նշեց նաև լուրջ թերություններ։ Որոշ շրջաններում ինչ-
պես հարկն է պայքար չի տարվում գյուղատնտեսական կուլտուրաների բեր-
քատվության բարձրացման համար։ Ցանքի ու մշակության առաջավոր եղա-
նակներն անբավարար կիրառելու, աշխատանքը վատ կազմակերպելու հետևան-
քով մի շարք կոլտնտեսություններ բամբակի, հացահատիկի, կարտոֆիլի և
այլ կուլտուրաների ցածր բերք են ստացել։

Ամբողջությամբ վերցրած ռեսպուբլիկայում դեռևս դանդաղ է ընթանում
անասնաբուծական մթերքների արտադրության և հատկապես հանրային ա-
նասունների գլխաքանակի աճը։ Ամենից առաջ այդ հետևանք է այն բանի, որ
բավարար քանակությամբ կեր չի արտադրվում և չի ապահովվում հոտի նոր-
մալ վերարտադրությունը։ Ավելին, անցած տարի վատ խնամքի ու վատ կե-
րակրման, անասնաբուժական անբավարար սպասարկման հետևանքով ռես-
պուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում մեծ թվով անասուննե-
րի անկում տեղի ունեցավ։ Անասունների մեծ անկում է տեղի ունեցել հատ-
կապես Ղուկասյանի, Աղինի, Ամասիայի, Արթիկի, Թալինի, Ապարանի շրջան-
ների կոլտնտեսություններում։

Պարտիական կազմակերպությունները պետք է գործնական հետևություն-
ներ անեն այն փաստերից, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սով-
խոզները անցած տարի չկատարեցին մսի, կաթի, բրդի և ձվի արտադրու-
թյունն ավելացնելու սոցիալիստական պարտավորությունները։

Համագումարը պարտիական, սովետական կազմակերպությունների, գյու-
ղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողների առջև խնդիր դրեց՝ գործ-
նական միջոցառումների դիմել յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարե-
լու և յոթնամյակի երկրորդ տարում գյուղատնտեսական մթերքների, մասնա-
վորապես անասնաբուծական մթերքների արտադրությունը զգալիորեն ավե-
լացնելու ուղղությամբ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները
մինչև վերջ կենսագործելու համար։

Համագումարը պարտիական կազմակերպությունների առաջիկա տարի-



ների կարևոր խնդիրը համարեց՝ հենվելով գյուղատնտեսության ասպարեզում
ձեռք բերված հաջողությունների և առաջավոր կոլտնտեսությունների ու սով-
խոզների փորձի վրա, հասնել գյուղատնտեսության արտադրության նոր, ավե-
լի նշանակալի վերելքի, անհետաձգելի միջոցներ ձեռք առնել տնտեսապես
թույլ, ետ մնացող կոլտնտեսություններն առաջավորների մակարդակին հասցը-
նելու ուղղությամբ. բարձրացնել հողագործության և անասնաբուծության կուլ-
տուրան և այդ հիման վրա խիստ ավելացնել գյուղատնտեսական մթերքների
արտադրությունը։

Արդյունաբերության ու գյուղատնտեսության հզոր վերելքի շնորհիվ հաշ-
վետու ժամանակաշրջանում բարձրացել է աշխատավորների բարեկեցության
և կուլտուրայի մակարդակը։ Ռեսպուբլիկայի բնակչության ընդհանուր եկա-
մուտները 1959 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, ավելացել են
400 միլիոն ռուբլով։ Վերջին երեք տարում ժողովրդական սպառման ապրանք-
ների գնման համար ռեսպուբլիկայի բնակչության ծախսերը ավելացել են 1,2
միլիարդ ռուբլով, իսկ խնայողական դրամարկղներում ավանդները՝ գրեթե
երեք անգամ։ Խոշոր չափով աճել են նաև սոցիալիստական ապահովության
ծախսերը. մի շարք ձեռնարկություններում կրճատվել է աշխատանքային օրը։
1960 թվականը կնշանավորվի բոլոր բանվորների ու ծառայողների յոթժամյա
և վեցժամյա կրճատ աշխատանքային օրվա անցնելով։ Հաջողությունները
նշանակալից են նաև բնակչության կենցաղային, բժշկական սպասարկման և
բնակարանային պակասի վերացման բնագավառներում։ Բավական է նշել, որ
միայն պետական բնակարանային շինարարության գծով ռեսպուբլիկայում
1958—1959 թվականներին շահագործման է հանձնվել 400 հազար քառակուսի
մետր բնակելի մակերես։ Այդ նույն թվականներին աշխատավորները քաղաք-
ներում ու բանվորական ավաններում կառուցել են 360 հազար քառակուսի
մետր ընդհանուր մակերեսով անհատական բնակելի տներ, իսկ գյուղերում
կառուցվել է 20 հազար տուն։

Ռեսպուբլիկայում որոշակի աշխատանք է կատարված նաև կյանքի հետ
դպրոցի կապի և ՍՍՌՄ-ում ժողովրդական կրթության սիստեմի հետագա
զարգացման մասին ՍՍՌՄ Գերագույն Սովետի օրենքի կենսագործման, միջ-
նակարգ և բարձրագույն կրթությամբ մասնագիտական կադրերի պատրաստ-
ման ու գիտության զարգացման ասպարեզներում։

Սակայն վերոհիշյալ բնագավառներում կան և թերություններ, որոնց
մասին հանգամանորեն խոսվեց համագումարում և պարտիական կազմակեր-
պությունների առջև խնդիր դրվեց՝ անդուլ կերպով բարձրացնել աշխատավոր-
ների նյութական բարեկեցությունն ու կուլտուրան. առանձնապես ուշադրու-
թյուն նվիրել դպրոցների աշխատանքի հետագա բարելավմանը, կյանքի հետ
դպրոցի և բուհերի կապի ամրապնդմանը. մշակել և իրականացնել բնակչու-
թյան բուժսպասարկումը բարելավելու միջոցառումներ։

Համագումարն առանձնահատուկ ուշադրություն նվիրեց պարտիական-
կազմակերպական ու գաղափարական աշխատանքի հարցերին։ Հաշվետու ժա-
մանակաշրջանում զգալի աշխատանք է կատարվել պարտիական կյանքի լենին-
յան նորմերի և կոլեկտիվ ղեկավարության սկզբունքների վերականգնման ու
զարգացման, ներպարտիական դեմոկրատիայի ծավալման, մասսաների հետ
ունեցած կապի ավելի ընդլայնման ու ամրապնդման, ինքնաքննադատության
ու քննադատության զարգացման, պարտիական ու պետական կարգապահու-

*թյան ամրապնդման, սովետական օրգանների, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունների գործունեության հետագա բարելավման գործում:*

*Հաշվետու ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների ամբողջ իդեոլոգիական աշխատանքն ի սպաս է դրվել կոմունիստական պարտիայի առաջադրած խնդիրների իրականացմանը, կոմունիզմ կառուցող նոր մարդու դաստիարակմանը: Այդ գործում որոշակի աշխատանք են կատարել պարտիական լուսավորության ցանցը, մամուլը, ռադիոն ու հեռուստատեսությունը, հրատարակչությունները, ստեղծագործական կազմակերպությունները: Գաղափարական աշխատանքի բովանդակության բարելավման, նրա ձևերի ու մեթոդների կատարելագործման, բանավոր ու տպագիր պրոպագանդայի մակարդակի բարձրացման հարցերը միշտ եղել են Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի ուշադրության կենտրոնում:*

*Չնայած այդ բոլորին, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքն ամբողջությամբ վերցրած իր մակարդակով, թափով և մասշտաբով դեռևս ետ է մնում կյանքի աճած պահանջներից, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման վիթխարի խնդիրներից: «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» ՍՄԿՊ Կենտկոմի 1960 թվականի հունվարի 9-ի որոշման մեջ նշված թերությունները լիովին և ամբողջովին վերաբերում են նաև մեր ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքին:*

*Համագումարը պարտիական կազմակերպություններից պահանջեց վճռականորեն բարելավել գաղափարական աշխատանքը, է՛լ ավելի բարձրացնել նրա մակարդակը, այն սերտորեն կապել մեր երկրում կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման պրակտիկայի հետ, ընդլայնել պրոպագանդայի և ագիտացիայի շրջանակները, անհաշտ պայքար մղել բուրժուական գաղափարախոսության դրսևորումների՝ ռևիզիոնիզմի, բուրժուական նացիոնալիզմի, անցյալի իդեալականացման, ազգային բացառիկության, ազգային սնապարծության ու սահմանափակվածության երևույթների դեմ:*

*Ի մի բերելով հաշվետու ժամանակաշրջանում ձեռք բերված հաջողությունները, ՀԿՊ XXI համագումարը բոլոր աշխատավորներին նոր խիզախումների կոչեց և միջոցառումներ նշեց ժողովրդական տնտեսության, կուլտուրայի զարգացման, աշխատավորների բարեկեցության բարձրացման, պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և մյուս հասարակական կազմակերպությունների աշխատանքի ուժեղացման համար: Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ կազմակերպել համագումարի նյութերի լայն ուսումնասիրությունը և բոլորին մոբիլիզացնել համագումարի որոշումները լրիվ կենսագործելու և Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-ամյակը նորանոր հաջողություններով դիմավորելու համար:*

*ՀԿՊ XXI համագումարը ՍՄԿՊ Կենտկոմին հավաստիացրեց և ռեսպուբլիկայի կոմունիստների ու բոլոր աշխատավորների անունից հայտարարեց, որ Հայաստանի կոմունիստներն ու աշխատավորները տոգորված են մի վճռականությամբ և անխորտակ ձգտմամբ՝ անշեղորեն ու անթերի կենսագործել Կոմունիստական պարտիայի առաջադրանքները, որի իմաստուն ղեկավարությամբ մեր երկիրը վստահորեն ընթանում է դեպի իր պայծառ ապագան՝ դեպի կոմունիզմ:*

# ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

*Պատմական օրեր է ապրում մեր մեծ Հայրենիքը: Նրա կատարած յուրաքանչյուր քայլը լի է անօրինակ սխրագործություններով: Կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման առաջին տարվա փայլուն արդյունքները կրկին անգամ ցույց տվին, թե ինչ հրաշքներ կարող է գործել շահագործման կապանքներից մեկընդմիշտ ազատագրված, իր հայրենիքի բարօրության համար պայքարող մարդը:*

— Մենք լավ սկսեցինք յոթնամյակը,— *ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի ամբիոնից ի լուր աշխարհի հայտարարեց ընկ. Ն. Ս. Խրուշչովը:*

*Ինչքա՜ն շատ բան է ասված այդ մի քանի բառերի մեջ: Ինչպիսի՜ մեծ ուրախություն են պատճառում դրանք սովետական մարդկանց և արտասահմանի մեր բազում բարեկամներին:*

*Դեռ նոր էր դրվում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի առաջին աղյուսը, երբ ամենուրեք ծնունդ առավ յոթնամյակը ժամկետից շուտ ու բարձր ցուցանիշներով կատարելու գաղափարը: Անցած տարի սովետական մարդկանց աշխատանքը հիանալի պտուղներ տվեց ժողովրդական տնտեսության և կուլտուրայի զարգացման բոլոր ասպարեզներում: Բնորոշն այն է, որ ինչպես արդյունաբերությունը, այնպես էլ գյուղատնտեսությունը թողարկեցին ավելի շատ արտադրանք, քան նախատեսված էր յոթնամյակի առաջին տարվա պլանով: Այդ հանգամանքը հիմք է տալիս ասելու, որ յոթնամյակի առաջադրանքները անպայման կիրականացվեն ժամկետից շուտ:*

*Սակայն, չպետք է մոռանալ, որ պարտիայի մեծ նախագծումների իրականացումը, երկրում նյութական բարիքների առատության ստեղծումն ուղղակիորեն կախված է աշխատավորների գիտակցականության մակարդակից: Ինչքան բարձր լինի միլիոնավոր զանգվածների գիտակցականությունը, այնքան հաջողությամբ կկատարվեն կոմունիստական շինարարության պլանները:*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի երկրորդ իսկ օրը, նոյեմբերի 8-ին, Սովետների համառուսական երկրորդ համագումարում արտասանած իր եզրափակման ճառի մեջ, Վ. Ի. Լենինը մերկացնելով ժողովրդի ուժի վերաբերյալ բուրժուական կեղծ պատկերացումը, ասել է. «...ժամանակն է դեն գցելու ամբողջ բուրժուական կեղծիքը՝ ժողովրդի ուժի վերաբերյալ խոսակցություններում: Ուժը, ըստ բուրժուական պատկերացման, այդ այն ժամանակ է, երբ մասսաները կուրորեն սպանդանոց են գնում, հպատակվելով իմպերիալիստական կառավարությունների հրամաններին: Բուրժուազիան միայն այն ժամանակ է պետությունն ուժեղ հա-*

նաչում, երբ նա կարող է կառավարական ապարատի ամբողջ զորությամբ նետել մասսաներին այնտեղ, որտեղ բուրժուական կառավարողներն են ցանկանում։ Մեր հասկացողությունն ուժի մասին այլ է։ Մեր պատկերացումով պետությունն ուժեղ է մասսաների գիտակցականությամբ։ Նա ուժեղ է այն դեպքում, երբ մասսաներն ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչ գիտակցաբար են անում» (ընդգծումը մերն է. Խմբ. Երկեր, հ. 26, էջ 305)։

Այժմ, երբ մեր երկրում սոցիալիզմը հաղթանակել է ոչ միայն լիովին, այլ վերջնականապես, երբ իրականություն է վերածվում մարդկության ամենավսեմ երազանքը՝ կոմունիզմը, յուրաքանչյուր սովետական մարդու համար մարքս-լենինյան աշխարհայացքին բազմակողմանիորեն տիրապետելը, պարտիայի քաղաքականության խոր ըմբռնումը կենսական անհրաժեշտություն են դառնում։

Կոմունիստական պարտիան միշտ էլ մեծ հոգատարություն է հանդես բերել սովետական մարդկանց գիտակցական մակարդակի բարձրացման, նրանց դաստիարակության գործի նկատմամբ։ Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի՝ «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» որոշումն այդ հոգատարության մի նոր, վառ արտահայտություն է, գաղափարական աշխատանքի հետագա բարելավման, նրա ձևերի ու մեթոդների կատարելագործման հրաշալի ծրագիրը։ «Մեր երկրում կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանում,— ասված է ՍՄԿՊ Կենտկոմի որոշման մեջ,— պարտիայի գաղափարական աշխատանքը և առանձնապես դրա վճռական բնագավառը՝ պարտիական պրոպագանդան բացառիկ կարևոր նշանակություն է ստանում»։

## I

ՍՄԿՊ Կենտկոմի այդ որոշման մեջ նախ և առաջ հանրագումարի են բերված վերջին տարիների ընթացքում պարտիայի գաղափարական աշխատանքում ձեռք բերված հաջողությունները։ Այդ հաջողություններից ամենանշանակալիցն այն է, որ պարտիան ընդհանրացնելով կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի փորձը, մարքս-լենինյան տեսությունը հարստացրեց նոր գաղափարներով։ ՍՄԿՊ XX և XXI համագումարների, Կենտրոնական Կոմիտեի պլենումների որոշումներում, ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցումներում ու ելույթներում խոր և բազմակողմանիորեն մշակված են սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու, կոմունիստական հասարակության նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման օրինաչափությունների, հասարակական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման օրինաչափությունների հարցերը։

Ղեկավարվելով պարտիայի XX և XXI համագումարների որոշումներով, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները վերջին տարիներին իրագործեցին մի շարք միջոցառումներ, որոնք նպաստեցին գաղափարական աշխատանքի զգալի աշխուժացմանը։ Պայքար մղելով պարտիական պրոպագանդայի բնագավառում անհատի պաշտամունքի ազդեցության հետևանքով լայն տարածում գտած դոգմատիզմի և տիրացուականության երևույթների



դեմ, հաջողվեց հիմնականում վերացնել այն աննորմալ դրությունը, երբ պրոպագանդան գլխավորապես հագեցած էր անցյալի լուսաբանմամբ, երբ տարիներ ի վեր կոմունիստների քաղաքական ուսուցումը սահմանափակված էր պարտիայի զարգացման նախառևոլյուցիոն շրջանով։ Այժմ մենք կարող ենք ասել, որ կոմունիստական գաղափարների պրոպագանդան ավելի բազմազան ձևեր է ընդունել, բարձրացել է նրա ներգործությունը, կազմակերպող և մոբիլիզացնող դերը։

Վերջին տարիներին Հայաստանի Պետական Հրատարակչությունը զգալի աշխատանք կատարեց մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների երկերի թարգմանության, պարտիայի համագումարների, պլենումների որոշումների, ինչպես նաև սոցիալիստական շինարարության պրակտիկան ընդհանրացնող մի շարք դասագրքերի ու ձեռնարկների հրատարակման ուղղությամբ։ Այդ բոլորը նպաստեցին պարտիական լուսավորության գաղափարական մակարդակի բարձրացմանը, պրոպագանդայի և կյանքի կապի ամրապնդմանը։

Պարտիական կազմակերպություններն առանձնապես լուրջ քայլեր արեցին կադրերին տնտեսական գիտելիքներով զինելու գործում։ Մարքս-լենինյան տնտեսագիտության, արդյունաբերության և գյուղատնտեսության, էկոնոմիկայի կոնկրետ հարցերի ուսումնասիրությունը դրականորեն անդրադարձավ տնտեսության ղեկավարման վրա։ Վերջին շրջանում էլ ավելի ուժեղացավ կոմունիստների և անպարտիական ակտիվիստների հետաքրքրությունը պարտիայի հերոսական պատմության ուսումնասիրության նկատմամբ։ Այժմ մեծ ուշադրություն է հատկացվում պարտիայի պատմության հետհոկտեմբերյան, հատկապես ՍՄԿՊ XX համագումարից հետո անցած կարևորագույն դեպքերով ու իրադարձություններով լի շրջանի հարցերի ուսումնասիրությանը։

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները զգալի հաջողությունների հասան ագիտացիոն-մասսայական աշխատանքի բնագավառում։ Որպես ուրախալի փաստ պետք է նշել պարտիական, սովետական ու տնտեսական ղեկավարների գործունեության ակտիվացումը մասսաների կոմունիստական դաստիարակության գործի կազմակերպման ասպարեզում։

Լուրջ տեղաշարժեր եղան նաև սովետահայ գրականության ու արվեստի զարգացման գործում, որոնցից ամենանշանակալիցն այն է, որ մեր գրողներն ու արվեստագետները սկսեցին ավելի լայնորեն վերարտադրել ժամանակակից կյանքը, կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի հերոսական պայքարը։ Առանձնապես խրախուսելի աշխատանք կատարեցին սովետահայ դրամատուրգները, որոնց արդիական թեմատիկայով գրած պիեսներից մի քանիսը բեմադրության արժանացան Մոսկվայի թատրոններում։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը, պարտիայի քաղաքային և շրջանային կոմիտեները նկատելի աշխատանք կատարեցին դասախոսական պրոպագանդայի գաղափարական մակարդակի բարձրացման, հրատարակությունների, թերթերի, ամսագրերի, ռադիոյի և հեռուստատեսության գործունեության բարելավման ուղղությամբ։

Հասարակական գիտությունների բնագավառում աշխատող մեր գիտնականները վերջին տարիներին հրատարակեցին բազմաթիվ աշխատություններ, որոնք նվիրված են ռևոլյուցիոն բանվորական շարժումների, Հայաստանի պարտիական կազմակերպությունների, սոցիալիստական շինարարության տարբեր էտապների պատմությանը։

## II

Գաղափարական աշխատանքում մենք զգալի փորձ ենք կուտակել, բայց այդ աշխատանքը դեռևս տառապում է մի շարք լուրջ թերություններով։ Պարտիական պրոպագանդայի գլխավոր թերությունը,— ինչպես նշված է ՍՄԿՊ Կենտկոմի հունվարի 9-ի որոշման մեջ,— մնում է դեռևս մինչև վերջ չհաղթահարված կտրվածությունը կյանքից, կոմունիզմի կառուցման պրակտիկայից։

Հաճախ մեր պրոպագանդան դեկլարատիվ, վերացական բնույթ է կրում և այդ պատճառով անհրաժեշտ չափով չի ներգործում կյանքի վրա, չի նպաստում պրակտիկ հարցերի լուծմանը։ Քիչ չեն դեռ այն պրոպագանդիստներն ու դասախոսները, որոնք իրենց աշխատանքը կատարում են հին ձևով, կյանքից կտրված։ Նրանք իրենց ունկնդիրներին «զարմացնելու» համար անհամար ցիտատներ են բերում, փքուն ֆրազներ գործածում, նյութը մատուցում են վերացականորեն, սահմանափակվում ընդհանուր կոչերով ու լոզունգներով։ Այդ կարգի պրոպագանդիստները մոռանում են, որ մարքսիզմ-լենինիզմի գաղափարները հարկավոր է լուսաբանել որոշակի, կոնկրետ խնդիրների ձևով, որպեսզի յուրաքանչյուրն իմանա իր տեղն ու դերը կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։ Կարևորը մարքսիզմ-լենինիզմի էությունը, նրա ստեղծագործական ոգին խոր կերպով ըմբռնելն է, և ոչ թե առանձին ձևակերպումներ ու ֆորմուլաներ սերտելը։

Մեր իրականության մեջ, կյանքի տարբեր բնագավառներում դեռ կան առանձին մարդիկ, որոնք խախտում են սոցիալիզմի՝ «ով չաշխատի, նա չի ուտի» սկզբունքը, ձգտելով ապրել հասարակության հաշվին՝ նրան ոչինչ չտալով։ Ոմանք էլ չարաշահելով կոլեկտիվի վստահությունը, ձեռք են մեկնում հանրային սեփականությանը, զբաղվում են սպեկուլյացիայով, խախտում են սոցիալիստական համակեցության նորմերը։ Մեր պրոպագանդայի բնագավառում աշխատողները, շատ անգամ նկատելով այս բոլորը կամ լռում են, կամ լավագույն դեպքում՝ զայրանում։ Մինչդեռ նրանց ուղղակի պարտքն է հասարակական կարծիք ստեղծել այդ հիվանդագին երևույթների դեմ, ոտքի հանել մասսաներին աշխատանքում տեղ գտած թերությունների, անկարգապահ և վատ վարքագիծ ունեցող մարդկանց դեմ անողոք պայքար մղելու համար։

Ինչպես բանավոր, այնպես էլ գրավոր պրոպագանդայում միանգամայն անբավարար ուշադրություն է հատկացվում հասարակական կյանքում ամեն օր, ամեն ժամ ծնվող նորի, առաջավորի, արտադրության մեջ աշխատող մարդկանց սխրագործությունների ընդհանրացմանն ու մասսայականացմանը։ Թույլ է բացահայտվում պարտիայի վերջին տարիների ընթացքում կիրառած պատմական միջոցառումների տեսական ու գործնական խոր իմաստը։ Մեր պարտիական շատ կազմակերպություններ հաճախ աչքաթող են անում դիֆերենցված աշխատանքը բնակչության հետ, հաշվի չեն առնում մարդկանց տարիքը, կրթությունը, պրոֆեսիան և այլն։

Գաղափարական աշխատանքում հաճախ քիչ ուշադրություն է նվիրվում սոցիալիստական սիստեմի առավելությունների պարզաբանմանը, անբավարար են օգտագործվում մեր Հայրենիքի ձեռք բերած պատմական հաղթանակները մարդկանց սովետական հայրենասիրության և ազգային հպարտության ոգով դաստիարակելու գործում։



Գաղափարական աշխատանքում տեղ գտած մյուս լուրջ թերությունն այն է, որ մենք դեռևս անհրաժեշտ ուշադրություն չենք դարձնում այդ աշխատանքի մասսայականության վրա, չենք լայնացնում նրա ազդեցության ոլորտը։ Մենք հաճախ ամբողջ ուշադրությունը կենտրոնացնելով կոմունիստների, անպարտիական ակտիվիստների ու ինտելիգենցիայի շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի վրա, մոռանում ենք բնակչության մյուս խավերին։ Հատկապես ձևական բնույթ է կրում թոշակառուների, տնային տնտեսուհիների հետ կատարվող աշխատանքը։

Մի շարք տեղերում պահանջված ուշադրություն չեն դարձնում աշխատավորների համար կազմակերպվող մասսայական միջոցառումների բովանդակության վրա։ Այդ պատճառով հաճախ այդ միջոցառումներն անցնում են անհետաքրքիր և իրավացի դժգոհություն առաջացնում ունկնդիրների շրջանում։ Օրինակ, չի կարելի նորմալ համարել, որ ռեսպուբլիկայի քաղաքներում և շրջանային կենտրոններում վերջերս կազմակերպված կուլտուրայի համալսարանները մի քանի հաջող պարապմունքներից հետո զգալի չափով թուլացրին իրենց գործունեությունը։ Կատարյալ անգործության է մատնված մեր գյուղական ակումբների մի զգալի մասը, որտեղ միայն մեծ ընդհատումներով կինոնկարներ են ցուցադրվում։ Իսկ ինչո՞ւ չեն գործում ինքնագործ խմբակները, ինչո՞ւ կուլտուրայի այդ օջախները լրիվ չափով չեն ծառայում մասսաների դաստիարակության գործին։ Բանն այնտեղ է հասնում, որ շատ տեղերում պարտիական կազմակերպությունները, կոլտնտեսությունների ղեկավարները նույնիսկ զլանում են հոգ տանել այնպիսի տարրական բաների մասին, ինչպիսիք են ակումբների կահավորումը, ջեռուցումը և այլն։

Լուրջ թերություններ կան մամուլի, ռադիոյի և հեռուստատեսության գործունեության մեջ։ Մեր թերթերի, ամսագրերի էջերում, ռադիոյի և հեռուստատեսության հաղորդումներում պահանջված խորությամբ չի արտացոլվում ռեսպուբլիկայի աշխատավորների պայքարը յոթնամյակի առաջադրանքների կատարման գործում։ Ջափազանց քիչ են հրապարակախոսական հոդվածները, չի խրախուսվում ակնարկի ժանրը։ Որոշ թերթերի շատ համարներ ձանձրույթ են պատճառում իրենց անկենդան նյութերով, որոնց վրա դրված է միօրինակության կնիքը։ Արտադրության առաջավորների փորձը մատուցվում է մակերեսորեն, առանց խոր ընդհանրացումների։

Մամուլը անբավարար է լուսաբանում գաղափարական աշխատանքի հարցերը։ Թերթերի ու ամսագրերի, ռադիոյի ու հեռուստատեսության աշխատանքներին դեռ քիչ են մասնակցում պարտիական պրոպագանդայի ասպարեզում աշխատողները, գրողներն ու արվեստագետները։ Ցածր մակարդակի վրա է գտնվում մամուլի էջերում ծավալվող քննադատությունը։ Որոշ ժուռնալիստներ խոր չուսումնասիրելով այս կամ այն հարցը, երբեմն էլ էժանագին էֆեկտների ետևից ընկնելով, կամա թե ակամա նահանջում են սկզբունքային դիրքերից և անհարմար վիճակի մեջ ընկնում։ Քննադատելով թերությունները, մամուլի աշխատողը երբեք չպետք է մոռանա իր բերած փաստերի ճշտության մասին, որովհետև լավ չստուգված փաստը, սխալ մեղադրանքը չի կարող վատ չանդրադառնալ տպագիր օրգանի հեղինակության վրա։ Պետք է նշել, որ մեր հրատարակչությունների աշխատողները վերջին շրջանում նկատելիորեն թուլացրել են իրենց պահանջկոտությունը գրական արտադրանքի որակի նկատմամբ։ Մի քանի հրատարակիչների և առանձնապես խմբագիրնե-

րի ու գրախոսների թողտվության պատճառով լույս աշխարհ են գալիս գործեր, որոնք չեն կարող բավարարել ընթերցող լայն մասսաների օր-ավուր աճող պահանջմունքները։ Կան և առանձին աշխատություններ, որոնք ոչ միայն գորշ են, թերամշակ, այլև պարունակում են գաղափարական շատ սխալներ ու աղավաղումներ։ Ցածր է, օրինակ, պատմա-ռևոլյուցիոն թեմատիկայով գրված որոշ աշխատությունների գիտական ու գաղափարական մակարդակը։ Չենք սխալվի, եթե ասենք, որ վերջին շրջանում պատմառևոլյուցիոն թեմատիկայով հրատարակված աշխատությունների մի զգալի մասը տառապում է թեմատիկայի միօրինակությամբ։ Սակայն խնդրի էությունը թեմաների նույնությունը չէ, այլ այն, որ յուրաքանչյուր պատմաբան պարտավոր է տվյալ թեման մշակելիս իր ավանդը ներդնել գիտության մեջ և դրանով օգնել հարցի ճիշտ լուծմանը։

Մեր պատմագրության կուտակած փորձը իրավունք է տալիս պահանջելու, որպեսզի ակտուալ հարցերը մշակվեն գիտական բարձր մակարդակով։ Իսկ դա կարելի է անել, եթե մեր պատմաբանները մինչև վերջ հաղթահարեն դոգմատիզմը, ստեղծագործական մոտեցում և գիտական անհրաժեշտ բարեխղճություն հանդես բերեն իրենց աշխատություններում։

Լենինը ուսուցանում էր, որ հասարակական կյանքն ուսումնասիրող մարքսիստները պետք է նկատի առնեն, որ հասարակական երևույթների բնագավառում չկա ավելի տարածված և ավելի սնանկ պրիոմ, քան առանձին փաստիկներ դուրս կորզելը, օրինակներ խաղալը։ Նա շեշտում էր, որ եթե փաստերը վերցվեն իրենց ամբողջության մեջ, իրենց կապի մեջ, ոչ միայն «համառ», այլև անվերապահորեն ապացուցիչ բան են։

Այս առումով գիտական պատշաճ բարեխղճություն չեն ցուցաբերել ընկ. ընկ. Ս. Վարդանյանը և Ս. Կարապետյանը, որի հետևանքով նրանց աշխատություններում տեղ են գտել պատմական փաստերի որոշ խեղաթյուրումներ։ Բերենք դրանցից մի երկուսը։ Այսպես՝ Ս. Կարապետյանի «Коммунистическая партия в борьбе за победу Октябрьской революции в Армении» աշխատության անվանացանկում նշված է՝ Գ. Ն. Կորգանով, որը հիշատակված է գրքի մի շարք էջերում։ Սակայն 52-րդ էջում նշված Կորգանովը կալվածատեր է, 86, 93, 107, 124 և 425 էջերում նշվածը՝ ռևոլյուցիոներ և Բաքվի կոմունայի ականավոր գործիչ է, 242, 243 էջերում՝ դաշնակ պրովոկատոր և, վերջապես, 249-րդ էջում՝ Կարսի նահանգապետ։ Այս խճողվածությունը կարող է դառնալ թյուրըմբռնումների աղբյուր։

Միևնույն կարգով հեղինակը հին բոլշևիկ, այժմ կենդանի Գևորգ Սահակյանին (տես գրքի 159-րդ էջը), վերագրել է տխրահռչակ էսեռ Սաքո Սահակյանի Բաքվում խաղացած կոնտրռևոլյուցիոն դերը (էջ 16)։

Պատմական փաստերի քմահաճ օգտագործման մի շարք օրինակներ կան նաև Ս. Վարդանյանի «Победа Советской власти в Армении» գրքում։ Բանն այնտեղ է հասել, որ հեղինակը 1920 թվականի մայիսյան ապստամբության զոհերի շարքն է դասել մի շարք կոմունիստների, որոնք ոչ միայն չեն զոհվել մայիսյան օրերին, այլև նրանցից մի քանիսը մինչև օրս էլ դեռ ապրում են (տես գրքի 254 էջը)։

Պատմական իրադարձությունների, հասարակական-քաղաքական հոսանքների ու գործիչների տվյալ ժամանակաշրջանի գործունեության ճշմարտացի գնահատումը մարքսիստ պատմաբանի կարևորագույն արժանիքն է։



Մինչդեռ, պատմական փաստերի քմահաճ օգտագործումը և շարադրանքի պատմական շրջանակների անտեսումը՝ արժեզրկում է հեղինակի աշխատությունը։

Պարտիական կազմակերպությունները ոչ բոլոր տեղերում են պահանջված ուշադրություն դարձնում պրոպագանդիստական կադրերի ճիշտ ընտրության, տեղաբաշխման ու վերապատրաստման վրա։ Մի շարք ղեկավար աշխատողներ թերագնահատում են գաղափարական աշխատանքը, մոռանալով, որ աշխատավորների առջև հաճախակի հանդես գալը, նրանց դաստիարակությունն իրենց ամենաառաջնահերթ պարտականություններից մեկն է։

## III

Որո՞նք են պարտիական պրոպագանդայի գլխավոր խնդիրները։

Նախ և առաջ հարկավոր է խոր կերպով և համակողմանիորեն պարզաբանել մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարները։ Իսկ դրա համար հարկավոր է ամեն կերպ բարելավել պրոպագանդիստական աշխատանքը, բարձրացնել նրա մակարդակը, կատարելագործել այդ աշխատանքի ձևերն ու մեթոդները։ Կոմունիստական գաղափարների խոր տիրապետման փորձված միջոցներից մեկը պարտիական լուսավորությունն է։ Այդ գործի կազմակերպման մեջ ծանրության կենտրոնը պետք է փոխադրել **քաղաքական ինքնակրթության** վրա։ Չպետք է մոռանալ, որ Սովետական իշխանության տարիներին հսկայական չափով բարձրացել է մարդկանց կրթական մակարդակը։ Կոմունիստների և անպարտիական ակտիվիստների բացարձակ մեծամասնությունն առանց դժվարության կարող է ինքնուրույն աշխատել գրքի վրա։ Իսկ նրանց, որ անհրաժեշտ պատրաստականություն չունենալու հետևանքով այդ անել չեն կարող, պետք է ընդգրկել քաղդպրոցներում և խմբակներում։ Սակայն ինքնուրույն ուսուցումը չի կարելի թողնել բախտի քմահաճույքին։ Պարտիական կազմակերպությունները պարտավոր են ամենօրյա օգնություն ցույց տալ ինքնակրթությամբ զբաղվողներին, գլխավոր ուշադրությունը կենտրոնացնելով ինքնուրույն ուսուցման կոլեկտիվ, սեմինարային ձևերի վրա։ Չպետք է հանդուրժել այն փաստերը, երբ շատ կոմունիստներ բոլորովին չեն աշխատում իրենց գաղափարական-քաղաքական մակարդակը բարձրացնելու ուղղությամբ, կամ տարիներ շարունակ ուսումնասիրում են միևնույն թեմաները, որոնք, որպես կանոն խիստ հեռու են արդիականությունից։

Հայտնի է, որ պարտիական պրոպագանդայի մակարդակը վճռական չափով կախված է պրոպագանդիստական կադրերից։ Այդ պատճառով հարկավոր է էլ ավելի մեծ հոգատարություն ցույց տալ պրոպագանդիստական կադրերի ընտրությանն ու նրանց վերապատրաստմանը։ Ամեն կերպ պետք է խրախուսել լավագույն պրոպագանդիստների աշխատանքը, ընդհանրացնել և լայնորեն տարածել նրանց կուտակած փորձը։ Այս գործում մեծ դեր պիտի կատարեն քաղաքական լուսավորության տներն ու կաբինետները։

Ժամանակն է, որ մենք ավելի լայնացնենք պարտիական պրոպագանդիստական աշխատանքի շրջանակները այն հաշվով, որպեսզի ոչ մի մարդ դուրս չմնա մեր քաղաքական ազդեցությունից։ Իսկ դրա համար հարկավոր է, որ գաղափարական աշխատանքը կապվի կյանքի հետ, մարքսիզմ-լենինիզմի դրույթները պարզաբանելիս մեկընդմիշտ վերջ տրվի վերացականու-

թյանը։ Մասսաների հետ պետք է խոսել պարզ, գրավիչ ու մատչելի լեզվով, կյանքից քաղած օրինակներով ու փաստերով։

Գաղափարական ներգործության բոլոր լծակները — պարտիական լուսավորությունը, ագիտացիան, կուլտուր-լուսավորական հիմնարկները, մամուլը, արվեստը, գրականությունն ու հասարակական գիտությունները պետք է հըմտորեն ծառայեցնել մասսաների կոմունիստական դաստիարակությանը, մեր Հայրենիքի էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա բարգավաճմանը։

Գաղափարական աշխատանքում այսուհետև ևս պետք է հատուկ ուշադրություն դարձնել բուրժուական գաղափարախոսության աղդեցությունների, ազգային սահմանափակության, ապոլիտիկության, կոսմոպոլիտիզմի դրսևորումների դեմ մղվող պայքարին։ Բուրժուական գործիչները և նրանց ձայնակցող ամեն գույնի աջ օպորտունիստներն ու ռևիզիոնիստները «հերքելով» տարբեր սոցիալական սիստեմ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը, ամեն կերպ ձգտում են այդ սկզբունքը տարածել նաև իդեոլոգիայի բնագավառի վրա։ Սակայն, մենք չպետք է մոռանանք, որ իդեոլոգիայի ասպարեզում սոցիալիզմի և կապիտալիզմի միջև խաղաղ գոյակցության մասին ոչ մի խոսք լինել չի կարող։ Այստեղ անհնար է կոմպրոմիսը։

Պարտիական պրոպագանդայի խնդիրն է՝ խոր պարզաբանել Սովետական Միության խաղաղասեր քաղաքականության էությունը, աշխատավորներին դաստիարակել խաղաղության և առաջադիմության ուժերի ավանգարդում պայքարող իրենց մեծ Հայրենիքի համար հպարտության ոգով, անողոքաբար մերկացնել «սառը պատերազմի» կողմնակիցներին։

Եկել են այնպիսի ժամանակներ, երբ թշնամիներն անգամ չեն կարող ժխտել սոցիալիստական սիստեմի հաջողությունները։ Վերցնենք, օրինակ, մեր երկրի տնտեսական զարգացման տեմպերի հարցը, որի շուրջը տարիներ շարունակ քիչ հերյուրանքներ չեն տարածել կապիտալիզմի երկրպագուները։ «ՍՍՌՄ տնտեսական զարգացման բարձր տեմպերը,— նշում է Ն. Ս. Խրուշչովը,— այժմ արդեն արտասահմանում ոչ մեկի մեջ կասկածանքներ չեն առաջացնում։ Վեճեր են լինում միայն այն բանի շուրջը, թե մենք Ամերիկայի Միացյալ Նահանգներից քանի՞ անգամ արագ ենք առաջ շարժվում և ե՞րբ ժամկետում մենք կհասնենք նրանց»։ Ահա թե ինչով են մտահոգված կապիտալիստական այդ ամենահզոր երկրի բազմաթիվ տնտեսագետները, գործարար շրջանների ներկայացուցիչներն ու պետական գործիչները։

Սովետական Միության և սոցիալիստական լագերի՝ մյուս երկրների ձեռք բերած հաջողությունները, նրանց հետագա առաջընթացի հեռանկարը սարսափով է համակել կապիտալիստական աշխարհի տերերին։ Բուրժուական հասարակարգի պաշտպանները տագնապահար հարցնում են՝ ո՞ւր է գնում կապիտալիզմը, ո՞րն է նրա ապագան։ Այս հարցերին տարբեր պատասխաններ են տրվում, բայց դրանց բոլորի իմաստը նույնն է՝ ինչ գնով էլ լինի փրկել իր դարն ապրած կապիտալիստական աշխարհը։

Բուրժուական որոշ գործիչներ լրջորեն պնդում են, որ արդի կապիտալիզմը նման չէ այն կապիտալիզմին, որի մասին գրել է Կ. Մարքսը, որ նա այժմ «փոխվել է իր բնույթով», դարձել է «ժողովրդական», «հումանիստական» և այլն։ Այստեղ բուրժուական գործիչներին օգնում են աջ օպորտունիստներն ու ռևիզիոնիստները, որոնք նույնպես փորձում են «ապացուցել»,



որ ժամանակները փոխվել են, հետևաբար պետք է հրաժարվել դասակարգային պայքարից։

Կապիտալիստական աշխարհի մի շարք անհեռատես քաղաքագետներ ձգտում են հարություն տալ Դալլեսի դոգմաներին, կոչ անելով՝ գործել «ուժի դիրքերից»։ Ռեալականության զգացումից զուրկ այդ պարոնները չեն ուզում հասկանալ, որ այդ միջոցներով չի կարելի փոխել պատմության ընթացքը, որ աշխարհում այլևս չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային Սովետական Միությունում վերականգնել կապիտալիզմը, ընկճել սոցիալիստական լագերը։

Սակայն առավել լրջախոհ մարդիկ պարզ տեսնում են, որ ուժերի ներկա փոխհարաբերությունների պայմաններում անհնար է հաղթել կոմունիզմին։ Դրանից ելնելով նրանք գտնում են, որ պետք է հրաժարվել «ուժի դիրքերից» տարվող քաղաքականությունից և ընդունել երկու սիստեմների խաղաղ մըրցակցության լոզունգը։ Ընդ որում, այդ քաղաքագետները պահանջում են «ձեռք չտալ» ոչ սոցիալիզմին և ոչ էլ կապիտալիզմին։ Նրանք կարծում են, որ այս ձևով կարող են հարկադրել Սովետական Միությանը՝ «աստիճանաբար փոխել իր քաղաքականությունը» և այդ ճանապարհով հասնել «կոմունիզմի վերասերմանը»։

Այս կարգի դատողությունները ծիծաղաշարժ լինելուց բացի, անտրամաբանական են և զուրկ ամեն մի հիմքից։

Հազար անգամ ճիշտ էին կոմունիզմի մեծ հիմնադիրներ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը, երբ ասում էին, որ կապիտալիզմը «նման է այն կախարդին, որը չի կարող այլևս իշխել իր ոգեկոչած ստորերկրյա ուժերին... Հասարակությունն այլևս չի կարող նրա իշխանության տակ ապրել, այսինքն՝ նրա կյանքն այլևս անհամատեղելի է հասարակության հետ... Նրա կործանումն ու պրոլետարիատի հաղթանակը հավասարապես անխուսափելի են»։

Սովետական մարդիկ և նրանց հետ մեկտեղ ամբողջ առաջադեմ մարդկությունը կրկնում են ընկ. Ն. Ս. Խրուշչովի խոսքերը, որ արտասանեց նա ՍՍՌՄ Գերագույն Սովետի 4-րդ սեսիայի բարձր ամբիոնից։

«Իր դարն ապրող կապիտալիստական հասարակարգին փոխարինելու է գալիս նոր, արդարացի մի հասարակարգ, որն ապահովում է հավասար պայմաններ, տալիս է բոլոր բարիքներն ամեն մի աշխատավոր մարդու։ Ազատության, հավասարության, առատության ու խաղաղության հիասքանչ ծաղիկներով է պատած այդ նոր հասարակարգի ուղին, և նրա հաղթական երթը չի կարելի կասեցնել։ Այս է պատմական զարգացման օրենքը»։

Պարտիական պրոպագանդայի կարևորագույն խնդիրներից մեկն է խոր կերպով պարզաբանել Սովետական Միության խաղաղասեր արտաքին քաղաքականությունը։ Դրա հետ մեկտեղ պարտիայի Կենտրոնական Կոմիտեն պահանջում է ակտիվ, հարձակողական պայքար մղել մարքսիզմ-լենինիզմի նկատմամբ թշնամի բուրժուական գաղափարախոսության ու նրա աջ սոցիալիստական և ռևիզիոնիստական քարոզիչների դեմ, անդուլ կերպով բարձրացնել սովետական մարդկանց քաղաքական զգոնությունը։

Կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման պայմաններում բացառիկ կարևոր նշանակություն է ստանում մասսաներին ժողովուրդների լենինյան անխախտ բարեկամության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակությունը։ Պարտիական կազմակերպությունները և



2 «Լենինյան ուղիով», № 2

մամուլը պետք է ավելի ուժեղացնեն իրենց պայքարը մեր առանձին գրողների ու գիտնականների աշխատություններում մեջ դրսևորվող ազգային սահմանափակվածության ու սնապարծության երևույթների, անցյալի իդեալականացման ու սոցիալական հակասությունների անտեսման արատների դեմ։

Պարտիական կազմակերպությունները պետք է բարձրացնեն իրենց պահանջկոտությունը հրատարակչությունների, մամուլի օրգանների, ստեղծագործական միությունների, հասարակական գիտությունների ասպարեզում աշխատող ընկերների գործունեության նկատմամբ, օգնեն նրանց ժամանակին բացահայտելու և մինչև վերջ ուղղելու սխալները։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն պարտիական պրոպագանդայի գլխավոր խնդիրն է համարում՝ խոր կերպով ու համակողմանիորեն պարզաբանել մարքսիզմ–լենինիզմի գաղափարները, ցույց տալ մեր երկրում սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար պարտիայի մղած պայքարի ընթացքում դրանց հաջող կենսագործումը, սովորեցնել—պրակտիկ գործունեության մեջ օգտագործել և ստեղծագործաբար զարգացնել պարտիայի կուտակած տեսական հարստությունը, աշխատավորներին ոտքի հանել պայքարելու հանուն պարտիայի ծրագրային պահանջների կենսագործման, դաստիարակել կոմունիզմի ակտիվ և կայուն մարտիկներ։

Վերջերս ավարտված ՀԿՊ XXI համագումարը լուրջ ուշադրություն դարձրեց նաև պարտիական կազմակերպությունների առջև ծառացած գաղափարական աշխատանքի կարևորագույն խնդիրներին։ Ի մի բերելով հաշվետու ժամանակաշրջանում այդ բնագավառում ձեռք բերած մեր լուրջ հաջողությունները, համագումարը միաժամանակ վեր հանեց գաղափարական աշխատանքում տեղ գտած թերությունները ու սխալները։ Համագումարը պահանջեց պարտկազմակերպություններից՝ ամենուրեք բարելավել գաղափարական աշխատանքի՝ նրա վճռական բնագավառ հանդիսացող պարտիական պրոպագանդայի վիճակը, բարձրացնել այն մեր կյանքի առաջադրած նոր, մեծ խնդիրների մակարդակին։

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՊԱՐՏԻԱՅԻ ՂԵԿԱՎԱՐ ԴԵՐԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

Խ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

Դեռևս XX դարի սկզբին Վ. Ի. Լենինն ի լուր ամբողջ աշխարհի հայտարարեց. «Տվեք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն և մենք կշրջենք Ռուսաստանը»։ Ռուսական մարքսիստները Լենինի գլխավորությամբ միջազգային բանվորական շարժման մեջ առաջինն ստեղծեցին այդ կազմակերպությունը՝ նոր տիպի պարտիան, սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի պարտիան, որն իր ամբողջ ուժերը, ռևոլյուցիոն կիրքը, անսահման եռանդը նվիրաբերեց աշխատավորության ազատագրման, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման մեծ գործին։

Կոմունիստական պարտիան հասարակական ասպարեզ իջավ ավելի քան կես դար առաջ։ Սկիզբ առնելով մարքսիստական փոքր խմբակներից, Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունից», նա դարձել է ամուր, միասնական, համախմբված համախոհների 8 միլիոնանոց միություն, անցել է պայքարի ու հաղթանակների փառապանծ ուղի և ահա 42 տարի է բոլոր փոթորիկների միջով, հաղթահարելով ամեն տեսակ խոչընդոտներն ու դժվարությունները, աննահանջ կերպով կոմունիզմի նավը վարում է դեպի ցանկալի ափերը։

***

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումից հետո փոխվեց Կոմունիստական պարտիայի գործունեության բովանդակությունը։ Եթե մինչ այդ պարտիան պրոլետարիատին գրոհի էր պատրաստում հինը, իր դարն ապրածը ոչնչացնելու համար, այժմ նրա առջև ծառացան նորի ստեղծման, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման խնդիրները։

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ներքին և արտաքին թշնամիների դեմ մղած հերոսական պայքարում պաշտպանեց Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի նվաճումները, կենսագործեց երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման պարտիայի մշակած ծրագիրը, իրականացրեց իսկական կուլտուրական ռևոլյուցիա, հաջողությամբ կառուցեց սոցիալիզմ, պատմական խոշոր հաղթանակ տարավ երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին և այժմ վստահորեն առաջ է ընթանում դեպի կոմունիզմի լուսաշող գագաթները։

Տնտեսական և հասարակական կյանքի բոլոր բնագավառներում կատար-

ված վիթխարի վերափոխությունները Կոմունիստական պարտիայի, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի հեռատես և ճիշտ քաղաքականության, մեր աշխատավորների անձնվեր աշխատանքի արդյունքն են։

Ժողովրդի նյութական ու հոգևոր կյանքի, մեր երկրի ներքին և արտաքին քաղաքականության ղեկավարման բնագավառում Կոմունիստական պարտիայի՝ որպես սովետական ժողովրդի առաջավոր ջոկատի, մեր հաղթանակների ոգեշնչողի և կազմակերպչի դերն էլ ավելի է աճում կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։ ՍՄԿՊ XXI համագումարի բանաձևում կարդում ենք. «Սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար պայքարի ամբողջ փորձը ցույց է տալիս, որ կոմունիստական հասարակարգի կառուցման պրոցեսում պարտիայի՝ որպես ժողովրդի փորձված ավանգարդի և հասարակական կազմակերպության բարձրագույն ձևի դերը ավելի ու ավելի է աճում»։

Պարտիայի ղեկավար դերի աճը պայմանավորված է այն տնտեսական, քաղաքական ու կուլտուրական խնդիրների վիթխարիությամբ, որոնք սովետական ժողովուրդը լուծում է և պետք է լուծի կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։

Յոթնամյակում մեծ աշխատանք է կատարվելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ուղղությամբ, բուռն թափով զարգանալու են մեր երկրի արտադրողական ուժերը, ավելի կծաղկի սովետական դեմոկրատիան, կբարձրանա աշխատավորների կոմունիստական գիտակցականությունը, արմատական և նոր փոփոխություններ կկատարվեն հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։

Այդ բոլոր խնդիրների լուծումը պահանջում է պարտիայի ղեկավար դերի ուժեղացում, նրա տեսական-քաղաքական, տնտեսական, կազմակերպական գործունեության ընդլայնում ու խորացում։ Ղեկավարվելով մարքս-լենինյան տեսությամբ, հենվելով բանվոր դասակարգի, ամբողջ ժողովրդի բազմահարուստ փորձի վրա, պարտիան մշակում և հաջողությամբ իրականացնում է կոմունիստական շինարարության պլանները, մասսաներին մոբիլիզացնում և պայքարի է կոչում դրանց կենսագործման համար։

Կոմունիզմի ծավալուն կառուցման շրջանում առաջ են գալիս նորանոր բարդ պրոբլեմներ, էլ ավելի է աճում հասարակության տնտեսական, քաղաքական և կուլտուրական կյանքի գիտական ղեկավարման նշանակությունը, միլիոնավոր մասսաների զինումը հասարակության զարգացման, կոմունիզմի կառուցման օրենքների իմացությամբ։ Որքան աշխատավորները լավ իմանան մեր առաջընթացի խնդիրները, նպատակը և ուղղությունը, այնքան ավելի հաջող կընթանա կոմունիզմի կառուցումը։ Միայն մարքսիզմ-լենինիզմով զինված և այդ ուսմունքը ստեղծագործաբար կիրառելու ընդունակ պարտիան կարող է պատվով լուծել այդ մեծ խնդիրները, գիտականորեն իմաստավորել նոր երևույթները, մասսաների նոր պրակտիկան, պարզորոշ պատասխան տալ կյանքի առաջադրած նոր, հրատապ հարցերին։ «...Մարքսիստը պետք է հաշվի առնի կենդանի կյանքը,— ասել է Լենինը,— իրականության ճշգրիտ փաստերը, և ոչ թե շարունակի կառչել երեկվա թեորիային, որը, ինչպես ամեն մի թեորիա, լավագույն դեպքում միայն նշում է հիմնականը, ընդհանուրը, միայն մոտենում է կյանքի բարդությունն ընդգրկելուն» (Երկեր, հ. 24, էջ 33)։



Մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման ասպարեզում խոշոր ավանդ մուծեց պարտիայի XXI համագումարը։ Համագումարին տրված ընկեր Խրուշչովի զեկուցումը ստեղծագործական մարքսիզմի, մի շարք կարևոր հարցերի տեսական մշակման, կոմունիստական շինարարության պրակտիկայի հարուստ փորձի ընդհանրացման փայլուն օրինակ է։

Կոմունիստական պարտիայի դերն աճում է երկրի տնտեսական կյանքում։ Այժմ պարտիայի ուշադրության կենտրոնում են գտնվում կոմունիզմի տնտեսական պրոբլեմները, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման խնդիրները։ Զինված տնտեսական զարգացման օրենքների իմացությամբ, պարտիան սահմանում է կոմունիզմի կառուցման գլխավոր խնդիրները և որոշում նրանց լուծման ուղիները, մշտապես կատարելագործում ժողովրդական տնտեսության կառավարման ձևերը։ ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների որոշումները կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման կոնկրետ ուղիների վերաբերյալ՝ Կոմունիստական պարտիայի անընդհատ աճող ղեկավար դերի փայլուն վկայությունն են տնտեսական շինարարության բնագավառում։

Պարտիան կարողանում է յուրաքանչյուր նոր էտապում գտնել գլխավորը, վճռական օղակը, բացահայտել հակասությունները, թերությունները, ճիշտ սահմանել մեր զարգացման հեռանկարները և վերացնել այն ամենը, ինչ խանգարում է մեր առաջընթացին։ Կոմունիստական պարտիան վերջին տարիներին իրականացրեց համարձակ, իրոք ռևոլյուցիոն տնտեսական միջոցառումների մի ամբողջ սիստեմ. արմատապես վերակառուցվեց արդյունաբերության և շինարարության ղեկավարումը, ստեղծվեցին ժողտնտխորհները, բարելավվեց ժողովրդական տնտեսության պլանավորումը, որոշումներ ընդունվեցին քիմիական, գազի արդյունաբերության զարգացման, տեխնիկական առաջադիմության, ինչպես նաև արդյունաբերության մյուս ճյուղերի զարգացման վերաբերյալ։ Այդ բոլոր միջոցառումները հնարավորություն տվեցին գործողության մեջ դնել արտադրության զարգացումն արագացնող տնտեսական և քաղաքական լծակները, բարոյական գործոնները։ Դրա փայլուն վկայությունն այն է, որ, ինչպես երբեք, աննախընթաց վերելքի ուղիով է ընթանում մեր արդյունաբերությունը, բոլոր ռեսպուբլիկաներն ու տնտեսական շրջանները հաջողությամբ կատարում և գերակատարում են պետական առաջադրանքները։

Կոմունիստական պարտիայի խորատեսությունը վառ կերպով դրսևորվեց գյուղատնտեսության ետ մնալը հաղթահարելու գործում։ Պարտիան ուշի ուշով ուսումնասիրելով գործերի վիճակը, ժողովրդի առջև ուղղամտորեն, բոլշևիկյան սկզբունքայնությամբ բացահայտեց գյուղատնտեսության ետ մնալու պատճառները, մի շարք համարձակ միջոցառումներ մշակեց դրանց վերացման համար։ Պարտիան խամ ու խոպան հողերի յուրացման կուրս վերցրեց, փոխեց գյուղատնտեսության պլանավորման կարգը, վերանայեց գյուղատնտեսական մթերքների գները, բարձրացրեց կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը հանրային տնտեսության զարգացման գործում և այլն։ Այժմ բոլորն են տեսնում, թե պարտիայի իրականացրած միջոցառումների շնորհիվ կարճ ժամանակամիջոցում ինչպիսի լուրջ հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման բնագավառում,

ինչպես է բարձրացել կոլտնտեսային գյուղի աշխատավորների նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը։

Սրանից դեռևս 55 տարի առաջ Վ. Ի. Լենինը գրել է, որ կոմունիզմը պետք է կառուցվի «...հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացումն ապահովելու համար» (Երկեր, հատ. 6, էջ 53)։ Ժողովրդի բարեկեցության բարձրացման ուղղությամբ վերջին տարիներին իրականացվել են այնպիսի միջոցառումներ, ինչպիսիք են բանվորների և ծառայողների ցածր վարձատրվող կատեգորիաների աշխատավարձի բարձրացումը, նախատոնական և նախահանգստյան օրերին աշխատանքային օրվա կրճատումը, ծանր արդյունաբերության մի շարք ճյուղերում կրճատ աշխատանքային օր մտցնելը, հղիության ու ծննդաբերության շրջանում կանանց տրվող արձակուրդների ժամկետի երկարացումը, ուսման վարձի վերացումը, պետական կենսաթոշակների նոր օրենքը և այլն։

Վերջին հինգ տարիներին պարտիայի կենսագործած միջոցառումներն իրենց թափով և նշանակությամբ նմանը չունեն պատմության մեջ։ Սովետական մարդիկ քիչ սահմանագծեր չեն գրավել, քիչ բարձունքներ չեն գրոհել։ Բայց մեզ մոտ դեռ չի եղել այնպիսի ժամանակաշրջան, որն աշխատանքի ծավալով, տնտեսական վերափոխությունների խորությամբ համազոր լիներ ներկա ժամանակաշրջանի հետ։

Սովետական ժողովուրդը յոթ տարում արդյունաբերական արտադրանքն ավելացնելու է 80 տոկոսով, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 60 միլիոն կիլովատով, այսինքն՝ կառուցելու է հարյուր Դնեպրոգէս կամ հազար Վոլխովստրոյ։ Մենք արտադրելու ենք ավելի շատ պողպատ, քան այժմ արտադրում են Եվրոպայի բոլոր կապիտալիստական երկրները. յոթնամյակում ստեղծվելու են սև մետալուրգիայի այնպիսի օջախներ, որոնք հավասար կլինեն 20 Մագնիտագորսկի կոմբինատի։ Յոթնամյակի վերջում մենք մի օրում կարտադրենք այնքան մեքենաներ, որքան նախառևոլյուցիոն Ռուսաստանն արտադրել է մի ամբողջ տարում, կկառուցենք այնքան բնակելի տարածություն, որտեղ կարելի կլինի տեղավորել 80 միլիոն մարդ, կամ շարք կմտնեն Մոսկվայի նման բնակչություն ունեցող 15, Լայպցիգի նման՝ 75, Գորկու նման՝ 100 նոր քաղաքներ և այլն։

Յոթնամյակի կենսագործումով է՛լ ավելի գեղեցիկ կդառնա մեր մարդկանց կյանքը, ավելի լայնորեն կդրսևորվեն սովետական յուրաքանչյուր քաղաքացու հոգևոր զարգացման հնարավորությունները, ավելի ու ավելի լրիվ և բազմակողմանիորեն կբավարարվեն աշխատավորների պահանջմունքները։ Այստեղից միանգամայն պարզ է, որ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման և կապիտալիզմի հետ տնտեսական խաղաղ մրցության մեջ վերջնական հաղթանակի հասնելու, յոթնամյակում մեր ժողովրդի առջև կանգնած վիթխարի խնդիրները լուծելու գործում պարտիայի ղեկավար դերի ուժեղացումը կոմունիստական շինարարության պլանների հաջող կատարման կարևորագույն պայմանն է։

⁂

Կոմունիզմի կառուցման նոր ժամանակաշրջանում պարտիայի ղեկավար դերն աճում է նաև հասարակության բաղաքական կյանքում, աշխատավորների քաղաքական ու արտադրական ակտիվության, ստեղծագործական նախաձեռնության ու ինքնագործունեության ծավալման և հետագա զարգացման բնագավառում։ «Մեր բոլոր նվաճումներից ամենից գլխավորը,— ասաց Ն. Ս. Խրուշչովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի III սեսիայում,— ամենահրաշալին և ամենաբերկրալին սովետական ժողովրդի քաղաքական և աշխատանքային ակտիվության, նրա ստեղծագործական խանդավառության, կոմունիստական գիտակցականության չտեսնված աճն է, Կոմունիստական պարտիայի շուրջը նրա միաձույլ համախմբվածության աճը։ Դրանում մենք տեսնում ենք մեր բոլոր հաջողությունների աղբյուրը, կոմունիզմի լիակատար հաղթանակի երաշխիքը»։

Կոմունիզմի կառուցումը բազմամիլիոն մասսաների գիտակից ստեղծարար գործունեությունն է։ Կոմունիզմի կառուցումն անհնար է առանց միլիոնավոր աշխատավոր մասսաների ակտիվության, առանց լայն ժողովրդի ստեղծագործական ուժերի արթնացման և զարգացման, առանց սոցիալիստական հասարակության բոլոր անդամների բարձր գիտակցականության։ Միայն կոմունիստական պարտիան, որն անխզելիորեն կապված է ժողովրդի հետ ու նվաճել է նրա անսահման վստահությունը, կարող է լուծել այդ խնդիրը։ Այստեղից էլ միլիոնավոր մասսաների ստեղծագործական նախաձեռնության և ակտիվության աճի հետ միասին անխուսափելիորեն պետք է աճի նրանց կազմակերպչի՝ Կոմունիստական պարտիայի ղեկավար դերը։

Կոմունիստական պարտիան անշեղորեն զարգացնում է աշխատավորական լայն մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը, մասսաների առջև դնում է գիտականորեն հիմնավորված խնդիրներ, ցույց տալիս նրանց լուծման ուղիները։

Երկիրը հաջող կառավարելու համար բավական չէ քաղաքական ճիշտ գիծ ունենալ, անհրաժեշտ է, որ մասսաները սեփական փորձով համոզվեն պարտիայի գծի ճշտության մեջ և վճռականորեն պաշտպանեն այն, որ պարտիան ճիշտ արտահայտի այն, ինչ ժողովուրդն է մտածում ու գիտակցում, ինչով ժողովուրդն է ապրում, սովորի մասսաների փորձի վրա, ընկալի ժողովրդական իմաստնությունը։

Պարտիան ամենայն ուշադրությամբ ուսումնասիրում է կյանքը, ընդհանրացնում մասսաների փորձը, ժամանակին ընկալում հասարակության զարգացման հասունացած պահանջները և աշխատավորների ջանքերն ուղղում է դրանց իրագործմանը։ «Առաջավոր ջոկատը,—ասել է Լենինը,—այդ կերպ, և միայն այդ կերպ է դաստիարակում և լուսավորում մասսային, արտահայտելով նրա շահերը, սովորեցնելով նրա կազմակերպությունները, ուղղելով մասսայի ողջ գործունեությունը դասակարգային գիտակից քաղաքականության ճանապարհով» (Երկեր, հ. 19, էջ 506)։

Մեր երկրում լիակատար զարգացում է ապրում սոցիալիստական դեմոկրատիան, որն անսահման հնարավորություններ է ստեղծել տասնյակ միլիոնավոր հասարակ մարդկանց տաղանդների ու ընդունակությունների ծաղկման, տնտեսական և կուլտուրական շինարարության, պետության կառավարման մեջ նրանց ակտիվ մասնակցության համար։

Ամեն անգամ, երբ անհրաժեշտ է լինում լուծել մեր առաջընթացի այս կամ այն խնդիրը, պարտիան սուզվում է ժողովրդական ստեղծագործության անսպառ գանձարանը, դիմում ժողովրդին, ունկնդրում նրա ձայնին, լսում նրա խորհուրդները և ընդհանրացնում նրա կենսափորձը։ Համապետական կա-

բևոր միջոցառումների համաժողովրդական քննարկումները ՍՍՌՄ-ում սխտեմ են դարձել։ Արդյունաբերության կառավարման վերակառուցման հարցը մեր երկրում դրվեց համաժողովրդական քննարկման, որին մասնակցեց 40 միլիոն մարդ, ՄՏ կայանների վերակազմման հարցի քննարկմանը՝ մոտ 50 միլիոն մարդ։ Յոթնամյա պլանի ստեղծումը սկսվել է անմի-ջապես գործարաններում, ֆաբրիկաներում, հիմնարկներում։ Այդ գործին մասնակցել են հազարավոր գիտնականներ, արդյունաբերության և գյուղա-տնտեսության մասնագետներ, ամբողջ սովետական ժողովուրդը։ Յոթնամյա պլանի համաժողովրդական քննարկման կապակցությամբ ամբողջ երկրում տեղի ունեցավ ավելի քան 968 հազար ժողով, որին մասնակցեցին ավելի քան 70 միլիոն աշխատավորներ. դիտողություններով ու լրացումներով հանդես եկավ 4 միլիոն 672 հազար մարդ։ Պարտիական օրգանները, մամուլը և ռա-դիոն ստացան ավելի քան 650 հազար նամակ և թղթակցություն։ Այդպիսով մի անգամ ևս բացահայտվեց սովետական կարգի իսկական դեմոկրատական բնույթը, որն ապահովում է աշխատավորների անմիջական և ուղղակի մաս-նակցությունը երկրի կառավարմանը։ Աշխատավորական մասսաները որքան լայնորեն ընդգրկվեն երկրի կառավարման գործում, հասարակական կյան-քում, այնքան ավելի կբարձրանա նրանց ավանգարդի՝ պարտիայի դերը, որը կազմակերպում է մասսաներին առաջադրված խնդիրների կատարման համար։

Մեր պարտիայի ուժը ժողովրդի հետ նրա ունեցած սերտ կապի մեջ է, ժողովրդի ուժը՝ պարտիայի շուրջը համախմբված լինելու մեջ։ Պարտիան իր մեջ մարմնավորում է այն ամեն լավագույնը, հերոսականը, որ ունի բանվոր դասակարգը, ժողովուրդը։

«Ուղեղը դասակարգի,
Գործը դասակարգի,
Ուժը դասակարգի,
Փառքը դասակարգի,
— Ահա թե ինչ է Պարտիան»։

Այսպես է գրել Կոմունիստական պարտիայի մասին Վ. Մայակովսկին։

ՍՄԿՊ XXI համագումարը ցուցադրեց Սովետական Միության Կոմունիս-տական պարտիայի ղեկավարող և ուղղություն տվող մեծ դերը սովետական հասարակության զարգացման մեջ, նրա միասնությունը և համախմբվածու-թյունը լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը։ Պարտիայի և ժողովրդի միասնությունն ամուր և անսասան է, քան երբևէ. այդ միասնությունը սոցիա-լիստական հասարակության զարգացման, կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում մեր փայլուն հաղթանակների անսպառ աղբյուրն է։

***

Կոմունիստական պարտիայի ղեկավար դերի բարձրացումն իր արտա-հայտությունն է գտնում նրա կազմակերպական և գաղափարական-դաստիա-րակչական աշխատանքի ուժեղացման մեջ։ Պարտիան ոչ միայն վարում է քաղաքականությունը, այլև ամրապնդում այն կազմակերպական աշխատան-



քով, մասսաներին մոբիլիզացնում այդ քաղաքականության կենսագործման համար։

Այժմ ավելի կարևոր նշանակություն է ստանում կազմակերպական աշ-խատանքը։ Մենք ունենք փորձված, քաղաքականապես կոփված միլիոնավոր որակյալ կադրեր՝ պարտիական, պետական, տնտեսական, կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում։ Ներկա պայմաններում մեծ զար-գացում են ստանում աշխատանքի նոր մեթոդներն ու ձևերը։ Միլիոնավոր մարդիկ ակտիվ ստեղծագործական աշխատանքի են ներգրավվում, հաղոր-դակից են դառնում տնտեսական շինարարությանը։ Միանգամայն պարզ է, որ ինչքան լայն մասսաներ են մասնակցում համապետական խնդիրների լուծ-մանը, երկրի կառավարման գործին, այնքան բարձրանում է պարտիայի կազ-մակերպական աշխատանքի դերը ժողովրդական զանգվածների մեջ։

Յոթնամյակի վիթխարի խնդիրների կատարումը պահանջում է ակտի-վացնել բոլոր պարտիական կազմակերպությունների, յուրաքանչյուր կոմու-նիստի գործունեությունը, կատարելագործել պարտիական ղեկավարման մե-թոդներն ու ձևերը, բարելավել պարտիական ապարատի աշխատանքը։

Յոթնամյա պլանի կատարումը պահանջում է մեր կադրերին, բոլոր կո-մունիստներին դաստիարակել ժողովրդին, կոմունիզմի գործին հավատարմո-րեն ծառայելու ոգով, բարձրացնել նրանց տեսական մակարդակը, մարքս-լենինյան պատրաստականությունը։ Այդ խնդիրները կարելի է լուծել պար-տիայի ղեկավար դերի, մասսաների մեջ նրա կազմակերպական աշխատանքի ուժեղացման, աշխատավորների ամենալայն խավերի հետ պարտիայի կա-պերի հետագա ամրապնդման և մերձեցման շնորհիվ։

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշր-ջանում առանձնահատուկ նշանակություն են ստանում գաղափարական աշ-խատանքի մակարդակի բարձրացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերը։

Եվ դա միանգամայն հասկանալի է, քանի որ կոմունիստական շինարա-րության պլանների կենսագործման հաջողությունը, կոմունիզմի նյութա-տեխ-նիկական բազայի և նյութական բարիքների առատության ստեղծման խըն-դիրները ուղղակի կերպով կախված են աշխատավորների կոմունիստական բարձր գիտակցականությունից։ Պարտիայի գաղափարա-դաստիարակչական աշխատանքը կոչված է զարգացնելու սովետական մարդկանց նոր հատկու-թյունները, նրանց դաստիարակելու կոլեկտիվիզմի և աշխատասիրության, սո-ցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության, նոր հասարա-կարգի բարոյախոսության վեհ սկզբունքների, մարքսիզմ-լենինիզմի ոգով։

«Անհրաժեշտ է հասնել այն բանին,—ասված է «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» ՍՄԿՊ Կենտկոմի որոշման մեջ,—որպեսզի յուրաքանչյուր սովետական մարդ խորապես հասկանա իր ամենօրյա գործունեության հսկայական հասարակական-պատմական նշանա-կությունը, այն համարի Հայրենիքի հզորության ամրապնդման, նյութական և կուլտուրական բարիքների առատության ստեղծման, կոմունիզմի լիակա-տար հաղթանակի վճռական պայմանը»։

Կոմունիզմին անցնելու համար անհրաժեշտ է արդեն այժմվանից դաս-տիարակել ապագայի մարդուն, հասնել այն բանին, որ ժողովրդական լայն մասսաները տոգորված լինեն կոմունիզմի գործին անսահման նվիրվածու-

թյան, սովետական ջերմ հայրենասիրության ոգով, ակտիվորեն մասնակցեն կոմունիզմի կառուցմանը: Այստեղից էլ պարտիայի ղեկավար դերի ուժեղացումը գաղափարական-դաստիարակչական աշխատանքի բարելավման, աշխատավորների կոմունիստական գիտակցականության բարձրացման բնագավառում, բուրժուական գաղափարախոսության և կապիտալիզմի մնացուկների դեմ մղվող պայքարի ասպարեզում պարտիայի գլխավոր, պրակտիկ խնդիրներից մեկն է:

***

Կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում հետագա զարգացում են ապրում սովետական պետությունը, սոցիալիստական դեմոկրատիան, մասսաներն ավելի ու ավելի լայնորեն են ներգրավվում հասարակական գործերի կառավարման մեջ: Ընդլայնվում են միութենական ռեսպուբլիկաների և տեղական օրգանների իրավունքները տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում, բարձրանում է Սովետների, արհմիությունների, կոմերիտմիության դերը: Բազմաթիվ ֆունկցիաներ, որոնք իրագործվում էին պետական օրգանների կողմից, աստիճանաբար անցնում են հասարակական կազմակերպությունների տնօրինությանը:

Մեր բոլոր հասարակական կազմակերպությունները, չնայած նրանց ֆունկցիաների և խնդիրների առանձնահատկություններին, պայքարում են մի նպատակի համար. իրենց ամբողջ աշխատանքը ենթարկում են կոմունիզմի կառուցման խնդիրներին, մոբիլիզացնում են մասսաներին, զարգացնում աշխատավորների ստեղծագործությունն ու նախաձեռնությունը նոր կյանքի կառուցման գործում:

Մեր երկրում աստիճանաբար նեղանում է հարկադրանքի կիրառման, վարչական ներգործության ոլորտը, ուժեղանում է գաղափարական և բարոյական գործոնների դերը, աճում է կոմունիստական պարտիայի և նրա կողմից ղեկավարվող հասարակական կազմակերպությունների կազմակերպական և դաստիարակչական գործունեությունը: Կոմունիստական շինարարության նոր էտապը, սովետական ժողովրդի առջև դրված հոյակապ խնդիրների իրագործումը պահանջում են ուժեղացնել այդ կազմակերպությունների գործունեությունը, բարձրացնել նրանց դերն ու նշանակությունը:

Բոլոր հասարակական կազմակերպությունների դերի բարձրացմամբ անխուսափելիորեն աճում է նաև պարտիայի դերը՝ որպես հասարակական կազմակերպությունների բարձրագույն ձևի, որը համախմբում, կոորդինացնում, քաղաքական ճիշտ ուղղություն է տալիս բոլոր հասարակական կազմակերպությունների գործունեությանը:

Ժողովրդական մասսաների ղեկավարման ուղղությամբ Կոմունիստական պարտիայի հաջող գործունեության կարևորագույն պայմանը պարտիայի գաղափարական ու կազմակերպական միասնությունն է: Պարտիայի շարքերի լենինյան միասնությունը կոփված է տասնամյակների ընթացքում, տրոցկիստների, բուխարինականների և բուրժուական նացիոնալիստների դեմ մղված անհաշտ պայքարում:

Վերջին տարիներին պարտիական կյանքի լենինյան նորմերի և կոլեկտիվ ղեկավարման սկզբունքների վերականգնումը, անհատի պաշտամունքի



պսակազերծումը, ներպարտիական դեմոկրատիայի հետագա զարգացումը էլ ավելի ամրապնդեցին պարտիայի միասնությունը, նրա շարքերի մարտունակությունը, պարտիան ավելի մերձեցրին ժողովրդին:

Մեր պարտիան, ինչպես նաև մյուս եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաները, միահամուռ հակահարված տվեցին ռևիզիոնիստներին, որոնք փորձում էին զինաթափել բանվոր դասակարգին, հանդես էին գալիս սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում կոմունիստական պարտիայի ուղղություն տվող և ղեկավարող դերի դեմ, պնդում էին, որ պարտիայի ղեկավար դերը էկոնոմիկայի, կուլտուրայի, պետական հիմնարկների և հասարակական կազմակերպությունների նկատմամբ տանում է դեպի նրա բյուրոկրատացում, որ իբր պարտիան փոխարինում է այդ կազմակերպություններին, որ իբր ինչքան շատ զարգանա դեմոկրատիան, այնքան քիչ կզգացվի պարտիայի անհրաժեշտությունը և այլն:

Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիան ջախջախեցին և մեր առաջընթացի ճանապարհից դեն շպրտեցին Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի, Շեպիլովի հակապարտիական խումբը: Ավելի ամրապնդվեց մեր պարտիայի միասնությունը, մասսաներն էլ ավելի համախմբվեցին պարտիայի և նրա լենինյան Կենտկոմի շուրջը: Պարտիայի միասնությունը նրա ուժի և հզորության աղբյուրն է, լավագույն երաշխիքն այն բանի, որ բոլոր պայմաններում պարտիան կարող է հաջողությամբ կատարել ժողովրդական մասսաների ղեկավարի և կազմակերպչի դերը: Մեր երկրում կոմունիզմի կառուցման փորձը ցույց է տալիս, որ առանց միասնական ու միաձույլ, առանց մարքսիզմ-լենինիզմի մեծ սկզբունքներին հավատարիմ պարտիայի, բանվոր դասակարգը, աշխատավոր գյուղացիությունը չէին կարող նվաճել իշխանությունը, ջախջախել թշնամիներին, կառուցել կոմունիստական հասարակություն:

Կոմունիստական պարտիայի ղեկավար դերի ուժեղացումն իր վառ արտահայտությունն է գտնում նաև Սովետական Միության արտաքին քաղաքականության բնագավառում:

Մեր փառապանծ պարտիայի Կենտկոմը, Ն. Ս. Խրուշչովի գլխավորությամբ, ղեկավարվելով լենինյան խաղաղասիրական արտաքին քաղաքականության սկզբունքներով, հետևողականորեն և հաստատակամորեն վարում է միջազգային լարվածությունը թուլացնելու և «սառը պատերազմը» վերացնելու, խաղաղությունն ու ժողովուրդների անվտանգությունն ապահովելու քաղաքականություն:

Հենց միայն վերջին մեկ և կես տարում Սովետական Միությունն արել է այնպիսի կարևոր առաջարկություններ, ինչպիսիք են՝ դադարեցնել միջուկային զենքի փորձարկումները, ստեղծել ատոմազերծ գոտիներ, Գերմանիայի հետ կնքել հաշտության պայմանագիր, հրավիրել կառավարությունների ղեկավարների խորհրդակցություն, իրագործել ընդհանուր և լրիվ զինաթափում, մի շարք վճռական միջոցներ է ձեռնարկել ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի հետ հարաբերությունները բարելավելու համար և այլն:

Սովետական Միության և սոցիալիզմի լագերի երկրների խաղաղասիրական քաղաքականությունը բխում է սոցիալիզմի բնույթից. կոմունիզմի կառուցման համար անհրաժեշտ է խաղաղություն. խաղաղությունն ու սոցիալիզմը անբաժանելի են: Մենք կոմունիզմ ենք կառուցում սոցիալիստական

երկրների հետ սերտ համագործակցած, միասին առաջ ենք ընթանում ընդհանուր վերելքի ուղիով։ Սոցիալիզմի լագերի հաջողություններն ամրապնդում են խաղաղության ուժերն ամբողջ աշխարհում։

Այժմ միջազգային մթնոլորտում ավելի ու ավելի ուժեղ է փչում խաղաղության զով քամին, ցրելով «սառը պատերազմի» սև ամպերը։ Ամենուրեք, երկրագնդի բոլոր անկյուններում միլիոնավոր մարդիկ ջերմորեն հավանություն են տալիս և պաշտպանում Սովետական Միության արտաքին քաղաքականությունը։

Այդ պրոցեսն ամենայն ակնբախությամբ արտահայտվեց Ն. Ս. Խրուշչովի ԱՄՆ կատարած այցելության ժամանակ, երբ բոլոր բարի կամքի մարդիկ ողջունեցին երկու մեծ տերությունների փոխհարաբերությունների բարելավումը, դրանում տեսնելով համընդհանուր խաղաղության պահպանման կարևորագույն պայմանը։

***

Սովետական Միությունը գտնվում է իր ստեղծագործական ուժերի լիակատար ծաղկման շրջանում և հաջողությամբ առաջ է ընթանում նոր վերելքի ուղիով։ Նա ունի այն ամենը, ինչ անհրաժեշտ է լիակատար կոմունիստական հասարակություն կառուցելու համար։

Հեռու չէ այն ժամանակը, երբ Սովետական Միությունը կունենա աշխարհում ամենաբարձր կենսամակարդակ, ամենակարճ բանվորական օր և ամենակարճ բանվորական շաբաթ։ Ահա թե ինչու սովետական մարդիկ, յուրաքանչյուր ձեռնարկություն և հիմնարկ անձնուրաց կերպով աշխատում են այդ ուղղությամբ պարտիայի նշած միջոցառումների անշեղ կենսագործման համար։

Եթե 110 տարի առաջ Մարքսը և Էնգելսը խոսելով կոմունիզմի մասին ասել են՝ «Մի ուրվական է շրջում Եվրոպայում, Կոմունիզմի ուրվականը», ապա այժմ կոմունիզմը, մարդկության լուսավոր և թանկագին երազը, մտել է մեր ամենօրյա գործերի մեջ. կոմունիզմի շենքը բարձրանում է սովետական մարդու ձեռքերով, նրա խելքով, ստեղծագործությամբ։ Սովետական յուրաքանչյուր մարդ, ինչ բնագավառում էլ աշխատելիս լինի, ամեն օր, ամեն ժամ մոտեցնում է կոմունիզմի հաղթանակը։

Մարքսիզմ-լենինիզմի անհաղթ դրոշով, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական մարդիկ հաստատ քայլերով առաջ են ընթանում դեպի մեծ նպատակը, գրավում նորանոր սահմանագծեր կոմունիզմի կառուցման ճանապարհին։

---

# ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՀԱՐՑԸ

## Զ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Խաղաղությո՛ւն։ Կորչի՛ պատերազմը։ Ընդհանուր և լրիվ զինաթափո՛ւմ։ Տարբեր սոցիալական սիստեմների խաղաղ գոյակցությո՛ւն։ Ահա մեր դարաշրջանի հրամայական պահանջը, ահա մեր սերնդի և գալիք սերունդների ապահովության միակ անհրաժեշտ պայմանը։ Ահա թե ինչի է ձգտում մեր սոցիալիստական հզոր Հայրենիքը, հայտարարելով. «Կայուն խաղաղություն ու ժողովուրդների բարեկամություն ապահովելու և մարդկությանը արյունահեղ պատերազմների աղետներից ընդմիշտ փրկելու առավել հուսալի և ճիշտ միջոցը ընդհանուր ու լրիվ զինաթափումն է»։ Ժողովուրդներին պատերազմական արհավիրքներից ազատելու հումանիստական վեհ ձգտումն է ՍՍՌՄ Գերագույն Սովետի IV սեսիայում ընդունված «ՍՍՌՄ Զինված Ուժերի նոր զգալի կրճատման մասին» օրենքի ոգին։ Սովետական կառավարության այդ գործնական նախաձեռնությամբ մի նոր էջ է բացվում խաղաղության համար, զենքից ու պատերազմներից զերծ լավագույն կյանքի համար մարդկության մղած պայքարի դարավոր պատմության մեջ։

Դարեր շարունակ աշխատանքի մարդը երազել է ապրել հաշտ ու խաղաղ, առանց պատերազմի ու ավերածությունների։ Բայց միայն երազել է, ի վիճակի չլինելով ուտոպիան վերածել ռեալության, վերջ դնել արյունահեղություններին և փոխել պատմության ընթացքը։ Հնարավոր չէ թվարկել այն բոլոր մեծ ու փոքր պատերազմները, որոնց ականատես է եղել մեր մոլորակը։ Շվեյցարական գիտնական Ժան-Ժակ Բաբելը «էլեկտրոնային ուղեղի» օգնությամբ վերջերս հաշվել է, որ միայն վերջին 5559 տարվա ընթացքում մարդիկ տեսել են 14513 մեծ ու փոքր պատերազմներ, որոնց զոհ են գնացել 3640 միլիոն մարդ, այսինքն՝ շատ ավելի, քան այժմ մեր երկրագնդի բնակչությունն է։ Այդ պատերազմների հետևանքով մարդկությունն անվերադարձ կորցրել է հսկայական նյութական և կուլտուրական արժեքներ, որոնք նույն գիտնականի հաշվումներով կազմում են մի ահռելի գումար՝ 500 կվինտիլիոն (այսինքն միլիարդ անգամ միլիարդ) շվեյցարական ֆրանկ։ Որպեսզի ավելի պարզ լինի այդ աստղաբաշխական թվի մեծությունը, պետք է պատկերացնել ութ մետր հաստությամբ և տասը մետր լայնությամբ ոսկյա մի գոտի՝ տարածված երկրագնդի հասարակածի շուրջը։

Որքան առաջ է ընթացել մարդկային հասարակությունը, այնքան անվերջ են թվացել պատերազմները։ Կապիտալիզմն ավելի ավերիչ պատերազմներ բերեց մարդկությանը, իր վերջին ստադիայում արդեն երկու անգամ համաշխարհային պատերազմ սանձազերծելով։ XX դարի առաջին տասնամյակի ամբողջ ժամանակաշրջանի կեսից ավելին լի է արյունահեղություններով։ Կապիտալիզմի պատմության մեջ շատ են մռայլ և արյունոտ էջերը։

Բայց երրորդ համաշխարհային պատերազմի նախապատրաստումը, որի կան-նիբալական պլաններն են այսօր փայփայում իմպերիալիստները, մարդկու-թյան դեմ այնպիսի հանցագործության նախապատրաստում է, որը գերա-զանցում և մթագնում է այն ամենը, ինչ որ երբևիցե իմացել է պատմությու-նը։ Ժամանակակից զենքն անսահմանափակ է իր ավերիչ ուժով։ Միայն մեկ ջրածնային ռումբի պայթյունը կարող է երկրի երեսից ջնջել համաշխարհա-յին քաղաքակրթության խոշորագույն կենտրոններ։ Գերագույն Սովետի սե-սիայում ունեցած իր ելույթում Սովետական Միության Պաշտպանության մինիստր մարշալ Մալինովսկին հիշեցրեց, որ երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ անգլո-ամերիկյան ավիացիայի կողմից Գերմանիայի և նրա օկուպացրած երկրների օբյեկտների վրա գցած բոլոր ռումբերը իրենց պայթյունի ուժով ընդամենը հավասար են միջուկային լիցքով մեկ հրթիռի։ Պատերազմ վարելու ժամանակակից միջոցների կործանարար հզորությունն այնպիսին է, որ բավական է համաշխարհային պատերազմի հրդեհի մի քա-նի ժամ, որպեսզի երկրագնդի լայնածավալ շրջաններ վերածվեն մի հսկա-յական Հիրոսիմայի։ Մեկ ջրածնային ռումբը քարտեզից կջնջի Լոնդոնի մե-ծությանը հավասար քաղաք։ Ութ այդպիսի ռումբ կարող են ոչնչացնել Արև-մտյան Գերմանիայի մեծության երկիր… Ներկա պայմաններում պատերազ-մը կլինի բնաջնջման և կործանման պարզ պրոցես։

Սակայն պատերազմ վարելու զենքերը մարդկության ստեղծագործա-կան ուժերը վատնում են նաև խաղաղ կյանքի պայմաններում, երբ այդ զեն-քերը չեն օգտագործվում։ Չէ որ ամեն մի տանկ կամ հրանոթ նշանա-կում է մի չստեղծված տրակտոր, զենքի տակ դրված յուրաքանչյուր մարդ՝ խաղաղ ստեղծագործ աշխատանքից զրկված բանվորական ձեռք։ Ամեն տա-րի մարդկությունը ռազմական կարիքների վրա ծախսում է ավելի քան հար-յուր միլիարդ դոլար, մի գումար, որը բավական է, որպեսզի երկրագնդի վրա ամբողջ մեկ տարի բոլոր մարդիկ հաց ունենան։ Այդ գումարով կարելի է 9—10 միլիոն ընտանիք ապահովել նոր բնակարաններով, կամ երեխաներին՝ 50 հազար նոր դպրոցներով։ Այդ գումարով կարելի է կառուցել հազարավոր արդյունաբերական ձեռնարկություններ, որտեղ աշխատանք կգտնեին միլիո-նավոր մարդիկ։ Բավական է միայն Ատլանտյան պակտի մասնակից երկրը-ների ռազմական ծախսերի մեկ տասներորդը (այդ ծախսերի գումարը 1958 թվականին հասել էր 60 միլիարդ դոլարի), որպեսզի շարք մտնեն տասնյա-կից ավելի այնպիսի մետալուրգիական գործարաններ, ինչպիսիք կառուցվում են այժմ Հնդկաստանում։ Սպառազինությունների շարունակվող մրցավազքի հետևանքով մարդկանց հոծ զանգվածներ կտրված են խաղաղ աշխատանքից, զենք են կրում կամ զբաղված են ոչնչացման միջոցներ պատրաստելով։ Մարդկային հասարակության ծաղիկը հանդիսացող միլիոնավոր բանվորներ ու տեխնիկներ, տաղանդավոր գիտնականներ ու ինժեներներ, որոնց գործու-նեությունը կարող էր անասելի շատ բան տալ ժողովուրդների բարօրությանը, այժմ իրենց ուժերը վատնում են ավելի ու ավելի սոսկալի մահվան միջոցներ ստեղծելու վրա։

Հասել է ժամանակը մեկընդմիշտ վերջ դնելու սպառազինությունների մրցավազքին, արմատախիլ անելու պատերազմը, ոչնչացնելու մասսայական ոչնչացման միջոցները։ Իր հիմնադրման առաջին իսկ օրերից Սովետական պետությունն անխոնջ կերպով պայքարում է խաղաղության և ժողովուրդնե-



րի բարեկամության համար։ Մեր երկիրը միշտ կանգնած է եղել միլիտարիզ-մի դեմ, զինաթափման համար մղվող պայքարի առաջին դիրքերում։ Վ. Ի. Լենինը 1917 թվականի հոկտեմբերի 26-ին (նոյեմբերի 8-ին), Մեծ ռևոլյու-ցիայի հենց հաջորդ օրը հռչակեց Խաղաղության դեկրետը, կոչ արեց վերջ դնել պատերազմին, ամբողջ մարդկությանը ցույց տալով ելքը իմպերիալիս-տական սպանդանոցից։ Մեր երկիրը ցրեց բանակը, որը նորից վերականգնը-վեց միայն սոցիալիզմի գործը օտարերկրյա ինտերվենտներից պաշտպանե-լու համար։ Նա պատռեց գաղտնի դիվանագիտության ոստայնը և բարեկա-մության ու հավասարության կոչ արեց բոլոր ժողովուրդների միջև։ Իր գոյու-թյան ամբողջ ընթացքում այդ վսեմ գաղափարների ջահակիրը՝ սոցիալիզմի առաջին երկիրը, հետևողականորեն պայքարել է պատերազմի ու սպառազի-նման դեմ, հանուն խաղաղության և ժողովուրդների բարեկամության։ 1922 թվականին, Ջենովայի կոնֆերանսում՝ առաջին միջազգային կոնֆերանսում, որին մասնակցեց Սովետական երկիրը, մեր պետությունը իսկույն ևեթ առաջարկություն մտցրեց զինաթափման վերաբերյալ։ Ավելի ուշ, Ազգերի լիգայում, Ժնևում 1927 և 1932 թթ. Սովետական Միությունը համառորեն պաշտպանել է համընդհանուր և լրիվ զինաթափման գաղափարը։ Զինաթափ-ման հարցում սովետական երկրի նախաձեռնությունն արտահայտում է սոցիա-լիստական հասարակարգի էությունը, որն իր բնությամբ խորապես թշնամի է պատերազմներին։ Սոցիալիստական կարգերի և ամբողջ կոմունիստական շարժման հիմնական սկզբունքը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը աշ-խատավորներին սովորեցնում է իմպերիալիստների հրահրած պատերազմնե-րը գիտել որպես հրեշավոր եղբայրասպանություն։ Կոմունիստները պատե-րազմները դատապարտում են որպես «բարբարոսական և գազանային բան» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 378)։ Այսօր սոցիալիստական ամենահզոր երկիրը նորից գործով ցույց է տալիս զինաթափման այն ռեալ ուղին, որի համար դարերի ընթացքում պայքարել են լավագույն մտածողները, բայց որի լուծումը հնարավոր է դարձել այժմ, XX դարի վաթսունական թվականներին, երբ օր օրի հզորանում է սոցիալիստական համաշխարհային սիստեմը, ա-ճում և ամրապնդվում են սոցիալիզմի ուժերը ամբողջ աշխարհում։

Զինաթափումը մեր ժամանակի ամենաայրող հարցն է։ 1959 թվականի սեպտեմբերի 18-ը պատմության մեջ կմտնի որպես նշանավոր տարեթիվ։ Այդ օրը Սովետական պետության ղեկավար Ն. Ս. Խրուշչովը ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեային ներկայացրեց Սովետական կառավարության Դեկլարացիան ընդհանուր և լրիվ զինաթափման մասին։ Մեր երկիրն առաջարկում է ամենա-սեղմ ժամկետներում իրականացնել բոլոր պետությունների լիակատար զի-նաթափում, պետությունների տրամադրության տակ թողնելով միայն միլի-ցիայի կամ պոլիցիայի մինիմալ կոնտինգենտ ներքին կարգը պահպանելու համար։ Ընդհանուր և լրիվ զինաթափման սովետական ծրագիրը ներծծված է խոր հումանիզմով, խաղաղության և ժողովուրդների բարօրության նկատ-մամբ անկեղծ հոգատարությամբ։ Այն՝ սոցիալիզմի հումանիստական բնույ-թի իսկական արտահայտությունն է։

Ընդհանուր զինաթափման հարցում մեր պետության խաղաղասիրական նախաձեռնությունը հիմք դրեց զինաթափման պրոբլեմի նոր էտապի։ Սովե-տական առաջարկությունների նշանակությունը բնորոշվում է նրանով, որ դրանք կոչված են շրջադարձային կետ դառնալու միջազգային հարաբերու-

թյունների պատմության մեջ, դառնալու մարդկությանը պատերազմներից ու սպառազինությունների բեռից ազատագրելու սկիզբ։

Սովետական Միությունն առաջարկել է առանց հետագա ձգձգումների չորս տարվա ընթացքում երեք էտապներով իրականացնել բոլոր պետությունների լրիվ զինաթափում։ Խոսքը բանակները ցրելու, բոլոր տեսակի սպառազինությունները ոչնչացնելու, ռազմական արտադրությանը վերջ դնելու մասին է։ Վերջնականապես պետք է արգելվի միջուկային, քիմիական, բակտերիոլոգիական և հրթիռային զենքը։ Սովետական առաջարկությունների ընդունման դեպքում սպառազինությունների այդ տեսակների պաշարները պետք է վերացվեն, իսկ նրանց արտադրությունը դադարեցվի։ Պետք է լիկվիդացվեն օտար տերիտորիաներում գտնվող բոլոր ռազմական բազաները, ինչպես նաև ռազմական մինիստրությունները, գլխավոր շտաբները և ռազմական դպրոցները։

Սովետական առաջարկությունները հուսալի միջոց են հանդիսանում պատերազմից խուսափելու համար։ Նույնիսկ ավելորդ է ապացուցել, որ սպառազինությունների մրցավազքի և ռազմական պսիխոզի պայմաններում խաղաղությունը չի կարող կայուն լինել։ «Սառը պատերազմը» իրենից ներկայացնում է միջանկյալ, անկայուն վիճակ խաղաղության և պատերազմի միջև, քաղաքական թշնամության մթնոլորտ, որից մինչև զինված կոնֆլիկտը մի քայլ է միայն։ Երբ դեմ դիմաց կանգնած են բազմամիլիոն բանակներ, երկնքում սավառնում են մահաբեր ռումբերով բեռնավորված ռմբակոծիչներ, բավական է մի փոքր կայծ, մի փոքր տաքարյունություն կամ անզգուշություն, որպեսզի բռնկվի պատերազմի բոցը։ Պատերազմի վտանգը անխուսափելիորեն կախված կմնա ժողովուրդների գլխին այնքան ժամանակ, քանի դեռ գեներալները ռազմական օպերացիաների պլաններ են մշակում, իսկ միլիոնավոր երիտասարդներ սովորում են զենք գործածել։

Այժմ գլխավոր հարցն այն է, թե ինչպե՞ս վերջ դնել այդ ամենին։ Սովետական կառավարությունը գտնում է, որ պետք է վերացնել պատերազմի հնարավորությունը, պոտենցիալը, ագրեսորներին զրկել պատերազմ վարելու նյութական միջոցներից։ Միջազգային կյանքի անխախտ օրենքը պետք է դառնա բոլոր վեճերի ու հարցերի կարգավորումը ոչ թե զենքի ուժով, այլ բանակցությունների միջոցով, խաղաղ ճանապարհով։

Իր զինված ուժերը 1200 հազարով կրճատելու ՍՍՌՄ-ի նոր նախաձեռնությունը տրամաբանորեն բխում է սոցիալիստական հզոր տերության հետևողական խաղաղասիրական արտաքին քաղաքականությունից։ Դա համոզիչ ապացույցն է այն բանի, որ մեր երկիրն անկեղծորեն ձգտում է իր փոխհարաբերությունները կապիտալիստական երկրների հետ կառուցել խաղաղ գոյակցության հիմքի վրա։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հունվարյան սեսիան պատմական կարևորագույն էտապ նշանավորեց պատերազմի դեմ խաղաղասեր ուժերի պայքարում։ Սեսիայում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ ամենայն խորությամբ ցույց են տրված զինաթափման անհրաժեշտությունը, դրան հասնելու Սովետական պետության անսասան վճռականությունը։ Զինաթափումը ձեռնտու է ոչ թե մի ինչ-որ պետության կամ պետությունների մի խմբի համար. այն կայուն խաղաղության, տնտեսության զարգացման և ժողովուրդների բարօրության ուղի է ցույց տալիս աշխարհի բոլոր երկրների համար։



Մեր կառավարությունն իր պրակտիկ նախաձեռնությամբ Արևմուտքի երկրներին կոչ է անում համաձայնության գալ զինաթափման շուրջը, ամեն ինչ անել պատերազմ թույլ չտալու համար, մրցել ոչ թե զինված ուժերն ու սպառազինությունները մեծացնելու ասպարեզում, այլ դրանք կրճատելու և պատերազմ մղելու միջոցները վերացնելու ասպարեզում։ «Մենք դիմում ենք մեր զինված ուժերի կրճատման, որովհետև չենք ուզում պատերազմ,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— որովհետև մտադիր չենք հարձակվել որևէ մեկի վրա, չենք կամենում ոչ ոքի սպառնալ և չունենք ոչ մի զավթողական նպատակ»։ Սովետական Միությունը սիստեմատիկաբար կրճատում է ռազմական կարիքների համար ՍՍՌՄ պետական բյուջեի հատկացումները։ 1960 թվականին այդ հատկացումների տեսակարար կշիռը կազմում է մեր պետական բյուջեի բոլոր ծախսերի միայն 12,9 տոկոսը, 1955 թվականի 19,9 տոկոսի փոխարեն։ ԱՄՆ-ի ընդհանուր բյուջեում ռազմական ծախսերը կազմում են 59 տոկոս, Անգլիայինը՝ 25, Ֆրանսիայինը՝ 42 տոկոս։

Մեր կառավարությունը կոչ է անում ռազմական տեխնիկայի, զենքի ու սպառազինության վրա ծախսվող ամբողջ մեռյալ մետաղը օգտագործել խաղաղ շինարարության նպատակներով, ոչնչացնել բոլոր ատոմային և ջրածնային ռումբերը և նրանց պարունակած էներգիան օգտագործել ոչ թե մարդկանց ոչնչացնելու, այլ էլեկտրակայանների գեներատորները պտտեցնելու, ժողովրդի կենսամակարդակը բարձրացնելու համար։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի ամբիոնից պատկերավոր հնչեցին ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ Նեսմեյանովի խոսքերը զինաթափման նշանակության մասին՝ գիտության հետագա զարգացման համար։ Նա նշեց, որ զինաթափումը թույլ կտա լայնորեն կոոպերացնել գիտական հետազոտություններն ամբողջ աշխարհում, քանի որ անհրաժեշտություն չի լինի դրանք գաղտնի պահել։ Սովետական Միությունում, ԱՄՆ-ում և Անգլիայում աշխատանքներ են կատարվում ջերմամիջուկային կառավարվող սինթեզին տիրապետելու ուղղությամբ։ Պետք են համատեղ աշխատանքներ այդ դարակազմիկ պրոբլեմի վրա։

Միայն խաղաղությունը կարող է ապահովել բարձր կենսամակարդակ, առատություն և համակողմանի առաջընթաց զարգացում։ Եկեք համաձայնության գանք զինաթափման հարցում, ամեն ինչ անենք, որպեսզի պատերազմ չլինի, եկեք մրցենք ոչ թե զինված ուժերի ընդլայնման, այլ տնտեսական առաջադիմության ասպարեզում,— կոչ է անում Սովետական Միությունը։ Մեր երկիրը կրճատում է իր Զինված Ուժերը, որովհետև ուզում է հաշտ ու խաղաղ ապրել բոլոր պետությունների հետ։ Այդ կրճատումը ոչ թե նրա թուլության, այլ ուժի վկայությունն է։ Կրճատումը բոլորովին չի թուլացնի մեր երկրի պաշտպանունակությունը, նրա ռազմական հզորությունը։ Մենք ունենք այնպիսի մարտական միջոցներ, այնպիսի հուժկու կրակային հզորություն, որն ի վիճակի է զորավիգ կանգնելու մեր սոցիալիստական Հայրենիքին, սանձահարելու ագրեսորին իր իսկ հողում։ Հեռահար հրթիռների վերջին փորձարկումները շատ լավ վկայում են մեր կարողությունների մասին։

Սովետական ժողովուրդը միահամուռ հավանություն է տալիս համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող այդ խաղաղասիրական ակտին։ Սովետական մարդկանց գրավոր ու բանավոր ելույթներում վառ կերպով դրսևորվում է խաղաղության և ժողովուրդների անվտանգության նրանց

ձգտումը։ Մեր Գերագույն Սովետի սեսիայի որոշումները խոր արձագանք
են գտել սոցիալիստական լագերի բոլոր երկրներում։ Եվ դա օրինաչափ է։
Սոցիալիզմի երկրներում չկան սպառազինությունների մրցավազքով, ագրե-
սիվ պատերազմներով շահագրգռված ուժեր։ Ի պաշտպանություն ՍՍՌՄ
Գերագույն Սովետի Դիմումի, ժողովրդական ներկայացուցիչների համաչի-
նական ժողովի Մշտական կոմիտեն միահամուռ ընդունած իր բանաձևում
նշեց. «Չին ժողովուրդը Սովետական Միության և բոլոր խաղաղասեր պետու-
թյունների ու ժողովուրդների հետ միասին համառ և անդուլ պայքար կմղի
ընդհանուր և լրիվ զինաթափման համար, կայուն խաղաղության համար»։

Զինաթափման մասին սովետական առաջարկները լայն արձագանք են
գտնում աշխարհի բոլոր անկյուններում՝ Չինաստանից մինչև Աֆրիկա, Ամե-
րիկայից մինչև Ավստրալիա, դառնում խաղաղության ծարավի միլիոնավոր
մարդկանց պայքարի դրոշը։ Աշխատավոր մարդիկ ողջունում են մեր կառա-
վարության հումանիստական առաջարկությունը։ Թե՛ Արգենտինայի անաս-
նապահներն ու Ճապոնիայի տեքստիլագործները, թե՛ Ֆրանսիայի գոկերներն
ու Աֆրիկայի նեգրերը հավանություն են տալիս զինաթափման գաղափարին։

Զինաթափման պլանն իրականացնելու Սովետական Միության պրակ-
տիկ քայլը բարի կամքի մարդիկ գնահատում են որպես «Ժողովուրդների խա-
ղաղության ազնիվ գործին ծառայող օրինակելի ակցիա», «Սովետական նոր,
մեծ նախաձեռնություն հանուն խաղաղության», «Զինաթափման ասպարե-
զում ամբողջ աշխարհին հուզած սովետական նախաձեռնություն» և այլն։ «Իր
դարակազմիկ որոշումով,—գրել է ճապոնական «Ակախատա» թերթը,— Սո-
վետական կառավարությունն առաջինը սկիզբ դրեց սպառազինությունների
իրական կրճատմանը և ցույց տվեց, որ իր առաջարկած զինաթափման ծրա-
գիրը հանդիսանում է Սովետական Միության խաղաղասեր քաղաքականու-
թյան անխախտ հիմքը և տրամաբանական շարունակությունը»։

Անգլիական «Իվնինգ ստանդարդ» թերթը գրել է, որ զինաթափման
մասին Սովետական կառավարության որոշումը «միլիոնավոր մարդկանց,
առանձնապես Արևելքում», ցույց կտա «...խաղաղության հարցերում Սովե-
տական Միության և Միացյալ Նահանգների քաղաքականության բացահայտ
կոնտրաստը»։ «Կոնֆլիկտը Արևելքի և Արևմուտքի միջև,— շարունակում է
թերթը,— պետք է այժմ լուծել առևտրի և տնտեսության ասպարեզում...
Ամերիկացիները պետք է դադարեն անհանգստանալ Ռուսաստանի կողմից
ռազմական վտանգից և ուշադրությունը կենտրոնացնեն խաղաղության հա-
մար ճակատամարտում հաղթանակի հասնելու վրա, քանի որ հենց այդ ճա-
կատամարտն է հրապուրում բոլոր մարդկանց սրտերն ու մտքերը»։

Աշխարհի բոլոր երկրների աչքի ընկնող քաղաքական ու հասարակական
շատ գործիչներ, պառլամենտների դեպուտատներ, ականավոր գիտնականներ
ու գրողներ, կուլտուրայի հայտնի գործիչներ, հասարակության ամենատար-
բեր ներկայացուցիչներ ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշումը ընկալեցին որ-
պես ոգեշնչող օրինակ։ Այն հատկապես մեծ արձագանք գտավ Արևելքի եր-
կրներում, որոնց ժողովուրդները ցանկանում են, որպեսզի սպառազինու-
թյունների մրցավազքից ազատված հսկայական միջոցները տրամադրվեն
տնտեսական զարգացման նպատակին, հատկապես թույլ զարգացած երկր-
ների բնակչության կենսամակարդակի բարձրացմանը։ Անդրադառնալով զի-
նաթափման Սովետական ծրագրին Հնդկաստանի պրեմիեր մինիստր Ջ. Նե-



րուն նշեց, որ դա «խիզախ և համարձակ առաջարկություն է», «բանական
առաջարկություն, որի կարիքն ունի այժմ աշխարհը, աշխարհի հասարակ
մարդիկ»։

Երկրագնդի բոլոր ծայրերից ստացվող լուրերը վկայում են, որ պայքարը
հանուն խաղաղության ու զինաթափման ընդունում է ավելի ու ավելի լայն
բնույթ։ Կապիտալիստական աշխարհի ժողովուրդներն իրենց կառավարու-
թյուններից պահանջում են. «Հետևեցեք Սովետական Միության օրինակին»։
Սպառազինությունների նոր մրցավազքի ջատագով ամերիկյան սենատոր
Թոմաս Դոդը ստիպված դառնորեն խոստովանել է, որ «Արևմտյան լիդերներն
ավելի մեծ ճնշման են ենթարկվում ինչպես իրենց երկրների ներսում, այն-
պես էլ արտասահմանում՝ լուրջ բանակցությունների մեջ մտնելու սովետա-
կան պլանով»։ Պատերազմի կողմնակիցները տխրում են, իսկ ժողովուրդնե-
րը ուրախանում։

Թեև այժմ Արևմուտքում ավելի ու ավելի լայնորեն է տարածվում այն
գիտակցությունը, որ միջազգային իրադրությունը փոխվել է, որ արմատա-
կան տեղաշարժ է առաջացել սոցիալիստական ու կապիտալիստական ուժերի
հարաբերակցության մեջ, բեկում է տեղի ունենում քարացած պատկերացում-
ների մեջ, այնուամենայնիվ, մի շարք երկրներում դեռևս հնչում են վաղուց
սնանկացած «ուժի դիրքի» քաղաքականություն վարելու բացահայտ կոչեր։
Դրանք պատերազմական պրոպագանդայի խրոնիկ ախտով վարակված հի-
վանդների ձայներն են, որոնք սարսափում են խաղաղության ամրապնդու-
մից, միջազգային իրադրության բարելավումից։ Նրանք անհանգստացել ու
տխրել են Սովետական Միության պրակտիկ գործողություններից։ Այդ նրանց՝
թշնամություն և անվստահություն տարածողների խռպոտ ու լալկան ձայներն
են լսվում ընդհանուր լավատեսության մթնոլորտում, փորձելով կասկածանք
ու անվստահություն սերմանել, վիճարկել մեր առաջարկների անկեղծու-
թյունը։

Սակայն որքան էլ խորամանկեն, որքան էլ կաշվից դուրս գան «սառը
պատերազմի» ամենաջերմեռանդ պաշտպանները, չեն կարող ապացուցել, որ
զինաթափման ուղղությամբ սովետական պրակտիկ քայլերն արվում են պա-
տերազմ նախապատրաստելու նպատակով։

ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը թեև փորձեց ստվեր գցել ՍՍՌՄ-ի
խաղաղասիրական նոր քայլի վրա, բայց ստիպված էր հույս հայտնել, որ
այն «կկարողանա մեղմացնել» միջազգային լարվածությունը։ Իսկ պարոն
Նիքսոնը շտապեց հայտարարել, որ «Միացյալ Նահանգներն ու նրանց դաշ-
նակիցները ոչ մի պայմանով չպետք է կրճատեն իրենց ուժը»։ Սա հին տե-
սակետների հնացած կրկնություն է։ Բոլորովին էլ պատահական չէ, որ
ռևանշիզմի տենդով բռնված ԳՖՌ-ի թերթերը նույնիսկ չհրապարակեցին
ՍՍՌՄ Գերագույն Սովետի Դիմումը աշխարհի բոլոր պետությունների պառ-
լամենտներին ու կառավարություններին։ Իսկ Ադենաուերի վերջին ելույթնե-
րից երևում է, որ նա առաջվա պես չի ուզում նկատել միջազգային լարվա-
ծության թուլացումը, չի հրաժարվում իր ավանտյուրիստական պլաններից և
«ուժի դիրքի» քաղաքականությունից։ Կիսիի ճապոնական կառավարությունն
էլ անտեսելով ժամանակի ոգին, հաշվի չառնելով ճապոնական ժողովրդի
և Հեռավոր Արևելքի անվտանգության շահերը, ռազմական նոր պայ-
մանագիր կնքեց ԱՄՆ-ի հետ այն պահին, երբ ամբողջ աշխարհը խոսում է

զինաթափման մասին։ Սակայն Ադենաուերի, Կիսիի ու նմանների վտանգավոր գործունեությունը, ռազմամոլ գեներալների պատերազմական կոչերը, նորահայտ ֆաշիստների ճիչերը՝ «մենք կվերադառնանք», չեն կարող այսօր բախտորոշ լինել, շարունակել «սառը պատերազմը»։ Սոցիալիստական հզոր երկրի՝ «Սրերից խոփեր ձուլենք»՝ միակ բանական կուրսը հաղթանակ է տանում։ Արևմուտքը պետք է հետևի Սովետական Միության բարեգործ օրինակին։

Զինված Ուժերի կրճատումից հետո էլ մեր երկիրը չի դադարեցնի իր ջանքերը Արևմուտքի հետ համաձայնության գալու համընդհանուր և լրիվ զինաթափման հարցում։ Եթե Արևմուտքն էլ համանման քայլեր կատարի, ապա վերջին շրջանում նկատվող միջազգային լարվածության մեղմացումը է՛լ ավելի զգալի կդառնա։ Սովետական Միությունը մեծ տերությունների ղեկավարների այս տարվա մայիսին տեղի ունենալիք հանդիպմանն է գնում խաղաղասիրական գործնական քայլերով, դրական օրինակ ծառայելով մյուս տերություններին և վստահ լինելով, որ կհաղթի բանականությունը և ոչ թե պատերազմը։ «Մեր խնդիրն է,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— «սառը պատերազմի» կողմնակիցներին անդադրում հասցնել մեկը մյուսից ուժեղ հարվածներ՝ նրանց մեկուսացնելու, համաշխարհային հասարակայնության առջև նրանց անարգանքի սյունին գամելու համար։ Այդ վսեմ գործում մեր ամենագործուն զենքը Սովետական կառավարության խաղաղասեր քաղաքականությունն է և «սառը պատերազմի» վերջնական վերացման նպատակին ծառայող անդուլ ջանքերը»։

ՍՍՌՄ Գերագույն Սովետը աշխարհի բոլոր պետությունների պառլամենտներին և կառավարություններին կոչ է անում արձագանքել Սովետական Միության նոր խաղաղ նախաձեռնությունը, իրենց կողմից կատարել գործնական քայլեր՝ գոյություն ունեցող զինված ուժերը կրճատելու, իրենց երկրների ժողովուրդներին սպառազինությունների բեռից ազատելու, մարդկությանը պատերազմի սպառնալիքից փրկելու և ամբողջ աշխարհի խաղաղությունն ապահովելու նպատակով։

---

# ԿՅԱՆՔԸ ԵՎ ԴԱՍԱԽՈՍԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՆ

## Խ. ԴԱՆԻԵԼՅԱՆ

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ աննախընթաց թափով ծավալում է կոմունիզմի շինարարությունը։ Հաջողությամբ կատարվում են յոթնամյա պլանի առաջադրանքները։ Վերելքի ուղիով է ընթանում գյուղատնտեսությունը։ Այժմ մեր խնդիրներից ամենագլխավորը՝ յոթնամյա պլանի հաջող կենսագործումն է։ Դրա համար անհրաժեշտ է օգտագործել բոլոր ռեզերվները, մոբիլիզացնել բոլոր ուժերը՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա ստեղծելու համար։ Այդ առաջնակարգ խնդրի լուծման համար չափազանց կարևոր նշանակություն ունի իդեոլոգիական աշխատանքը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմն իր «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» 1960 թվականի հունվարի 9-ի որոշմամբ պահանջում է իդեոլոգիական աշխատանքը բարձրացնել նոր, ավելի բարձր աստիճանի։ Այդ աշխատանքը և՛ իր ծավալով, և՛, մանավանդ, իր բովանդակությամբ կոչված է բավարարելու ժողովրդի աճող պահանջները։ Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը հրատապ է դարձնում նոր մարդու ձևավորումը, որը զերծ լինի կապիտալիզմի մնացուկներից, ընդունակ՝ իր անհատական շահերը ենթարկելու ընդհանուրի շահերին, նոր մարդ, որին խորթ են ո՛չ միայն բյուրոկրատիզմը, հարբեցողությունը, գողությունը, կաշառակերությունը, այլև հանրային կեցության կանոնների որևէ խախտում, մարդ, որն աշխատի և ապրի կոմունիստաբար։ Անհրաժեշտ է հաղթահարել մարդկանց գիտակցությունից կապիտալիստական հասարակությունից ժառանգած հոգեբանության ու գաղափարների մնացուկները։ Այդ է պահանջում կյանքն այսօր։ Այդ մնացուկների դեմ մղվող պայքարում պետք է ներգրավել հասարակության լայն խավերին։ Մարդկանց պետք է դաստիարակել դրական և վառ օրինակների հիման վրա, խոսքի արվեստի ողջ ուժով։ Որքան մենք մոտենում ենք կոմունիզմին, այնքան ավելի շատ պետք է կիրառվեն բացատրելու, համոզելու և դաստիարակելու մեթոդները։ Հետևաբար, ավելի մեծանում և պատասխանատու է դառնում յուրաքանչյուր պրոպագանդիստի դերը։

ՍՄԿՊ Կենտկոմի վերոհիշյալ որոշումը իդեոլոգիական աշխատանքի հետագա բարելավման մարտական ծրագիր է, որտեղ ո՛չ միայն ցույց է տրված թե ի՛նչ պետք է անել, այլև ինչպե՛ս պետք է անել։

Ինչպես ճիշտ նշված է այդ որոշման մեջ, «Պարտիական պրոպագանդայի գլխավոր թերությունը մնում է դեռ մինչև վերջ չհաղթահարված կտրվածությունը կյանքից, կոմունիզմի կառուցման պրակտիկայից»։ Սա ամբողջապես վերաբերում է և մեր դասախոսական աշխատանքին։ Կյանքին չհամապատաս-

խանող, չոր և «գրքային» դասախոսությունները մեզ մոտ դեռ քիչ չեն։ Նույնիսկ այնպիսի թեմաներ, ինչպիսիք են, օրինակ, խնայողական ռեժիմը, ինքնարժեքի իջեցումը, արտադրության ռեզերվների օգտագործումը, բերքատվության բարձրացումը և այլն, կարդացվում են ընդհանուր ձևով։ Դասախոսը երկար ու բարակ խոսում է խնայողության, ինքնարժեքի իջեցման անհրաժեշտության մասին, սակայն չի ասում, թե ինչպե՛ս, ի՛նչ ճանապարհով հասնել դրան։ Պարզ է, որ նման դասախոսությունը նպատակին չի հասնի։ Մինչդեռ այն պետք է օգնի վերացնելու տվյալ օբյեկտում եղած թերությունները, բարձրացնելու տնտեսությունը, կատարելագործելու արտադրության տեխնոլոգիան և այլն։ Իհարկե, դա հաճախ կարող է լինել ոչ անմիջականորեն, այլ մարդկանց մտածելակերպի փոփոխման միջոցով։

Դասախոսական պրոպագանդայով զբաղվող կազմակերպությունները, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկություններն ու գյուղատնտեսական օրգանները շատ անբավարար են պրոպագանդում արտադրության առաջավորների, նորարարների փորձը։ Իսկ դա խոշոր բաց է։ Համեմատաբար քիչ պետք է խոսել այն մասին, թե այսինչ բրիգադան որքան շատ բերք է ստացել, այլ ավելի շատ խոսել այն մասին, թե ինչպես է ստացել։ Համոզիչ, ապացուցված հետևություններով և օրինակներով պետք է բացատրել հաջողության, նվաճումների հասնելու եղանակներն ու մեթոդները. միայն այդպիսի պրոպագանդան կարող է օգնել ետ մնացողին հասնելու առաջավորին։

Կան բազմաթիվ օրինակներ, երբ միևնույն շրջանում, միևնույն հողակլիմայական պայմաններում իրար մոտ գտնվող կոլտնտեսություններից մեկը ստանում է առատ բերք, մյուսը՝ ոչ։ Վերցնենք, օրինակ, Արտաշատի շրջանի Քաղցրաշենի կոլտնտեսությունը։ Այստեղ 1959 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացել են 220 ցենտներ խաղող, իսկ նրա հարևան Նովրզլու գյուղի կոլտնտեսությունը ստացել է միայն 53,4 ցենտներ։ Այս օրինակից պարզ երևում է, որ վճռականը աշխատանքի ձևերը, մեթոդները, հողը մշակելու վարպետությունն է և ոչ թե միայն բնության խաղերը։ Մեր պրոպագանդան արե՞լ է ամեն ինչ, որպեսզի առաջավոր փորձը ըմբռնեն ետ մնացողները։ Իհարկե, ոչ։ Կարելի՞ է հանդուրժել, օրինակ, այն, որ ամբողջ 1959 թվականի ընթացքում գյուղատնտեսության առաջավոր փորձի մասին Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության գծով ոչ մի դասախոսություն չի կարդացվել Ապարանում, Աղինում, Ամասիայում, Կարմիրում, Եղեգնաձորում, Մեղրիում, Շամշադինում, Կոտայքում և այլ շրջաններում։ Դա լուրջ թերություն է մեր աշխատանքում, դա հենց կյանքից կտրված լինելն է։

Վերցնենք արդյունաբերության բնագավառը։ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Գագանովայի օրինակը շատ բնորոշ է։ Երկար ժամանակ ետ մնացող բրիգադան երբ ունեցավ փորձված, հմուտ կազմակերպիչ, կարճ ժամանակում դարձավ առաջավոր։ Մինչդեռ դասախոսական աշխատանքում լուրջ ուշադրություն չի նվիրվում առաջավոր փորձի պրոպագանդմանը, որը, դժբախտաբար, մինչև այժմ շարունակվում է։ Այլապես ինչո՞վ բացատրել, որ ամբողջ 1959 թվականի ընթացքում Երևան քաղաքում, որտեղ կենտրոնացված է ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասը, արդյունաբերության առաջավորների փորձի մասին կարդացվել է ընդամենը 41 դասախոսություն, Լենինականում՝ 47, Կիրովականում՝ 43։



Առաջավոր փորձի այսպիսի անբավարար պրոպագանդան բացատրվում է նրանով, որ գործարանների ղեկավարները, պարտիական կազմակերպությունները անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում այդ շատ կարևոր հարցին։

Բերենք մի բնորոշ օրինակ այն մասին, թե որքան լավ արդյունք է տալիս առաջավոր փորձի կազմակերպված պրոպագանդան։ Անցյալ տարի Լենինգրադից Երևան հրավիրեց անվանի նորարար, Ստալինյան մրցանակի լաուրեատ, Լենինգրադի գործարաններից մեկի խառատ Վ. Մ. Բիրյուկովը, որը հանդես եկավ մեքենաների դետալների սառը մշակման իր առաջավոր փորձի ցուցադրմամբ, հաստոցների վրա գործնականորեն ցույց տալով իր աշխատանքի մեթոդները։ Երևանի, Լենինականի և Կիրովականի մի շարք գործարաններում և ֆաբրիկաներում նրա ելույթները մեծ հետաքրքրություն առաջ բերին։

Ամենուրեք, որտեղ լինում էր ընկ. Վ. Մ. Բիրյուկովը, բանվորները, ինժեներները, տեխնիկները, ցեխերի վարիչները ուշադրությամբ հետևում էին նրա աշխատանքի մեթոդներին և այժմ, որտեղ նա եղել է, արդեն գործնականորեն կիրառվում են նրա մեթոդները։ Ընկ. Վ. Մ. Բիրյուկովի մեթոդով աշխատելիս զգալի չափով բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, արտադրանքի որակը, իջնում է ինքնարժեքը և խնայվում նյութը։

Մենք ունենք կոմունիստական աշխատանքի բրիգադաներ, որոնք հիանալի և ուսանելի փորձ են կուտակել, որոնց օրինակով կարող են աշխատել շատերը, սակայն դեռ նրանց փորձը մասսայականացնող չկա։ Դժբախտաբար մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը դեռ բավարար կերպով չեն մասսայականացնում առաջավոր փորձը։

ՍՄԿՊ Կենտկոմի որոշման մեջ շեշտված է, որ պարտիական պրոպագանդան որքան սերտորեն կապված լինի ժողովրդի ստեղծագործության հետ, կյանքի, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ, այնքան մեծ կլինեն նրա արդյունքը, նրա ներգործությունը և դաստիարակչական դերը։

Դասախոսական աշխատանքում պետք է հատուկ տեղ գրավի «ով չաշխատի, նա չի ուտի» սկզբունքի բազմակողմանի պրոպագանդումը։ Պետք է ընդհանուրի արհամարհանքին արժանանան բոլոր նրանք, ովքեր խուսափում են հանրօգուտ աշխատանքից, խախտում աշխատանքային կարգապահությունը։ Դասախոսական կադրերը պետք է այսուհետև աշխատանքային դաստիարակության հարցերը, նաև աշխատասիրությունը մշտապես պահեն իրենց ուշադրության կենտրոնում, որովհետև բոլոր բարիքների աղբյուրը աշխատանքն է։ Մեծանուն գրող Մաքսիմ Գորկին ասել է. «Սիրեցեք աշխատանքը, ոչ մի այլ ուժ մարդուն չի դարձնում այնպես մեծ ու իմաստուն, ինչպես դարձնում է աշխատանքի՝ կոլեկտիվ, համերաշխ, ազատ աշխատանքի ուժը»։

Դասախոսական լայն աշխատանք պետք է ծավալվի, հատկապես, երիտասարդության շրջանում։ Պարտիայի Կենտկոմի որոշման մեջ ասված է. «Հարկավոր է բարձրացնել կոմունիստական կազմակերպությունների աշխատանքի մակարդակը, գլխավոր ուշադրությունը կենտրոնացնելով քաղաքական լուսավորության վրա, պատանիների ու աղջիկների հանրակրթական, պրոֆեսիոնալ-տեխնիկական և կուլտուրական մտահորիզոնի ընդլայնման, նրանց մեջ սովետական հայրենասիրության զգացմունք, աշխատանքի նկատմամբ հարգանք, հասարակական բարիքի նկատմամբ հոգատար վերաբերմունք, իր ամենօրյա գործունեության մեջ պատմական հսկայական իմաստը տեսնելու կարողություն դաստիարակելու վրա»։

Հասկանալի է, որ երիտասարդության շրջանում կարդացվող դասախոսությունների ձևերն ու մեթոդները պետք է լինեն բազմազան, կենդանի ու կրքոտ։ Անհրաժեշտ է դաստիարակչական լայն աշխատանք ծավալել նաև դըպրոցում, հատկապես 8-ամյա դպրոցում սովորող պատանիների ու աղջիկների շրջանում, նպաստել նրանց քաղաքական գիտակցության, հանրակրթական և կուլտուրական մակարդակի բարձրացմանը, դաստիարակել նրանց մեջ աշխատասիրություն և ինքնուրույն կյանք վարելու ունակություն։ Այս գործում պետք է ներգրավել բոլոր մանկավարժ դասախոսներին։

Դասախոսական պրոպագանդայի լուրջ թերություններից մեկն էլ ունկնդիրների սահմանափակ քանակությունն է։ Լսարաններում գրեթե միշտ նույն ունկնդիրներն են։ Փաստորեն բնակչության մի զգալի մասը դեռ չի ընդգրկված դասախոսական պրոպագանդայի ոլորտում, չնայած նրան, որ այժմ արդեն կան բոլոր պայմանները, որպեսզի դասախոսությունը մտնի աշխատավորական լայն խավերի կենցաղում, դառնա հոգեկան սննդի անհրաժեշտ մի օղակ։ Դասախոսություններ պետք է կազմակերպել նաև տնային տնտեսուհիների, թոշակառուների և այլ խավերի համար։ Դասախոսություններ պետք է կազմակերպել և ուղղիչ գաղութներում։

Անհրաժեշտ է կիրառել անհատական զրույցի մեթոդը, որը օգտակար է, հատկապես, հավատացյալների շրջանում տարվող աշխատանքում։ Գաղտնիք չէ, որ մեր գիտա-աթեիստական պրոպագանդան, եթե չասենք ամբողջովին, համենայնդեպս մեծ մասամբ ընդգրկում է ոչ հավատացյալներին։ Բնակչության այն մասը, որն ավելի շատ գիտա-աթեիստական գիտելիքների կարիք ունի, գրեթե չի մասնակցում այդ թեմաներով կազմակերպված դասախոսություններին։ Անհատական զրույցների միջոցով այդ բացը կարելի է վերացնել։ Այդ մասին պետք է լուրջ մտածեն պարտիական կազմակերպությունները, Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության ինչպես ռեսպուբլիկական վարչությունը, այնպես էլ նրա քաղաքային և շրջանային բաժանմունքները։

Ո՞ւմ հայտնի չէ, որ տնային տնտեսուհիների դաստիարակությունը հըսկայական նշանակություն ունի կյանքում։ Սակայն շատ հաճախ տնային տընտեսուհիները տարիներով ոչ մի դասախոսություն չեն լսում, որովհետև նրանց հետ աշխատող, նրանց հավաքող չկա։ Քիչ չեն այն դեպքերը, երբ բանվորը. ծառայողը ընտանիքում տեղի ունեցած անախորժություններից հետո հիմնարկում, ձեռնարկությունում իր լրիվ կարողությամբ չի աշխատում։ Լավ, համերաշխ ընտանիքը, նաև լավ աշխատանքի գրավականն է։

Պարտիան պահանջում է դասախոսությունը կապել կյանքի հետ։ Ամեն մի դասախոսություն պետք է օգնի բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, մարդկանց կուլտուրան։ Պետք է վերջ տալ շաբլոն, կյանքից կտրված դասախոսություններին։ Գործին կարող է օգնել մատչելի, համոզիչ խոսքը, տվյալ օբյեկտից վերցրած լուրջ փաստերի խելացի օգտագործումը։ Դասախոսությունը կլինի տպավորիչ, հասկանալի, դյուրամարս, եթե դասախոսը խնամքով ընտրի և օգտագործի տեղական փաստերը։

Ի՞նչ օգուտ կարող է տալ այն դասախոսը, որը խոսելով, ասենք, հակահասարակական արարքների, լոդրերի, հարբեցողների մասին, ոչ մի օրինակ չի բերում տվյալ օբյեկտից։ Մինչդեռ Լենինն ասում է. «Յուրաքանչյուր պրոպագանդիստի ու յուրաքանչյուր ագիտատորի հմտությունը հենց այն է, որպեսզի



լավագույն կերպով ներգործի տվյալ լսարանի վրա, նրա համար հայտնի ճըշմարտությունը դարձնելով ըստ հնարավորին ավելի համոզիչ, ըստ հնարավորին ավելի դյուրին յուրացվող, ըստ հնարավորին ավելի ակնբախ ու հաստատ տպավորվող (Երկեր, հ. 17, էջ 418)։

Լենինի այս ցուցումը ներկա էտապում բացառիկ մեծ նշանակություն է ստանում։ Դասախոսական պրոպագանդան ավելի մատչելի դարձնելու համար պետք է լայնորեն օգտագործել իրենց լիովին արդարացրած պրոպագանդայի այնպիսի ձևեր, ինչպիսիք են՝ հարց ու պատասխանի երեկոները, թեմատիկ երեկոները, բանավոր ամսագրերը, ստեղծագործական դիսկուսիաները, կիրակնօրյա ընթերցումները, հանդիպումները և այլն։

Թե որքան օգտակար են այդ ձևերից յուրաքանչյուրը, երևում է հետևյալ օրինակներից։ Երևանի Պոլիտեխնիկ ինստիտուտում 1959 թվականին կազմակերպվել է հետաքրքրական երեկո՝ «Ինչ է կոմունիզմը և ինչպես ես դու պատկերացնում քո տեղը կոմունիստական հասարակարգի կառուցման գործում», Երևանի Նախագծային ինստիտուտում՝ «Խոսենք ճաշակի մասին» հարցերի շուրջը։ Այդ հարցերի քննարկումն անցել է շատ բուռն և լեփլեցուն լսարաններում։ Վերջում դասախոսները ամփոփել են երեկոն։ Այդպիսի միջոցառումներ կիրառում են նաև մյուս ինստիտուտներն ու շրջանային կազմակերպությունները։

Դասախոսությունների ընթացքում պետք է խնամքով ընտրել և օգտագործել գեղարվեստական գրականությունը։ Ունկնդիրները հեշտ և լավ կըմբռնեն նյութը, եթե դասախոսությունը համեմվի նյութին համապատասխան գեղարվեստական գրականությունից առնված հրապուրիչ օրինակներով։ Դըժբախտաբար դասախոսների մեծ մասն այդ բանը չի անում։

Դասախոսության նպատակասլացությունը կախված է նաև ունկնդիրների կազմից։ Չպետք է թաքցնել, որ պրոպագանդայի խոշոր թերություններից մեկը հենց այդ է։ Մինչև այժմ պրոպագանդան մեծ մասամբ տարվում էր ընդհանրապես բոլորի համար, այսինքն՝ նույն լսարանում լինում են և՛ բանվորներ, և՛ ինժեներներ, և՛ բժիշկներ, և՛ ուսուցիչներ, և՛ ուսանողներ։

Այսպիսի դեպքերում ծանր վիճակի մեջ են լինում թե՛ դասախոսները և թե՛ ունկնդիրները։ Պարզ չէ, մի՞թե, որ ոչ մի դասախոս չի կարող բավարարել այդպիսի խայտաբղետ լսարանին։ Այստեղ դասախոսությունը մեկի համար կլինի հետաքրքրական, մյուսի՝ ոչ։ Դասախոսների հասցեին եղած դժգոհությունների զգալի մասը դրա հետևանք է։

Դասախոսական աշխատանքը ստեղծագործական աշխատանք է։ Շաբլոնն այստեղ խիստ վնասաբեր է։ Նույն ձևով չի կարելի հանդես գալ, ասենք, բանվորների և ուսուցիչների, կամ բժիշկների մոտ։

Վ. Ի. Լենինը պահանջում էր, որպեսզի պրոպագանդիստը կառապանների հետ խոսի այլ ձևով, նավաստիների կամ գրաշարների հետ՝ այլ։ Ամեն մի դասախոս, պրոպագանդիստ այս բանը երբեք չպետք է մոռանա։ Պարտիայի Կենտկոմի որոշման մեջ ընդգծված է, որ «պրոպագանդիստական աշխատանքը հաճախ կատարվում է ոչ դիֆերենցված, առանց հաշվի առնելու տեղական պայմանները, ինչպես նաև բնակչության տարբեր խավերի տարիքային, պրոֆեսիոնալ, կրթական, ազգային և մյուս առանձնահատկությունները»։

Անբավարար են պրոպագանդվում սոցիալիստական սիստեմի առավելությունները կապիտալիստականի համեմատությամբ։ Դա շատ լուրջ թերու-

թյուն է, որը խիստ նկատելի է դասախոսական մեր պրոպագանդայում և որը պետք է վերացնել։ Ամեն մի դասախոս, լինի նա գրականագետ, թե բժիշկ, մանկավարժ, թե իրավաբան, ճարտարապետ թե արվեստագետ, պետք է իր հիմնական նյութից բացի, գեթ մինիմալ չափով իմանա նաև երկրի էկոնոմիկան, կուլտուրան, միջազգային կյանքը։ Դասախոսը, որը կոչված է պարտիայի մեծ գործերը ժողովրդին լուսաբանելու, չի կարող լինել «նեղ» մասնագետ։ Նա պարտավոր է գիտենալ նաև մեր հիանալի երկրի մեծագույն նվաճումները էկոնոմիկայի, գիտության, գրականության, արվեստի, տեխնիկայի բնագավառներում։ Նա պետք է քաջ գիտակ լինի մեր պարտիայի ներքին և արտաքին քաղաքականությանը, որպեսզի կարողանա հաստատուն ու ճիշտ պատասխանել ունկնդիրների բազմապիսի հարցերին։

Պարտիայի Կենտկոմը նշում է, որ պրոպագանդայի բնագավառում ոչ բավարար չափով են օգտագործվում մամուլը, հեռուստատեսությունը, թատրոնը, ակումբները, կինոն և այլն։ Մինչև օրս մեր դասախոսական կադրերը չեն փորձել մինիմալ չափով օգտագործել արտասահմանյան մի շարք կինոնկարների պատկերած կապիտալիստական «դրախտ»-ի այլանդակությունները։ Փոխանակ վկայակոչելու այդ նկարներում բավական հաջող ձևով մերկացված արդի կապիտալիզմի ցնցող այլանդակություններն ու մարդկանց թշվառությունը, որոշ դասախոսներ օգտագործում են անցյալ դարի գրականության օրինակները։

Ինչպես հայտնի է, կապիտալիզմի մնացուկներից ամենատարածվածը և ամենառեակցիոնը կրոնն է։ Մեզ մոտ՝ Հայաստանում, համարյա չկա գիտաաթեիստական թեմայով ստեղծված որևէ ֆիլմ։ Նույնը կարելի է ասել նաև թատրոնների մասին։ Ժամանակն է, որպեսզի ո՛չ միայն դասախոսությունների, այլև կինոյի ու թատրոնի, գեղարվեստական այդ շատ կարևոր օղակների միջոցով ևս ցույց տրվի կրոնի վնասակարությունը, նրա ռեակցիոն էությունը։ Հայ կլասիկ և արդի գրականության մեջ դրա համար հիանալի նյութեր կան։

Դասախոսական աշխատանքի բարելավման, նրա որակի բարձրացման համար վճռական նշանակություն ունեն կադրերը։ Պարտիայի Կենտկոմի պահանջը անթերի կատարելու համար պետք է սկսել դասախոսական կադրերից։ Ինչպես Լենինն է սովորեցնում՝ «Յուրաքանչյուր դպրոցում ամենակարևորը դասախոսությունների գաղափարական-քաղաքական ուղղությունն է։ Ինչո՞վ է որոշվում այդ ուղղությունը։ Ամբողջովին և բացառապես դասախոսների կազմով» (Երկեր, հ. 15, էջ 588)։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի որոշման մեջ այդ առթիվ ասված է. «Պարտիական պրոպագանդայի ղեկավարության բարելավման անվերապահ պայմանը կադրերի ճիշտ ընտրությունն է, տեղաբաշխումն ու «դաստիարակությունը» (ընդգծումը մերն է—Խ. Դ.)։ Արդի նոր խնդիրները հրամայողաբար պահանջում են ամենալուրջ ուշադրություն, հոգատարություն կադրերի պատրաստման գործին։ Բացի սիստեմատիկաբար հրավիրվող սեմինարներից, կոնսուլտացիաներից, անհրաժեշտ է դասախոսների համար հայերեն լեզվով հրատարակել գրքեր գիտության, տեխնիկայի, գյուղատնտեսության և մյուս ճյուղերի մասին։

Պարտիական կազմակերպությունները, Հայկական ՍՍՌ Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությունը պետք է հոգ տանեն, որպեսզի պրոպագանդիստները, դասախոսները շարունակ հարստացնեն իրենց



գիտելիքները։ Ահա թե այդ մասին ինչ է ասված Կենտկոմի որոշման մեջ. «Դեռ ոչ բոլոր պարտիական կազմակերպություններն են հոգ տանում հմուտ, իրենց գործը սիրող պրոպագանդիստներ դաստիարակելու, նրանց տեսական մակարդակը և մեթոդական վարպետությունը բարձրացնելու նկատմամբ»։ Այն դասախոսը և պրոպագանդիստը, որ ամեն օր չի լրացնում իր գիտելիքները, ետ է մնում կյանքից։ Պետք է պլանավորել և հաճախակի կազմակերպել ստեղծագործական դիսկուսիաներ, տեսական կոնֆերանսներ, սեմինարներ, կոնսուլտացիաներ դասախոսների համար։ Այդ կարգի միջոցառումները զգալի չափով կնպաստեն դասախոսների ընդհանուր գիտելիքների շրջանակների ընդլայնմանը, նրանց մասնագիտական գիտելիքների ճշգրտմանն ու խորացմանը։ Քիչ չեն դեպքեր, երբ միջազգային տեսության, մանկավարժության, իրավաբանական և այլ թեմաների դասախոսը չի իմանում և չի կարողանում պատասխանել տնտեսության զարգացմանը վերաբերող հարցերին։

Դասախոսական կադրերի հոգևոր սննդի նորոգման իմաստով բացառիկ կարևոր դեր են խաղում ամսագրերը, որոնց հոդվածների նկատելի մասի բովանդակությունը դժբախտաբար դեռ աղքատիկ է։ Սակայն իրենք դասախոսներն էլ սակավ են հանդես գալիս ամսագրերում։ Շատ լավ կլիներ, եթե նրանք պարբերաբար տպագրեին լավորակ դասախոսությունները։ Դա կլիներ հենց դասախոսական դրական օրինակի պրոպագանդայի ձևերից մեկը։

Մեծ նշանակություն ունի պրոպագանդիստի փորձի փոխանակությունը։ Մեր ռեսպուբլիկայում քիչ չեն տարիների փորձ ունեցող, իրենց գործը լավ իմացող, հմուտ պրոպագանդիստներ։ Բայց ո՞վ գիտե նրանց տեղը, ե՞րբ են մեր թերթերն ու ամսագրերը մասսայականացրել նրանց աշխատանքի փորձը։ Ղուկասյանում, Ղափանում կամ մի այլ հեռավոր շրջանում նստած պրոպագանդիստը ինչպե՞ս իմանա լավ դասախոսի աշխատանքի մասին, եթե օգնության չգան թերթերն ու ամսագրերը։ Դրական, ուսանելի աշխատանքի փորձի պրոպագանդան այս բնագավառում ևս պետք է լինի մեր ուշադրության կենտրոնում։

Հասունացած հարց է նաև դասախոսական աշխատանքի փորձի փոխանակման համար հատուկ բյուլետենի հրատարակումը։ Հայկական ՍՍՌ Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությունը, ի հաշիվ իր հրատարակվող բրոշյուրների, ամիսը մեկ անգամ, 2—3 մամուլ ծավալով կարող է հրատարակել այդպիսի բյուլետեն, որի միջոցով հնարավոր կլինի ռեսպուբլիկայի պրոպագանդիստներին մեթոդական օգնություն ցույց տալ։

Դասախոսական աշխատանքը պատասխանատու, շնորհակալ աշխատանք է։ Ամեն մարդ չի կարող լինել դասախոս։ Դրա համար պահանջվում են խոր գիտելիքներ և դրանք հաղորդելու ունակություն։ Մնայուն, փորձված, բանիմաց դասախոսական կադրեր ունենալու համար խոշոր նշանակություն ունի խրախուսանքը։ Մինչդեռ չափից ավելի քիչ են խրախուսվում մեր հիանալի պրոպագանդիստները, դասախոսները։ Ժամանակն է, որպեսզի լավ բանվորի, կոլտնտեսականի, լավ ուսուցչի և բժշկի հետ միասին խրախուսվեն նաև լավ դասախոսները և լավ պրոպագանդիստները։ Իհարկե, շատ լավ կլիներ, եթե խրախուսանքի միջոցները լինեն այնպիսիք, որ ավելի բարձրացնեն պրոպագանդիստի գիտելիքները, կուլտուրան, օգնեն նրան ավելի լավ աշխատելու։ Կարելի է, օրինակ, դասախոսին գործուղել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդես, փորձի փոխանակման համար՝ Մոսկվա,

Լենինգրադ, Կիև և այլ քաղաքներ, դուրս գրել իրեն մասնագիտության համապատասխան գրադարան և այլն։ Այդ միջոցները և՛ խրախուսանք, և՛ օգնություն են պրոպագանդիստի աշխատանքի որակի բարձրացման համար։

ՍՄԿԿ Կենտկոմի մեր մատնանշած կարևորագույն որոշումը պարտավորեցնում է պարտիական պրոպագանդան ամբողջովին համապատասխանեցնել մեր զարգացման արդի պահանջներին։ Բոլոր մասնագիտությունների գծով կարդացված դասախոսությունների ուղն ու ծուծը պետք է լինի արդիականությունը։ Մեր երկրում կուլտուրայի ու գիտության բուռն ծաղկման շնորհիվ շատ հաճախ հնանում են մեր երբեմնի պատկերացումներն ու գիտելիքները տնտեսության, տեխնիկայի, ճշգրիտ գիտությունների այս կամ այն պրոբլեմների վերաբերյալ։ Ուստի անհրաժեշտ է ունկնդրել ժամանակի զարկերակի տրոփին, քայլել մեր օրերի տեմպով։ Այդ պահանջում է բարձրացնել դասախոսական կադրերի ինքնազարգացման և աշխատանքի կուլտուրան։

Օրավուր զարգացող սոցիալիստական հարուստ պրակտիկան, միջազգային բարդ իրադարձությունների շղթան մեր դասախոսական կադրերին թելադրում են անդուլ կերպով ուսումնասիրել մարքսիզմ-լենինիզմի հարաճուն գաղափարները, ո՛չ միայն լինել մասսաների դաստիարակներ, այլև սովորել նրանց հարուստ փորձից։

Պրոպագանդիստական աշխատանքի ընթացքում անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել միջազգային կյանքի կարևոր պրոբլեմների լուսաբանմանը։ Այստեղ պետք է քառապատկել մեր ջանքերը և նորանոր կարող ուժեր ներգրավել դասախոսական աշխատանքի այդ կարևոր բնագավառում։

Կենդանի, հրապուրող դասախոսություններն ու զրույցները պետք է դուրս մղեն երբեմն տեղ գտնող գորշ ու պաղ այն հանդիպումները, որոնք լինում են կոլեկտիվների ու դասախոսների միջև։ Մենք պետք է հասնենք այն բանին, որ ունկնդիրները դասախոսություններին հաճախեն սիրով։ Դրան կարելի է հասնել, եթե դասախոսները հետևողականորեն կիրառեն ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, շոշափեն իրենց լսարանին հետաքրքրող, կոմունիզմի կառուցման բարդ ու հրապուրիչ հարցեր, աշխատեն պրոպագանդան ավելի ու ավելի սերտորեն կապել կյանքի հետ։

---

# ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԱԳՐԳՌՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲԱՐԻՔՆԵՐԻ ԲԱՇԽՈՒՄԸ

*Ս. ՀՅՈՒՍՅԱՆ*

ՍՄԿԿ XXI համագումարի որոշումների և համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ առաջ քաշվեցին հասարակական զարգացմամբ առաջադրված գիտական կոմունիզմի մի քանի հարցեր, որոնք ունեն ո՛չ միայն տեսական, այլև գործնական մեծ նշանակություն։ Դրանցից են սոցիալիզմի և կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում նյութական շահագրգռվածության և հասարակության կողմից արտադրված նյութական բարիքները հասարակության բոլոր անդամների միջև բաշխելու հարցերը։

Սոցիալիստական արտադրական հարաբերությունների հաստատումը աշխատանքի բնագավառում մարդկանց հայացքներում արմատական փոփոխություններ առաջացրեց։ Աշխատանքն արտադրական միջոցների հասարակական սեփականության պայմաններում դադարեց հարկադրական բնույթ կրելուց և դարձավ աշխատողի, նրա՝ հասարակության համար կատարվող աշխատանք։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ «Ուրիշի համար հարյուրամյակներ աշխատելուց , շահագործողների համար հարկադրական աշխատանք կատարելուց հետո, առաջին անգամն է հնարավորություն ստեղծվում իր համար աշխատելու, այն էլ այնպիսի աշխատանքի հնարավորություն, որը հենվում է նորագույն տեխնիկայի ու կուլտուրայի բոլոր նվաճումների վրա» (Երկեր, հ. 26, էջ 495)։ Ի հակադրություն կապիտալիզմի, որտեղ աշխատանքը արհամարհված և ծանր բեռ է, սոցիալիզմն աշխատանքը դարձրեց պատվի, փառքի և հերոսության գործ։ Սոցիալիստական հասարակության մեջ մարդու դրությունը որոշվում է միայն աշխատանքով և անձնական ընդունակություններով։ Այդ ամենը սոցիալիզմի օրոք հասարակական հուժկու ազդակներ է ստեղծում աշխատանքի նկատմամբ։

Դրա հետ միասին սոցիալիզմի պայմաններում շահագործումից ազատ աշխատանքը դեռ ամբողջապես չի դարձել հասարակության բոլոր անդամների ամենաառաջին կենսական պահանջմունքը։ Կոմունիզմի առաջին փուլում դեռ մինչև վերջ հաղթահարված չեն կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ։ Իրենց աշխատանքային պարտականությունները բարեխղճորեն կատարող շատ աշխատողների կողքին կան նաև այնպիսիները, որոնք անփութորեն են վերաբերվում դեպի հասարակական աշխատանքը, խուսափում են հանրօգուտ աշխատանքից։

Սոցիալիզմի ժամանակ էական տարբերություններ կան մտավոր ու ֆիզիկական աշխատանքի, բանվորների և գյուղացիների աշխատանքի միջև, տարբերություններ՝ որակյալ և հասարակ, ծանր և թեթև աշխատանքի միջև։

Այս բոլորից բխում է կոմունիզմի առաջին փուլում աշխատողի անձնական նյութական շահագրգռվածության հսկայական նշանակությունն իր աշխատանքի արդյունքների նկատմամբ։ Այդ շահագրգռվածությունն ապահովվում է սպառման առարկաներն ըստ աշխատանքի քանակի և որակի բաշխելու սկզբունքի միջոցով։

Անձնական նյութական շահագրգռվածության ճիշտ կիրառումը մեր պետության տնտեսական քաղաքականության կարևորագույն սկզբունքներից մեկն է։ Վ. Ի. Լենինը ընդգծել է, որ տասնյակ միլիոնավոր մարդկանց կոմունիզմին կարելի է մոտեցնել ոչ թե անմիջականորեն էնտուզիազմի հիման վրա, այլ մեծ ռևոլյուցիայի ծնունդ հանդիսացող էնտուզիազմի, անձնական նյութական շահագրգռվածության հիման վրա։

Նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքը խթանում է աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ և արագ աճը, աշխատողների որակավորման բարձրացումը, արտադրության տեխնիկայի և տեխնոլոգիայի կատարելագործումը։ Այդ սկզբունքը դաստիարակչական մեծ դեր է խաղում, մարդկանց վարժեցնում է սոցիալիստական կարգապահության, աշխատանքը դարձնում է բոլորի համար ընդհանուր և պարտադիր։

Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը ղեկավարվելով լենինյան ցուցումներով, հետևողականորեն կիրառում են ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը և վճռական պայքար մղում մանրբուրժուական հավասարության դեմ, այսինքն՝ աշխատանքի հավասար վարձատրության դեմ անկախ նրա քանակից ու որակից։

Կոմունիստական շինարարության բուրժուական քննադատներից շատերը, գիտակցաբար խեղաթյուրելով իրականությունը, փորձում են համոզել իրենց ընթերցողներին, թե իբր սոցիալիզմը ըստ Մարքսի ու Լենինի ենթադրում է նյութական բարիքների հասարակական սպառման ֆոնդից մարդկանց ստացած բաժնի հավասարություն։ Իսկ քանի որ ՍՍՌՄ-ում նյութական բարիքները անհավասար են բաշխվում, ապա, ըստ նրանց, դա հավասարազոր է սոցիալիզմից հրաժարվելուն։ Դա փաստորեն հավասարության պրոլետարական, սոցիալիստական ըմբռնման ամենակոպիտ աղավաղումն է։

Մերկացնելով մանրբուրժուական պատկերացումը սոցիալիզմի մասին, ընկեր Ն. Ս. Խրուշչովը պարտիայի XXI համագումարում պարզաբանեց և հաստատեց հավասարության մարքսիստական-լենինյան ըմբռնումը։ Հավասարություն ասելով Մարքսը և Լենինը հասկանում էին ոչ թե ֆիզիկական և հոգեկան ընդունակությունների հավասարություն, այլ տնտեսական, հասարակական հավասարություն։ Սոցիալիզմի ժամանակ այդ նշանակում է արտադրության միջոցների մասնավոր սեփականության և մարդու կողմից մարդու շահագործման բոլորի համար հավասար վերացում, արտադրության միջոցների հասարակական սեփականության անբաժան տիրապետությամբ պայմանավորված աշխատանքի հավասար հնարավորություն բոլորի համար։

Հավասարության գաղափարը ծագել է գիտական կոմունիզմի երևան գալուց շատ առաջ։ Մարդկության բազմադարյան պատմության ընթացքում հասարակական-տնտեսական կացութաձևերի փոփոխման հետ միասին փոխվել է նաև հասարակության տարբեր դասակարգերի՝ հավասարության մասին ունեցած պատկերացումը։ XVII—XVIII դարերի հակաֆեոդալական ռևոլյուցիաների ժամանակաշրջանում բուրժուազիան հռչակեց հավասարու-



թյան լոզունգը։ Բուրժուազիան հավասարության գաղափարի մեջ տեսնում էր միայն ֆեոդալական դասայնության և արտոնությունների իր համար ձեռնտու վերացում, մարդկանց ֆորմալ, իրավական հավասարություն։ Սակայն ֆեոդալական անհավասարության վերացումը օբյեկտիվորեն հանգեցրեց նոր, բուրժուական անհավասարության երևան գալուն։ Բուրժուազիայի հռչակած ֆորմալ իրավական հավասարության հետևում թաքնվում է մարդկանց փաստական տնտեսական աղաղակող անհավասարությունը։ Բանվորական ուժ-ապրանքի գնման ու վաճառքի գործարքում կապիտալիստը և վարձու բանվորը արտաքուստ հանդես են գալիս որպես իրավահավասար ապրանքատերեր։ Հեգնելով այդ «հավասարությունը»՝ ֆրանսիական հայտնի գրող Անատոլ Ֆրանսը գրել է, որ հավասարության մասին բուրժուական օրենքը միևնույն կերպ «...արգելում է ինչպես աղքատներին, այնպես էլ հարուստներին քնել կամրջի տակ, ողորմություն խնդրել փողոցում և հաց գողանալ»։

Տնտեսության կապիտալիստական սիստեմի պայմաններում արտադրության միջոցները կապիտալիստների մասնավոր սեփականությունն են և, հետևաբար, աշխատանքի արդյունքներն էլ պատկանում են կապիտալիստներին։ Արտադրության միջոցների սեփականությունից զրկված բանվորներն ու գյուղացիները հարկադրված են աշխատելու կապիտալիստների և կալվածատերերի համար։ Սեփականատիրական այդպիսի հարաբերությունների վրա խարսխվող բուրժուական «հավասարությունը» հանգեցնում է կապիտալիստների հարստացման և բանվոր դասակարգի աղքատացման։

Ֆեոդալիզմի և նրա տնտեսական հիմքի՝ կալվածատիրական սեփականության դեմ մղվող պայքարում ծագեց հավասարության գյուղացիական գաղափարը։ Հավասարության իրականացումը գյուղացիները կապում էին հողի հավասարարական բաշխման սկզբունքի կիրառման հետ։ Վ. Ի. Լենինը նշում է, որ ճորտատեր-կալվածատերերի դեմ գյուղացիների մղած պայքարում ամենաուժեղ խթանը եղել է հավասարության գաղափարը։ Այդ գաղափարն առաջադիմական, ռևոլյուցիոն դեր է խաղացել։ Որքան ավելի վճռականորեն վերացվեր հողի կալվածատիրական սեփականությունը, այնքան ավելի լայն ասպարեզ կբացվեր արտադրողական ուժերի զարգացման համար։ Հավասարության գյուղացիական գաղափարի պատմականորեն առաջադիմական դերը ցույց տալով հանդերձ, մարքսիզմ-լենինիզմի կլասիկները միևնույն ժամանակ քննադատում էին այն գաղափարը, ըստ որի հողի հավասարարական բաշխումը դիտվում էր որպես կապիտալիստական անհավասարության ծնունդն արգելակող միջոց։

Կապիտալիզմի զարգացման հետևանքով մանր ապրանքարտադրողների քայքայմանը զուգընթաց՝ հավասարության գյուղացիական գաղափարը աստիճանաբար վերածվում էր մանրբուրժուական սոցիալիզմի տարատեսակության։

XIX դարի սկզբից մանր բուրժուազիայի գաղափարախոսները (Ս. Սիսմոնդի, Պ. Պրուդոն և ուրիշներ) արտահայտելով կապիտալիստական հասարակության մանր արտադրողների հակասական դրությունը, կապիտալիզմի չարիքներից ազատագրվելու ուղին տեսնում էին ոչ թե մասնավոր սեփականության վերացման և արտադրության միջոցների հանրայնացման, այլ մանր ապրանքային տնտեսությունը հավերժացնելու ուտոպիստական ծրա-

գրերի մեջ։ Մանր բուրժուազիայի գաղափարախոսները զանազան հավասարարական պատրանքներ էին տարածում բանվորների մեջ, նրանց շեղելով դասակարգային պայքարից։ Այդ իսկ պատճառով մարքսիզմ-լենինիզմը պայքարել ու պայքարում է մանրբուրժուական հավասարության հետադիմական գաղափարների դեմ։

Ուտոպիստական ցանկությունների վրա հիմնվող հավասարության մանրբուրժուական տեսակետներին մարքսիզմ-լենինիզմը հակադրեց հավասարության պրոլետարական, սոցիալիստական տեսակետը։

Կապիտալիզմի զարգացման հետևանքով արտադրության ավելի ու ավելի մեծ մասշտաբներով հանրայնացումն անհամատեղելի է դառնում արտադրության արդյունքների յուրացման մասնավոր-կապիտալիստական ձևի հետ։ Պրոլետարական ռևոլյուցիայի միջոցով կապիտալիստական սեփականության վերացումը և սոցիալիստական սեփականության հաստատումը նշանակում է հավասարություն սոցիալիստական իմաստով, այսինքն՝ աշխատանքի հավասար հնարավորություն հասարակական արտադրության միջոցներով, հավասար աշխատանքի համար՝ հավասար վարձատրության միասնական սկզբունք բոլորի համար։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ արտադրության յուրաքանչյուր եղանակի համապատասխանում են բաշխման պատմականորեն որոշ ձևեր։ Կապիտալիզմի ժամանակ բաշխումը կատարվում է ոչ թե ըստ աշխատանքի, այլ ըստ կապիտալի, կարգավորվում է արժեքի, շահույթի, հողային ռենտայի օրենքներով։ Դրա հետևանքով, ազգային եկամտի առյուծի բաժինը ստանում են ոչ թե նրանք, ովքեր շատ են աշխատում, այլ նրանք, ովքեր շատ կապիտալ ունեն։ ԱՄՆ-ում տիրող դասակարգերը կազմում են բնակչության մոտ մեկ տասներորդ մասը, բայց յուրացնում են ազգային եկամտի ավելի քան կեսը։

Միայն սոցիալիստական հասարակարգում հնարավոր դարձավ բանվորների գործազրկության վերացումը և ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի սիստեմատիկ բարձրացումը։ Սոցիալիզմի օբյեկտիվ տնտեսական օրենքները պայմանավորում են սոցիալիզմի օրոք արդյունքների բաշխման բոլորովին այլ բնույթ՝ կապիտալիզմի համեմատությամբ։ Սոցիալիստական հասարակարգում, որտեղ մարդկանց եկամտի միակ աղբյուրը աշխատանքն է, գործում է «ով չաշխատի, նա չի ուտի» սկզբունքը։ Ըստ աշխատանքի բաշխման սոցիալիզմի տնտեսական օրենքը պահանջում է արդյունքների բաշխումն ուղղակի կախման մեջ դնել յուրաքանչյուրի աշխատանքի քանակից և որակից։ Հավասար աշխատանքի համար հավասար վարձատրության սոցիալիստական սիստեմը տարածվում է մեր հասարակարգի բոլոր աշխատողների վրա, անկախ նրանց սեռից, հասակից, ռասայական ու ազգային պատկանելությունից։ Մինչդեռ կապիտալիստական հասարակարգում կանայք, անչափահասները, նեգրերը և այլ ազգությունների պատկանողները միևնույն աշխատանքի համար ստանում են ավելի ցածր վարձատրություն քան տղամարդիկ, չափահասները և սպիտակամորթները։

Ըստ աշխատանքի բաշխելու սկզբունքը ելնում է սոցիալիզմի ժամանակ հավասարարական բաշխման անհնարինության ըմբռնումից։ Ինչպես հայտնի է, «ռազմական կոմունիզմի» ժամանակաշրջանում մեր պարտիան և կառավարությունը հարկադրված էին ժամանակավորապես հեռանալու «ըստ աշ-



խատանքի» բաշխման սկզբունքից և անցնելու «ըստ շնչի» հավասարարական բաշխմանը։ Բաշխման այդպիսի կարգը թելադրվում էր արդյունաբերական և գյուղատնտեսական ապրանքների ոչ թե առատությամբ, այլ սուր պակասով։ Այդ միջոցառումը Սովետական պետությանը թույլ տվեց կանխել սովը և բնակչությանն ու բանակի մարտիկներին հատկացնել այս կամ այն չափով կանոնավոր օրապահիկ։ Սակայն «ըստ շնչի» հավասարարական բաշխման թերությունները իսկույն ևեթ երևան եկան ժողովրդական տնտեսության վերականգնման և խաղաղ աշխատանքին անցնելու տարիներին։ Այդ ժամանակ Վ. Ի. Լենինը պարտիայի և կառավարության ուշադրությունը բևեռեց այն հանգամանքի վրա, որ առանց իրենց աշխատանքի արդյունքներով աշխատողների անձնական նյութական շահագրգռվածության չի կարելի մեր երկրում սոցիալիստական հասարակարգ կառուցել։ Նյութական շահագրգռվածության լենինյան սկզբունքը սոցիալիստական շինարարության պրակտիկայում իր արտացոլումը գտավ ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի մեջ։

Վճռական պայքար մղելով մանրբուրժուական հավասարարության դեմ, մարքսիզմ-լենինիզմի կլասիկները ցույց տվեցին, որ սոցիալիզմի պայմաններում բացառվում է դասակարգային անհավասարությունը, անհավասարությունը մնում է միայն նյութական բարիքներ բաշխելիս ստացվող բաժիններում։ Կ. Մարքսը «Գոթայի ծրագրի քննադատությունը» աշխատության մեջ քննադատելով Լասալի հավասարարական գաղափարները, գրում էր՝ «...մեկ մարդը գերազանցում է մյուսից ֆիզիկապես կամ մտավորապես, ուրեմն և միևնույն ժամանակամիջոցում տալիս է աշխատանքի ավելի քանակ կամ ընդունակ է ավելի երկար ժամանակ աշխատելու...», ապա՝ «...մի բանվոր ամուսնացած է, մյուսը՝ ոչ. մեկն ունի ավելի երեխաներ, քան մյուսը և այլն, և այլն։ Հավասար աշխատանք կատարելիս և հետևապես հասարակական սպառման ֆոնդի մեջ հավասար մասնակցություն ունենալիս մեկն իրոք ավելի շատ կստանա, քան մյուսը, մեկը մյուսից ավելի հարուստ կլինի և այլն» (Կ. Մարքս, «Գոթայի ծրագրի քննադատությունը», Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, 1950 թ., էջ 18—19)։

Հավասար աշխատանքի համար հավասար վարձատրությունը դեռևս չի վերացնում կոմունիստական հասարակարգի առաջին փուլի ժամանակ մարդկանց նյութական ապահովվածության մակարդակների միջև գոյություն ունեցող տարբերությունները։ Այդ տարբերությունների անխուսափելիությունը պայմանավորված է որակյալ և անորակ, ծանր ու թեթև, մտավոր ու ֆիզիկական աշխատանքների միջև եղած տարբերություններով և դրանց խիստ հաշվառման անհրաժեշտությամբ։ Աշխատանքի հին բաժանման այդ մնացորդները հաղթահարելու համար սոցիալիստական պետությունն իրականացնում է աշխատանքի դիֆերենցված վարձատրության սկզբունքը։

Հավասարությունը աշխատավարձի մեջ, որն անտեսում է որակյալ և անորակ, ծանր ու թեթև, մտավոր ու ֆիզիկական աշխատանքների միջև եղած տարբերությունները, հակասում է ըստ աշխատանքի քանակի և որակի բաշխման տնտեսական օրենքին։ Հավասարարությունը խարխլում է աշխատողի նյութական շահագրգռվածությունը, արգելք է հանդիսանում ժողովրդական տնտեսության պլանների հաջող կատարմանը։ Որակյալ աշխատանքն ավելի բարձր վարձատրելու միջոցով սոցիալիստական պետությունն ապահովում է

ձեռնարկությունների արտադրական արդյունքների մեծացումը և աշխատողների որակավորման բարձրացումը:

Սոցիալիզմի ժամանակ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու գործում աշխատողների նյութական շահագրգռվածությունը խթանելու համար հավասար որակավորման դեպքում ծանր աշխատանքը թեթև աշխատանքից ավելի բարձր է վարձատրվում: Մտավոր ու ֆիզիկական աշխատանքների միջև եղած էական տարբերությունների վերացման գործում մեծ դեր է խաղում աշխատանքի դիֆերենցված վարձատրության սիստեմը, որը նպաստում է աշխատավորների հանրակրթական ու մասնագիտական մակարդակի բարձրացմանը մինչև ինժեներա-տեխնիկական ինտելիգենցիայի մակարդակը:

Աշխատանքի վարձատրության սիստեմի կարգավորման ուղղությամբ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը վերջին տարիներին հետևողականորեն իրագործում են մի շարք միջոցառումներ: ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից հետո գյուղատնտեսության մեջ վերացված են նյութական շահագրգռվածության սկզբունքի կոպիտ խախտման փաստերը, բարձրացված են գյուղատնտեսական շատ մթերքների մթերման գները, կարգավորված են աշխատանքի նորմաները: Կյանքը հրամայաբար առաջ է քաշում կոլտնտեսություններում ըստ աշխատանքի վարձատրության նոր ձևերի կիրառման անհրաժեշտությունը: Երկրի շատ առաջավոր կոլտնտեսություններում իրականացվել, կամ իրականացվում է անցումը աշխատանքի ամենամսյա դրամական վարձատրության: Փորձը ցույց է տվել, որ վարձատրության այս սիստեմը մեծ առավելություններ ունի և խթանում է կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունն աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում: Ներկայումս արդյունաբերության մեջ կատարվում է աշխատավարձի կարգավորում, տեխնիկական նորմավորում, տարիֆային սիստեմի բարելավում:

ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի Հունիսյան պլենումը նշեց, որ անհրաժեշտ է ձեռնարկությունների և շինարարական կազմակերպությունների համար տնտեսական խթաններ ստեղծել նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորման, արդյունաբերության և շինարարության կոմպլեքսային մեքենայացման, արտադրության ավտոմատացման գործում, ինչպես նաև բարձրացնել արտադրության, շինարարության, տրանսպորտի, գիտա-հետազոտական, նախագծային, կոնստրուկտորական կազմակերպությունների աշխատողների նյութական շահագրգռվածությունն արտադրության տեխնիկան կատարելագործելու ասպարեզում:

Նոր տեխնիկայի արմատավորման և ձեռնարկությունների կարողությունների առավել լրիվ օգտագործման լուրջ ազդակ է պարգևատրման ճիշտ կարգը: Սակայն պարգևատրման գոյություն ունեցող պրակտիկայում որոշ ձեռնարկություններ ձգտում են ստանալ ցածր առաջադրանքներ և ապա դրանք գերակատարել: ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը բացահայտեց նման անթույլատրելի երևույթները և իր որոշումների մեջ ընդգծեց, որ «Հազվադեպ չեն այն փաստերը, երբ նոր տեխնիկա յուրացնող ձեռնարկությունների կոլեկտիվներն աշխատանքի վարձատրման տեսակետից վատ դրության մեջ են ընկնում հնացած արտադրանք թողարկող ձեռնարկությունների աշխատողների համեմատությամբ: Տեխնիկայի և տեխնոլոգիայի հե-



տագա կատարելագործման խոշոր հարցերը հաջողությամբ լուծող գիտա-հետազոտական, նախագծային ու կոնստրուկտորական կազմակերպությունների մասնագետները փաստորեն իրենց աշխատանքի վարձատրության նյութական առավելություններ չունեն նրանց համեմատությամբ, ովքեր տարիներ շարունակ ոչ մի նոր բան չեն տալիս»:

«Պրավդա»-ի 1959 թվականի օգոստոսի 15-ի առաջնորդող հոդվածում՝ «Մարդկանց նյութապես շահագրգռել տեխնիկական պրոգրեսի հարցում», միանգամայն ճիշտ կերպով նշված է, որ այն դեպքերում, երբ նոր արտադրանքի յուրացման և արմատավորման պլանները չեն կատարվում, իսկ արտադրության պլանը կատարվում ու գերակատարվում է հնացած արտադրանքի թողարկման հաշվին, ձեռնարկությունների ղեկավար աշխատողներին պարգևներ չպետք է տրվեն: Այդպիսի սկզբունքը լրիվ չափով կհամապատասխանի ժողովրդական տնտեսության, տեխնիկական հետագա առաջադիմության շահերին: ՍՄԿՊ Կենտկոմի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումը Գյուղատնտեսության մինիստրության ուշադրությունը բևեռեց սովխոզների բանվորների աշխատանքի վարձատրության մեջ եղած մի քանի անկանոնությունների, հատկապես աշխատավարձի դուրսգրման գործում հսկողության անբավարարության և հավելագրումների անթույլատրելի պրակտիկայի վերացման անհրաժեշտության վրա:

Վերջին տարիներին ցածր վարձատրվող աշխատողների աշխատավարձը բարձրացվեց մոտավորապես 33 տոկոսով: ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները նախատեսում են ցածր վարձատրվող աշխատողների աշխատավարձի հետագա բարձրացման միջոցով կրճատել ցածր ու բարձր վարձատրվող աշխատողների խմբերի աշխատավարձի մակարդակի միջև գոյություն ունեցող խզումը: Այդ միջոցառումն իրականացնելու համար յոթնամյակի ընթացքում նախատեսվում է ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների նվազագույն աշխատավարձն ամսական 270—350 ռուբլուց հասցնել 500—600 ռուբլու: Կոլտնտեսականների ռեալ եկամուտները նույնպես կաճեն առնվազն 40 տոկոսով, գլխավորապես կոլտնտեսությունների հանրային արտադրության աճի հաշվին:

ՍՄԿՊ Կենտկոմը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և ՀԱՄԿԽ-ը վերջերս որոշում ընդունեցին բանվորներին և ծառայողներին կրճատ աշխատանքային օրվա փոխադրելու և նրանց աշխատավարձի կարգավորումն ավարտելու ժամկետների մասին: 1959—1960 թթ. ընթացքում մեր երկրի բանվորներն ու ծառայողները կփոխադրվեն յոթժամյա աշխատանքային օրվա, իսկ ածխային և լեռնահանքային արդյունաբերության առաջատար պրոֆեսիայի բանվորները, որոնք կատարում են ստորերկրյա աշխատանքներ՝ վեցժամյա աշխատանքային օրվա: Այդ որոշմամբ նախատեսված միջոցառումների կենսագործումը կարևոր քայլ կլինի ՍՍՌՄ-ում՝ աշխարհի ամենակարճ աշխատանքային օրվա և ամենակարճ աշխատանքային շաբաթի գործնական իրականացման ճանապարհին: Անհրաժեշտ է ընդգծել, որ կրճատ աշխատանքային օրվա փոխադրումն իրագործվում է աշխատավարձի միաժամանակյա կարգավորման հետ: Դրա շնորհիվ աշխատանքային օրվա կրճատման պայմաններում բանվորների և ծառայողների աշխատավարձը ո՛չ միայն չի նվազել, այլ նոր, ավելի բարձր դրույքներ ու ռոճիկներ մտցնելու շնորհիվ էապես ավելացել է, հատկապես ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավար-

ձը։ Այդ ամենը բարձրացրել է աշխատողների նյութական շահագրգռվածությունն արտադրության աճի և աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում։

Կոլտնտեսություններում աշխատանքի արտադրողականությունը խթանելու նպատակով 1953 թվականին Սովետական պետությունը զգալիորեն բարձրացրեց գյուղատնտեսական արտադրանքի գները։ Այդ միջոցառումը բարձրացրեց կոլտնտեսականների վաստակը։ Որոշ շրջաններում այն նույնիսկ գերազանցում է բանվորի վաստակից։ ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ դա անարդարացի է, որովհետև հասարակական հարստությունը միասին ստեղծած, սերտ միասնությամբ դեպի կոմունիզմ ընթացող բանվորներն ու գյուղացիները պետք է ստանան աշխատանքի այնպիսի վարձատրություն, որը վիրավորական չլինի ո՛չ բանվորների, ոչ էլ գյուղացիների համար։

Գյուղատնտեսական արտադրության մեքենայացման աճի, կոլտնտեսականների որակավորման բարձրացման, աշխատանքի կազմակերպման բարելավման ներկա պայմաններում անհրաժեշտ է սիստեմատիկաբար վերանայել և սահմանել կոլտնտեսություններում արտադրական նոր նորմաներ և աշխատանքի վարձատրության ավելի պրոգրեսիվ գնահատումներ, ինչպես դա արվում է արդյունաբերական ձեռնարկություններում։ Այդ իսկ պատճառով Դեկտեմբերյան պլենումը հավանություն տվեց մի շարք ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմների և Մինիստրների Սովետների առաջարկին՝ կոլտնտեսություններում բամբակի, թեյի տերևի, բոստանային կուլտուրաների, խաղողի, մրգերի և բրդի արտադրության ինքնարժեքն իջեցնելու վերաբերյալ և նրանց առաջարկներին՝ կոլտնտեսությունների կողմից պետությանը վաճառվող գյուղատնտեսական որոշ մթերքների գնման գներն իջեցնելու և դրանք սովխոզների արտադրանքի հանձնման գներին մոտեցնելու վերաբերյալ։ Այդ միջոցառումների իրականացումը թույլ կտա հետագայում իջեցնելու ժողովրդական սպառման առարկաների պետական մանրածախ գները և, հետևաբար, է՛լ ավելի բարձրացնելու սովետական ժողովրդի բարեկեցությունը։

Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի X պլենումը, լսելով և քննարկելով ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Ս. Թովմասյանի զեկուցումը ՍՄԿԿ Կենտկոմի 1959 թվականի Դեկտեմբերյան պլենումի արդյունքների և Հայաստանի պարտիական կազմակերպությունների խնդիրների մասին, իր որոշման մեջ արձանագրեց, որ մեր ռեսպուբլիկայում ևս խաղողի, բանջարանոցային և մի քանի այլ կուլտուրաների բերքատվության բարձրացման և ինքնարժեքի իջեցման շնորհիվ արդեն պայմաններ են ստեղծվել խաղողի, բանջարեղենի և գյուղատնտեսական հումքի այլ առանձին տեսակների վաճառքի գներն իջեցնելու և դրանք սովխոզների արտադրանքի հանձնման գներին մոտեցնելու համար։

Կոլտնտեսություններում պետք է սահմանվի աշխատանքի վարձատրության այնպիսի կարգ, որը կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության սկզբունքի իրականացման պայմաններում բացառի չափազանց բարձր, ոչնչով չարդարացվող վաստակները։

Սոցիալիզմի օրոք նյութական բարիքների բաշխման միակ հնարավոր և արդար սկզբունքն ըստ աշխատանքի բաշխումն է։ «Չի կարելի չտեսնել,— ասում է ընկեր Խրուշչովը,— որ հավասարարությունը կհանգեցներ անարդար



բաշխման՝ և՛ վատ, և՛ լավ աշխատողը հավասարաչափ կստանային, որը ձեռնտու է միայն լոդրերին։ Կքայքայվեր մարդկանց այն նյութական մղումը, որպեսզի ավելի լավ աշխատեին, բարձրացնեին աշխատանքի արտադրողականությունը, ստեղծվեին ավելի շատ մթերքներ։ Հավասարարությունը կնշանակեր ոչ թե անցում կոմունիզմին, այլ նրա վարկաբեկում»։

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում արտադրության արդյունքներով աշխատողների նյութական շահագրգռվածության ուժեղացման և ըստ աշխատանքի վարձատրության ձևերի զարգացման հետ միասին ավելի ու ավելի մեծ նշանակություն են ստանում հասարակության համար կատարվող աշխատանքի բարոյական խթանները։

Խամ ու խոպան հողերի յուրացման, երկրի արևելյան անմարդաբնակ ու հեռավոր շրջաններում արդյունաբերական ձեռնարկությունների արագ կառուցման, արտադրական նոր հաջողություններ ձեռք բերելու համար ծավալված սոցիալիստական մրցության խթանիչ ուժը հասարակության բարօրության համար նյութական ու կուլտուրական բարիքներ ստեղծելու ձգտումն է։ Այդ նպատակին հասնելու համար սովետական շատ մարդիկ դիմում են անձնական նյութական զոհաբերությունների, կրում են լուրջ դժվարություններ, գիտակցելով, որ մեր երկրում աշխատավորների բարեկեցությունն ու երջանկությունն ապահովվում է ամբողջ հասարակության կողմից։

Սոցիալիստական աշխատանքի հերոս Վ. Գագանովայի հրաշալի նախաձեռնության լայն տարածումը խոսում է կոմունիստական շինարարության պրակտիկայում աշխատանքի բարոյական խթանների ավելի ու ավելի մեծ նշանակություն ստանալու մասին։

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, նյութական բարիքների բաշխման սոցիալիստական և կապիտալիստական սկզբունքների միջև գոյություն ունեն արմատական տարբերություններ, որոնք պայմանավորված են արտադրության կապիտալիստական և սոցիալիստական եղանակների հակադրությամբ։

Բաշխման սոցիալիստական և կոմունիստական սկզբունքները որքան էլ իրարից տարբերվեն, նրանց միջև ինչ-որ պատնեշ գոյություն չունի։ Բաշխման կոմունիստական սկզբունքի էլեմենտները երևան են գալիս դեռևս կոմունիստական հասարակարգի առաջին փուլում, երբ իշխում է ըստ աշխատանքի որակի և քանակի բաշխման տնտեսական օրենքը։ Արդեն այժմ մեր երկրում նյութական ու կուլտուրական բարիքների նշանակալի և սիստեմատիկորեն աճող մասը սովետական մարդկանց միջև բաշխվում է անկախ նրանց կատարած աշխատանքի որակից և քանակից, այսինքն անվճար։ Հասարակության անդամների միջև անվճար բաշխվող նյութական ու կուլտուրական բարիքների այդ մասը հսկայական նշանակություն ունի բաշխման կոմունիստական սկզբունքի զարգացման համար։

Սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում աշխատավորների հասարակական սպասարկման համար պետության ծախսերն աճել են ու ավելի կաճեն։ Նախատեսվում է աշխատավորների հասարակական սպասարկմանը 1965 թվականին հատկացնել մոտավորապես 360 միլիարդ ռուբլի՝ 1958 թվականի 215 միլիարդ ռուբլու փոխարեն։ 1965 թվականին յուրաքանչյուր աշխատողին ընկնող ծախսերն այդ գծով կկազմեն 3800 ռուբլի։ Բացի դրանից, բնակարանների, դպրոցների, կուլտուր-կենցա-

ղային և բուժհիմնարկների կառուցման վրա կծախսվեն այնքան միջոցներ, որոնք տարեկան մեկ աշխատողի հաշվով կկազմեն ավելի քան 800 ռուբլի։

Աշխատավորների հասարակական ապասարկման համար Սովետական պետության ծախսերի անընդհատ աճը չի հանգեցնում կոմունիզմի առաջին փուլի ժամանակ հասարակական սպառման ֆոնդից մարդկանց ստացած բաժնի հավասարության։ Նյութական ու կուլտուրական բարիքների բաշխումն ըստ աշխատանքի որակի և քանակի դեռևս երկար ժամանակ կպահպանվի։

Զարգացման ներկա էտապում արդյունքների հավասարարական բաշխումը կհանգեցներ կուտակված միջոցների սպառման և անհնարին կդարձներ էկոնոմիկայի հետագա զարգացումը, ընդլայնված վերարտադրությունը։

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ մարդկանց նյութական բարեկեցության անհավասարությունը կարելի է վերացնել միայն կոմունիզմի ժամանակ, երբ հնարավոր կլինի իրականացնել ըստ պահանջմունքների բաշխման սկզբունքը։ Արտադրողական ուժերի զարգացման բարձր մակարդակը կապահովի բոլոր նյութական և կուլտուրական բարիքների առատությունը, որը հնարավոր կդարձնի անցումը բաշխման սոցիալիստական սկզբունքից կոմունիստական սկզբունքին։

Սակայն կոմունիզմի ժամանակ մարդկանց նյութական բարեկեցության անհավասարության վերացումը ամենևին հավասարության չի հանգեցնում։ «Յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա պահանջմունքների» սկզբունքի և հավասարարական բաշխման մանրբուրժուական սկզբունքի միջև ոչ մի ընդհանուր բան գոյություն չունի։ Կոմունիզմը մարդկանց հավասար ընդունակություններ և հավասար պահանջմունքներ չի ենթադրում։ Կոմունիզմն անսահմանափակ ասպարեզ է բացում մարդկանց մտավոր ու ֆիզիկական ընդունակությունների, ստեղծագործական ուժերի, հակումների, ճաշակների, մարդկության պատմության մեջ չտեսնված ծաղկման, հասարակության բոլոր անդամների անհատական պահանջմունքների բավարարման համար։

Հավասարությունը կոմունիզմի ժամանակ բոլորի համար ըստ ընդունակությունների աշխատելու և նյութական հոգևոր բարիքներն ըստ պահանջմունքների ստանալու հնարավորության հավասարություն է։

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում շարունակում են գործել սոցիալիզմի բոլոր տնտեսական օրենքները, մասնավորապես ըստ աշխատանքի որակի և քանակի բաշխման օրենքը։ Այդ տնտեսական օրենքի հետևողական կիրառումը կարևորագույն պայման է սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու համար։

Հասարակության զարգացման տնտեսական օրենքների իմացությամբ զինված Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդին վստահորեն առաջնորդում է լենինյան ուղիով դեպի աշխարհում ամենաարդարացի հասարակարգի՝ կոմունիստական հասարակարգի շողշողուն գագաթները։

---

# ՊԱՅՔԱՐ ՀԱՆՈՒՆ ԱՊԱԳԱՅԻ ՆՈՐ ՄԱՐԴՈՒ

## ՀՈՎՀ. ՀԱԿՈԲՅԱՆ

Զորս տասնամյակից քիչ ավելի ժամանակ է մեզ բաժանում «Ավրորայի» ազդարար համազարկերից։ Դա մի շատ կարճ հատված է մարդկության պատմության համար։ Բայց տարիներն անգամ դարերի իմաստ ունեն, երբ պատմությունն առաջ է մղում իր վաստակի ու բախտի տերը դարձած ժողովուրդը։ Հետամնաց ագրարային երկրից՝ առաջավոր ինդուստրիալ տերություն, փայտե արորից՝ տիեզերական անհունն ակոսող երկրի առաջին արբանյակներ և արևի առաջին մոլորակներ — ահա հին աշխարհի կապանքներից ազատագրված սովետական ժողովրդի ստեղծարար աշխատանքի ու հանճարի թռիչքը, որին զարմանքով ու անզոր կատաղությամբ է նայում կապիտալի զառամած աշխարհը։ Բայց սովետական ժողովրդի սխրանքների սխրանքն այն է, որ նա կոմունիստների, իր պարտիայի գլխավորությամբ լիովին և վերջնականապես ավարտեց սոցիալիզմի կառուցումը և այսօր ապագայի նկատմամբ անսասան հավատով ոտք է դրել կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, մի հասարակարգ, որի դրոշի վրա հավերժորեն կդրոշմվի «Յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա պահանջմունքների»՝ մարտնչող մարդկության փայփայած երազանքը։

Կոմունիզմի կառուցումը դարձել է մեր կյանքի իմաստն ու բովանդակությունը։ Իսկ մեծ գաղափարները ծնում են մեծ եռանդ։ Նույնիսկ բուրժուական աշխարհի ամենամոլի պաշտպանները, որոնք տասնամյակներ շարունակ փորձում էին աչք փակել մեր նվաճումների առաջ և համաշխարհային հասարակայնության աչքում սևացնել սովետական ապրելակերպը, այսօր արդեն անզոր են իրենց իսկ հորինած ստի ու կեղծիքի հանդեպ։ Հայտնի ամերիկյան բիզնեսմեն, իսկ ներկայումս արտաքին տնտեսական քաղաքականության հարցերով ԱՄՆ-ի պրեզիդենտի օգնական Կլարենս Ռենդոլն իր «Կոմունիստական մարտակոչը և ամերիկյան ձեռներեցությունը» գրքում գրում է. «Սովետական բանվորը իր պարտականությունները կատարում է ամբողջ հոգով, մի տեսակ կրոնական մոլեռանդությամբ, ոչ թե նրա համար, որ նրան հարկադրում են, այլ նրա համար, որ նա նվիրված է իր գործին։ Ժամանակակից Ռուսաստանում աշխատանքը պատվի գործ է, իսկ առաջադրանքի չկատարումը դիտվում է որպես պարսավանքի արժանի արարք»։

Այո, իր դասակարգային պատկանելությանը, իր ցանկություններին հակառակ, ճիշտ է նկատում ամերիկյան բիզնեսմենը։ Բայց դժվար թե նա կարողանա ամբողջությամբ ըմբռնել սովետական մարդկանց նոր հոգեբանությունը։ Աշխատանքը պատվի գո՞րծ, այդ երբվանի՞ց և ինչպե՞ս։ Մի՞թե կա-

պիտալի մշակները կարող են իրենց պատվի գործը համարել տերերին հարստացնելը, իսկ իրենց և իրենց զավակներին գոյության ամենանվազ պահանջմունքներից, կուլտուրայից ու լուսավորությունից զրկելը։ Դժվար թե ամերիկյան բիզնեսմենը խորանա այսպիսի դատողություններում, որովհետև դա նրան հեռուն չի տանի։ Այնինչ սովետական մարդու բարոյական արժանիքների աղն էլ հենց դրանումն է։ Սովետական մարդն աշխատում է իր համար, իր զավակների համար, ամբողջ հասարակության համար։ Աշխատանքը պատմության մեջ առաջին անգամ դարձել է պատվի, փառքի, արիության գործ։ Եվ ահա այդ աշխատանքի բովում կոփվում են սովետական մարդու, ապագայի մարդու բարոյական գծերը, նրանց մտքերն ու գործերը թևավորում է ստեղծագործվող կոմունիզմի ռոմանտիկան։

Սովետական մարդկանց բարոյական բարձր հատկությունները նախ և առաջ չափվում են նրանց գործերով։ Չէ՞ որ մեր երկրում մարդու հասարակական դիրքը որոշվում է հասարակության համար կատարած հանրօգուտ աշխատանքով։ Սովետական մարդկանց բնորոշ գիծն այն է, որ նրանք անձնական երջանկության կածաններ չեն փնտրում։ Նրանք իրենց մտքի ու սրտի թելադրանքով, կոմունիստների պարտիայի կանխագծումներով ճանապարհ են հարթում դեպի կոմունիստական գալիքը, որը և նրանց անձնական երջանկության մայրուղին է։ Ինչպես Կրեմլում ժուռնալիստների ընդունելության ժամանակ պատկերավոր ձևով արտահայտեց ընկեր Խրուշչովը, սովետական մարդիկ «յուրաքանչյուրն իր աշխատանքում իր պարտքը կատարում է արժանավայել կերպով։ Ինչպես որ մեղուները աշխատում են առավոտվանից մինչև գիշեր և ստեղծում կուռ շենք՝ մեղրախորիսխներ, դրանք լցնում մեղրով, այդպես էլ մեր մարդիկ, որտեղ էլ որ աշխատեն, եթե նրանք ազնվորեն են աշխատում, կատարում են իրենց պարտականությունները, իրենց ֆունկցիաները հասարակության մեջ»։ Բայց ինչպես հայտնի է, առողջ մեղվաընտանիքում էլ հանդիպում են բոռեր։

Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը պարտիայի XXI համագումարում հայտարարեց, որ մեզ մոտ չկան այլևս քաղաքական շարժառիթներով դատական պատասխանատվության կանչելու դեպքեր։ Դա սովետական ժողովրդի բարոյաքաղաքական միասնության ցայտուն վկայությունն է։ Դրան կարելի է ավելացնել, որ մեզ մոտ տարեցտարի նվազում է նաև քրեական հանցագործությունների թիվը։ Մեր երկրում իսպառ վերացված են հասարակական այլանդակ երևույթների սոցիալական արմատները, բայց, չնայած դրան, դեռևս գոյություն ունեն հանցագործություններ, որոնք կարող էին չլինել, եթե մեր ժողովուրդն ապրած չլիներ այնպիսի հսկայական աղետ, ինչպիսին պատերազմն էր, եթե որոշ մարդկանց գիտակցության մեջ երիզորդների նման չպահպանվեին անցյալի անիծյալ մնացուկները, եթե մեզ շրջապատող հին աշխարհից սողոսկած թունավոր գաղափարները տեղ չգտնեին ոմանց մտածողության ճեղքերում։

Իսկ ո՞րն է հանցագործների վերադաստիարակման ճշմարիտ ճանապարհը։ Որտե՞ղ է թաքնված այն ուժը, այն կիզիչ ջերմությունը, որը կարող է օգտակար թափթփուկներից վերաձուլել ապագայի մարդուն։ Գուցե այդ ուժը բռնության, դաժանության մե՞ջ է։ «Մասնավոր սեփականությունը սրբություն է» քողի տակ հազարամյակներ շարունակ հորինվել են ամենասարսափելի պատիժներ, որ անհայտ են եղել նույնիսկ գեհենի պահապաններին։



Բայց ի՞նչ է եղել արդյունքը։ Շատերը խարանվել են ու գլխներին շիկացած թասեր կրել, կախաղան են բարձրացվել ու տանջամահ արվել գնդաններում, բայց նորից շարունակվել են սպանությունները ու կողոպուտը, սրիկայությունն ու խաբեբայությունը։ Բռնությունը և դաժանությունը երբեմն էլ հասարակական ախտերից ազատվելուց արդյունավետ միջոցներ չեն եղել։ Բայց հարուստները դիմել են դրան, որովհետև իրենք սակավաթիվ են եղել, իսկ ընչազուրկներն անհամար։ Եթե բռնությունն ու դաժանությունը հին աշխարհի անխուսափելի ուղեկիցներն են եղել, ապա սոցիալիստական հասարակությունը, որտեղ չկան ունևորներ ու ընչազուրկներ, մերժում է մարդկանց վերափոխելու այդպիսի անարժան միջոցները։ Եվ եթե սովետական հասարակությունը երբևէ դիմել է բռնության, ապա այդ նրան հարկադրել են դրախտը կորցնելուց գազազած դասակարգային թշնամիները։ Թերևս այն ժամանակ, երբ մեր երկիրը գտնվում էր պաշարված ամրոցի վիճակում, մեր պետությունն ավելի հաճախ և ավելի խիստ էր դիմում հարկադրանքի այն տարրերի նկատմամբ, որոնք լարված պայքարի պայմաններում չէին խորշում ձեռք մեկնել սոցիալիստական սեփականությանը, ոտնահարել սոցիալիստական համակեցության կանոնները։ Նման հարկադրանքը բնական էր և անհրաժեշտ։ Բայց հիմա իրադրությունը փոխվել է։ Սոցիալիզմը դարձել է անպարտելի համաշխարհային սիստեմ։ Բազմաթիվ փորձությունների ու զրկանքների քուրայով անցած սովետական ժողովուրդը դարձել է ավելի կուռ ու միաձույլ, նա միաժամանակ դարձել է ավելի ուշադիր ու զգայուն իր արժանապատվությունն արատավորող ամեն մի փոքրիկ արարքի նկատմամբ։ Հիմա նա իր զինանոցում ավելի քիչ միջոցներ ունի զսպելու համար սանձարձակ տարրերին, քան միլիցիան, դատարանն ու դատախազությունը։ Իսկ այդ միջոցների պսակը մարդու նկատմամբ լենինյան վստահությունն ու հարյուր հազարավոր առողջ աշխատանքային կոլեկտիվներն են, որոնք իրենց ընդերքում պարունակում են մարդուն վերածնելու անսահմանափակ հնարավորություններ։

Փոխվել են ժամանակները, փոխվել է նաև հարկադրանքի բնույթը մեր հասարակության մեջ։ Դեպի կոմունիզմ սովետական հասարակության առաջընթացին զուգընթաց աստիճանաբար սեղմվում են պետական հարկադրանքի շրջանակները, իրենց տեղը զիջելով համոզման և դաստիարակության մեթոդին։ Աստիճանաբար, քայլ առ քայլ հասարակության ներգործությունը ավելորդ է դարձնում պետական հարկադրանքի միջոցները։ Դա սոցիալիստական հասարակության զարգացման ներքին օրինաչափությունն է։ Դեռևս ավելի քան մեկ դար առաջ Ֆրիդրիխ Էնգելսը գրում էր, որ «Այնպիսի հասարակության մեջ, որտեղ շահերի ընդհանրությունը բարձրացվել է հիմնական սկզբունքի աստիճանի, որտեղ հասարակական շահը արդեն չի տարբերվում ամեն մի առանձին անձի շահից», հասարակական կարգի և անվտանգության պահպանությունը կդառնա ամբողջ հասարակության գործը։ Այսօր մենք այդ մեծ ռևոլյուցիոն պրոցեսի ականատեսներն ու ակտիվ մասնակիցներն ենք։ Բայց ճի՞շտ կլիներ արդյոք այսօր ևեթ հրաժարվել միլիցիայի, դատարանի դատախազության և պետական հարկադրանքի մյուս օրգանների մատուցած ծառայություններից։ Հարկ կա՞ արդյոք այսօր արդեն օրակարգում դնել սոցիալիստական պետության մահացման հարցը։

Սովետական պետությունը դեմոկրատիայի նոր ձև է։ Նա աշխատավո-

րական պետություն է։ Նա կոմունիզմի կառուցման գործիք է, և մի հարվածով այն չես վերացնի, եթե չես ուզում խափանել կոմունիզմի կառուցման գործը։ Չէ՛ որ մարդիկ չէին կարող ամբողջությամբ հրաժարվել արորից ու գերանդուց, քանի դեռ նրանց փոխարինելու չէին եկել տրակտորն ու կոմբայնը։ Այդպես էլ Սովետական պետությունն է։ Որպեսզի նա մահանա, պետք է սպառի իրեն։ Իսկ դրա համար նա պետք է դրսևորի կոմունիզմի կառուցման իր բոլոր հնարավորությունները։ Այսինքն՝ նա պետք է մահանա ոչ թե պետական օրգանների կանխամտածված թուլացման, այլ ընդհակառակը, նրանց կատարելագործման ու զարգացման միջոցով։ Իսկ քանի որ նա աշխատավորական պետություն է, ապա սոցիալիստական պետականությունը կարող է զարգանալ միայն դեմոկրատիայի ամեն կերպ ծավալման, երկրի բոլոր գործերի կառավարման մեջ բնակչության ամենալայն խավերի ներգրավման, տնտեսական ու կուլտուրական շինարարության ղեկավարմանը մասնակցելու համար բոլոր քաղաքացիների ներգրավման ճանապարհով։

Միայն այն ժամանակ, երբ հասարակական կառավարման օրգանները կկորցնեն իրենց ֆունկցիաները և կվերածվեն հասարակության գործերի անմիջական ժողովրդական կառավարման, սոցիալիստական պետությունը կսպառի իրեն, կմահանա։ Բայց մինչ այդ սովետական պետությունը դեռ շատ անելիքներ ունի և պետական որոշ ֆունկցիաների անցումը հասարակական կազմակերպություններին, բոլորովին էլ չի նշանակում սովետական պետության թուլացում։ Դա պարզապես ինքնակառավարման սկիզբն է միայն։ Այս տեսակետից էլ սխալ կլինի իրական պատկերը ներկայացնել այնպես, թե իբր ներկայումս կարելի կլինի ընդհանրապես հրաժարվել պետական հարկադրանքից։ Հասարակության համար վտանգավոր հանցագործությունները առաջվա նման կպատժվեն պետական օրգանների կողմից։ Սակայն այսօր արդեն խընդիր է դրվում դատական ճնշման միջոցները սահմանափակել այնպիսի դեպքերով, երբ հասարակական ներգործության միջոցներն անբավարար են։

Այս էլ հենց կազմում է «Սովետական օրինականության և սոցիալիստական համակեցության կանոնների խախտումների դեմ մղվող պայքարում հասարակայնության դերի բարձրացման մասին» օրենքի նախագծի և «Ընկերական դատարանների օրինակելի կանոնադրության» և «Անչափահասների գործերի հանձնաժողովների օրինակելի կանոնադրության» նախագծերի հիմքը։ Օրենքի և կանոնադրությունների նախագծերում կարմիր թելի նման անցնում է հանցագործությունները կանխելու, ճշմարիտ ուղուց շեղված հասարակության անդամներին դաստիարակելու մասին միտքը։

Իսկ ինչո՞ւմն է երաշխիքը, որ սովետական հասարակայնությունը կկարողանա պատվով կատարել այդ մեծ ու հումանիստական խնդիրը։ Դրա երաշխիքն, առաջին հերթին, սովետական մարդկանց կոմունիստական գիտակցականության և քաղաքական ակտիվության աննախընթաց աճի մեջ է, որը և հնարավորություն է տալիս օրենքի աստիճանի բարձրացնել սոցիալիստական բարոյականության այն պահանջը, որ «Յուրաքանչյուր սովետական քաղաքացի պետք է ոչ միայն ինքը կատարի օրենքները, պահպանի աշխատանքի կարգապահությունը, պահպանի և ամրապնդի պետական ու հանրային սեփականությունը, պահպանի սոցիալիստական համակեցության կանոնները, այլև պահանջի, որ այդ կատարեն մյուս քաղաքացիները և ակտիվորեն պայքարի հակահասարակական բոլոր արարքների դեմ» (օրենքի նա-



խագծի առաջին հոդված)։ Նախագծի այս պահանջն ավելի մեծ խորհուրդ է տալիս և իմաստ ունի քան թվում է առաջին հայացքից։

Երբեմն պատահում է՝ անցնում ես փողոցով և տեսնում, թե ինչպես մի քանի երիտասարդներ զայրախոսում են և քահ-քահ ծիծաղում սեփական «սրամտությունների» վրա։

— Չե՞ք ամաչում,—հանդիմանում է անցորդներից մեկը։

— Իսկ քո ի՛նչ գործն է, դուրդ չի գալիս՝ մի՛ լսիր,—պատասխանում են սանձարձակ տղաները։

Շատ անցորդներ, երբ տեսնում են գործը բարդանում է, ճանապարհը թեքում են և անտարբեր անցնում. իսկ ոմանք էլ իրենց անտարբերությունը սվաղելու համար քրթմնջում են՝ կմեծանան՝ կխելոքանան։

Իսկ ո՞ւմ հայտնի չէ, որ խուլիգաններն ու զայրախոսներն այն ժամանակ են հերոս ձևանում, երբ նրանց ոչ ոք չի սաստում, հանրային բարիք խըժռողներն այն ժամանակ են ախորժակ ունենում, երբ նրանց ոչ ոք մատնացույց չի անում։ Կաշառակերներն այն ժամանակ են բազմանում, երբ մենք ակտիվ չենք պայքարում նրանց դեմ։

Իսկ ինչո՞ւ է այդպես ստացվում։ Ի՞նչն է շղթայում մեր շատ քաղաքացիների ազնիվ վրդովմունքը։ Դրա պատասխանը մեկն է՝ անտարբերությունը, որը բուրժուական քաղքենիության ամենահիվանդագին ու ամենավտանգավոր խոցերից մեկն է. «Լռել, քանի դեռ չեն տրորել քո սեփական կոշտուկները»։

Կոմունիզմ կառուցող քաղաքացու համար չեն կարող լինել սեփական և ուրիշի գործեր։ Այն, ինչը տխուր ու ստվերոտ է դարձնում մեր կյանքը, չի կարող չհուզել, անողոք պայքարի չկոչել սովետական մարդուն։

Իհարկե, անտարբերության համար մեզ մոտ չեն դատում, շատ դեպքերում նույնիսկ կոլեկտիվի պարսավանքին չեն արժանացնում։ Բայց մի՞թե իր հասարակական պարտքը գիտակցելու համար մարդը պետք է անպայման կանգնի դատարանի առաջ, կամ արժանանա կոլեկտիվի պարսավանքին։

Անտարբերությունը սոցիալիստական հասարակության մեջ մեծ չարիք է, որովհետև այն ոչ թե միավորում, այլ անջատում է մարդկանց մի խուլ պատնեշով։ Անտարբերությունը անհամատեղելի է սոցիալիստական, մարդասիրական բարոյականությանը։ Որքա՜ն խորիմաստ են այսօր հնչում սովետական գրող Բրունո Յասենսկու՝ իր վերջին գրքի համար ընտրած էպիգրաֆի խոսքերը՝ «Վախեցիր անտարբերներից, նրանք ոչ սպանում են և ոչ էլ դավաճանում, բայց նրանց լռակյաց համաձայնությամբ է միայն, որ երկրի վրա գոյություն ունեն դավաճանություն և սպանություն»։

Սովետական մարդիկ ոչ մի հիմք չունեն սարսափելու անտարբերության ահավոր վտանգից։ Նրանց մեծագույն մասը մշտարթուն կանգնած է հասարակական անդորրի պաշտպանության դիրքերում։ Բայց եթե մեր շարքերում չգտնվեն անտարբերներ, չեն լինի նաև սովետական մարդկանց աշխատանքն ու հանգիստը վրդովող առանձին տարրեր։

Սովետական ժողովրդի՝ օրենքի աստիճանի բարձրացված կամքը թելադրում է՝ մարդկանց մի՛ չափեք միայն անձնական առավելություններով, այլ գնահատեցեք հասարակության մեջ նրանց կատարած դերով։ Եղեք աչալուրջ և զգայուն։

Իրավախախտումները կանխելու, իսկ այնուհետև իսպառ վերացնելու

ինչ-ինչ՝ կազմակերպական և դաստիարակչական ձևեր ու միջոցներ են առաջարկվում։ Հրապարակված օրինագծերը հաշվի առնելով և ընդհանրացնելով անցյալի փորձը, բացի ընկերական դատարաններից ու ժողովրդական դատարաններից, առաջարկում են իրավազանցներին վերադաստիարակելու գործում հասարակայնության մասնակցության այնպիսի ձևեր, ինչպիսիք են՝ հասարակական կազմակերպության կամ կոլեկտիվի երաշխավորությամբ կալանքից ազատելը, նոր հիմունքներով անչափահասների գործերի հանձնաժողովների ստեղծումը և այլն։

Ընկերական դատարաններն իրենց ընդերքում ունեն սովետական օրինականության խախտումների դեմ պայքարի շատ նոր և ներգործուն ձևեր։ Ընկերական դատարանների մասին լավ է ասել ընկեր Խրուշչովը. «Երբ ակտիվորեն կգործեն հասարակական դատարանները և հենց հասարակայնությունը մարդիկ կառանձնացնի հասարակական կարգ ու կանոնի պահպանման համար, այդ ժամանակ անհամեմատ հեշտ կլինի կռվել օրինազանցների դեմ։ Կարելի կլինի այդ կարգի օրինազանցին հայտաբերել ոչ միայն այն ժամանակ, երբ նա զանցանք կամ հանցանք է կատարել, այլ այն ժամանակ, երբ նրա մեջ ի հայտ գան հասարակական և վարքի նորմաների շեղումներ, որոնք կարող են նրան հասցնել հակահասարակական արարքների։ Մարդիկ կարող են ժամանակին ներգործել նրա վրա, որպեսզի խափանեն նրա վատ հակումները»։

Իսկ ինչո՞ւմն է կայանում նրա ուժը։ Ընկերների դատարանը հասարակական կարծիքի արտահայտիչն է։ Նա հաճախ կարող է հաջողության հասնել այնտեղ, որտեղ անզոր են ադմինիստրացիան և քրեական ճնշումը։ Այդպիսի դատարանի ուժը հարկադրանքի, պատժի մեջ չէ, այլ իրավազանցի կոլեկտիվ դատապարտման, ընկերական քննադատության մեջ։ Իսկ դա հրսկայական ուժ է։

Սոցիալիստական հասարակության մեջ արհամարհել ընկերների առողջ դատողությունները, անտեսել հասարակական կարծիքը, նշանակում է մեկուսանալ, բարոյական մահվան դատավճիռ կայացնել սեփական անձի նկատմամբ։ Իսկ ո՞վ չի ուզում երջանիկ ապրել ու աշխատել։ Մեր կյանքը ցույց է տվել, որ մարդու համար չկան ավելի ծանր ապրումներ, քան դեմ առ դեմ կանգնել կոլեկտիվի առջև և պատասխան տալ իր սխալ արարմունքների համար։

Բայց արդյոք միայն դրանո՞ւմ է ընկերական դատարանների կենսունակությունը։ «Ընկերական դատարանների օրինակելի կանոնադրության» նախագիծը ենթադրում է ստեղծել լայն իրավասություններով օժտված ընկերական դատարանների համապարփակ սիստեմ։ Նրանք կստեղծվեն ամենուրեք» ...որտեղ ամենից ավելի կառուցվում է նորը, որտեղ հարկավոր է ամենից ավելի ուշադրություն, հրապարակայնություն, հասարակական քննադատություն, անպետքի խարազանում, լավից սովորելու կոչ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 109)։ Նրանք զանցառուներին կհետապնդեն թե՛ աշխատանքի մեջ, և թե՛ կենցաղում։ Դա հասարակական կարծիքի ամենամասսայական գրոհը կլինի այն ամենի դեմ, ինչը հին է ու խարխլված։ Այդ գրոհը անսպառ ու անվերջանալի կլինի։ Չէ՞ որ կյանքում միշտ ինչ-որ բան խարխլվում է, մահանում և արգելք դառնում առաջընթացին։

Ստեղծելով ընկերական դատարանների լայն ճյուղավորված ցանց, մեր



ժողովուրդը նայում է վաղվա օրվան։ Չէ՛ որ հասունացած կոմունիստական հասարակության մեջ չեն լինի ոչ պաշտոնական դատարաններ և ոչ էլ օրենսգրքեր։ Կոմունիստական համակեցության որևէ սրբության դեմ մեղանչած անձը «թողություն» կարող է ստանալ միայն կոմունիստական հասարակարգի այս կամ այն բջիջում, որտեղ նա վայելում է իր երջանկությունը։ Ընկերական դատարանների ստեղծումն ու ամրապնդումը իրավաբանական մի հաստատությունը մի ուրիշով փոխարինելու պրոցես չէ։ Դա այն սահմանագիծն է, որից սկսվում է գալիքի մուտքը։

Իսկ ինչպե՞ս վարվել, երբ ազնիվ ճանապարհից շեղված մարդը չի ենթարկվում հասարակական ներգործությանը։ Այս մասին պատկերավոր է ասել այն հանցագործներից մեկը, որը բազմաթիվ դեգերումներից հետո գտել է իր արժանի տեղը կյանքում։ — Կրկնահանցագործին մեղրաբլիթով, փաղաքշանքով չես գնի։ Համոզված եմ, որ մեր կյանքը կամաց-կամաց կմաքրի նրանց ուղեղները, բայց ցույց կտա ուր գնալ։ Բայց քանի դեռ նա ինքը չի գտել այդ ուղին, նրան ուժով կամ փաղաքշանքով այնտեղ չես քաշի։ Կրկնահանցագործները գայլեր են, խորամանկ, չարամիտ։ Չի կարելի կերցնելով իր կողմը հրապուրել նրանց, ովքեր անտառին են նայում։ Այստեղ դեռ երկար պետք կլինեն թակարդները («Լիտերատուրնայա գազետա», 26. XI. 1959 թ.)։

Սովետական հասարակայնությունը մեծ սիրով կարող է ընդառաջ գնալ նրանց, ովքեր ոչ միայն խոսքով, այլև իրենց գործերով պատրաստակամություն են հայտնում ապրել և աշխատել ազնվորեն։ Չարամիտ, անուղղելի մարդկանց բնակավայրը եղել և այնուհետև էլ կլինեն բանտն ու մեկուսարանը։

Բայց այդ մասին չէ, որ պարտիան մեզ այսօր առաջարկում է լուրջ խորհել։ Պարտիան սովետական հասարակությունից պահանջում է անզգա չմնալ նույնիսկ այն դեպքերում, երբ մարդը չարամտորեն սայթաքել և ընկել է։ Չէ՛ որ մարդը մեր հասարակության ամենաթանկարժեք կապիտալն է։ «Սովետական օրինականության և սոցիալիստական համակեցության կանոնների խախտումների դեմ մղվող պայքարում հասարակայնության դերի բարձրացման մասին օրենքի» նախագիծը այսպիսի դեպքերի համար իրավունք է տալիս հետաքննության, նախաքննության կամ դատաքննության պրոցեսում, հասարակական կազմակերպությունների կամ աշխատավորների կոլեկտիվների միջնորդությունների դեպքում կարճել այն անձանց քրեական գործերը, ովքեր գործել են այնպիսի հանցագործություններ, որոնք հասարակական մեծ վտանգ չեն ներկայացնում և ովքեր ազնվորեն զղջացել են։ Իսկ այս գործում որքա՞ն կարևոր է, որպեսզի մեր դատավորները քրեական թղթապանակների ետևում կարողանան տեսնել մարդուն՝ նրա հոգեկան աշխարհի բոլոր բարդություններով ու հակասություններով, կարողանան վստահորեն կողմնորոշվել թե ո՛ւմ չի կարելի պատժել և, ընդհակառակը, ում պետք է հարկադրել, որպեսզի մեկուսացման վայրում քավի իր մեղքերը։

Սովետական դատավորները մեր հասարակության խիղճն են, իսկ մեր ժողովրդին խորթ են թե՛ սենտիմենտալ թողտվության, և թե՛ վրիժառության զգացումները։ Հանցագործության հետքեր հայտաբերելիս պետք չէ փնտրել օբյեկտիվ, մարդուց անկախ պատճառներ։ Այդպիսի օբյեկտիվ պատճառներ մեր իրականությունը չի տալիս։ Բայց եթե հանցագործի մեջ տեսանելի է ազնվորեն աշխատելու կամք և գեղեցիկի մասին երազելու կարողություն,

ապա համարձակորեն, առանց խղճի խայթ զգալու պետք է թույլ տալ նրան վերադառնալու կյանք, որն ունի այնքան պարարտ հող ու ջերմություն թեկուզ և դալուկ ծիլերի առողջ աճի համար։ Իսկ համարձակություն ունենալու համար մեր դատավորներն ավելի մոտ պետք է կանգնեն իրենց ընտրողներին, ամեն մի կոնկրետ գործի առիթով խորհրդակցեն նրանց հետ, առանց գոռոզանալու իմաստնություն քաղեն ժողովրդական բանականության անսպառ ակունքներից։ Ահա թե ինչու օրենքի նախագիծը սովետական դատարաններին պարտավորեցնում է «...անհրաժեշտության դեպքերում, մեղադրվողների աշխատանքի կամ բնակության վայրի աշխատավորներին իրազեկ դարձնել առաջիկա դատական պրոցեսների մասին, ինչպես նաև դատավճիռը օրինական ուժ ստանալուց հետո հաղորդել քրեական գործի արդյունքների մասին։

Լայնորեն պրակտիկա դարձնել դատական պրոցեսները անմիջականորեն ձեռնարկություններում, սովխոզներում, կոլտնտեսություններում անցկացնելը, անհրաժեշտ դեպքերում հասարակական մեղադրողների և հասարակական պաշտպանների մասնակցությամբ» (Օրենքի նախագծի 11-րդ հոդված)։

Իսկ եթե հանցագործությունը կատարված է, և դատական պրոցեսում մարդը ոչ մի հույս չի ներշնչում, թե նա գիտակցել է իր արարքի ծանրությունը, ինչպիսի՞ն պետք է լինի հասարակության վերաբերմունքը, արդյո՞ք պետք է երես թեքել մարդուց, երբ նա արդեն կալանավայրում է։

Ժողովրդի բնածին սերը մարդու նկատմամբ դեռևս շատ դարեր առաջ թելադրել է՝ «ընկածին չեն խփում»։ Հիմա այդ իմաստնությունը հարստանում է սոցիալիստական հումանիզմի մի նոր պահանջով՝ «ընկածին պետք է բարձրացնել»։ Չէ՛ որ մեր հասարակության մեջ չկա սայթաքելու ճակատագրական անխուսափելիություն։ Իսկ եթե ինչ-ինչ պատճառներով մարդը սայթաքել և ընկել է, նշանակում է մենք ինքներս ենք մեղավոր դրանում, ժամանակին չենք նկատել, օգնության ձեռք չենք մեկնել, հետևաբար մենք ինքներս էլ պարտավոր ենք բարձրացնել նրան։ Այս առումով էլ օրենքի նախագիծը մեծ պարտականություններ է դնում աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների գործկոմների հսկող հանձնաժողովների վրա։ Նրանք մեր հասարակության ուշադիր աչքերը և հոգատար ձեռքերը պետք է դառնան ամեն տիպի կալանավայրերում. մի՞թե քիչ բան կարող են տալ կալանավորների հետ սրտաբաց, անկեղծ զրույցները, մեր անվանի մարդկանց հետ նրանց հանդիպումների, արտադրական ուսուցման և հանգստի խելացի կազմակերպումը։

Մարդկանց նկատմամբ հոգատարության մասին ոչ թե միտինգային ճառերի, այլ իսկական կոմունիստական մարդասիրության ինչպիսի՜ հիանալի օրինակներ են տալիս մեր երկրի այն առաջատար ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնք իրենց ուսերի վրա են վերցրել առանձին գաղութների շեֆությունը։ Բայց դա դեռ բոլորը չէ։ Եթե մենք ուզում ենք, որ պատիժը կրելուց հետո մարդը նորից չկանգնի հանցավոր ուղու վրա, ապա ամենայն հետևողականությամբ պետք է հոգ տանենք, որպեսզի նա աշխատանք ունենա, նրա ճանապարհը չփակենք ավելորդ կասկածամտությամբ, օգնենք նրան գտնելու իր իսկական տեղը կոմունիզմ կառուցողների կուռ շարքերում։ Իսկ դրա համար անհրաժեշտ է ոչ թե հախուռն, այլ անհատական մոտեցում։ Չէ՛ որ այնքան էլ դյուրին բան չէ մարդուն օգնելը, երբ չգիտես նրա անձնական



հակումներն ու ընդունակությունները։ Իսկ քանի դեռ մարդը չի գտել իր իսկական տեղը, նա չի կարող լիովին բացահայտել իր ներքին կարողությունները, նա ավելի քիչ օգուտ կբերի, դրանից կտուժի մեր ընդհանուր գործը։

Մեր հասարակության մեջ մի անգամ ճիշտ ճանապարհից շեղված անհատը իր երջանկությունը կարող է գտնել միայն առողջ և ուժեղ աշխատանքային կոլեկտիվում, իսկ այդ երջանկության բանալին՝ նրա նկատմամբ կոլեկտիվի ցուցաբերած անկաշառ օգնությունը և վստահությունը կարող են հրաշքներ գործել։

Գուցե դեռևս գտնվեն մարդիկ, որ ասեն՝ արժե՞ արդյոք այդքան մտահոգվել նրանց մասին, ովքեր երբևէ դիպել են մեր հասարակության արժանապատվությանը, մանավանդ, երբ նրանք աննշան տաշեղներ են մեր կյանքի հորդահոս հունի վրա։ Գուցե գտնվեն... սակայն այդպիսի մարդիկ իրենց կոմունիստ չեն կարող համարել։ Չէ՛ որ մեր կոմունիստական գաղափարախոսության ու գործերի առանցքը մարդն է, իր ուրախություններով ու տրամադրություններով, իր նյութական ու հոգևոր պահանջմունքներով։ Եվ ապագայի հասարակությունը լիակատար կլինի այնքանով, որքանով ընդհանուրի երջանկությունը չի ստվերոտվի որևէ մեկի դժբախտությամբ։ Իսկ այդ մասին մենք պետք է լրջորեն մտահոգվենք այսօր, գալիք կոմունիստական հասարակության շեմին։

Սովետական հասարակությունն ունի բոլոր միջոցներն ու հնարավորությունները այդ մեծ գործին ակտիվորեն ձեռնամուխ լինելու հենց այսօրվանից, բայց որպեսզի այն հաջողությամբ պսակվի, առաջին հերթին նա իր հայացքը պետք է ուղղի դեպի աճող սերունդը, ինչպես ասում են՝ ձուկը պետք է բռնի գլխից։

Սովետական պետությունը իր գոյության նույնիսկ օրհասական պահերին չի մոռացել մանուկներին։ Իսկ հիմա, երբ նա աշխարհի հզորագույն պետությունն է, առատաձեռն հոր նման ոչինչ չի խնայում առույգ ու զվարթ սերունդ աճեցնելու համար։ Կապիտալիստական ոչ մի պետության մեջ չկան այնքան դպրոցներ ու մանկական հաստատություններ, որքան մեր երկրում։ Մայրությունը դեռ երբեք այնպիսի փառքի չի արժանացել, ինչպես մեր երկրում։ Այդ է պատճառը, որ մեզ մոտ փաստորեն վերացվել է երեխաների անապաստանությունը, տարեցտարի նվազում է անչափահասների հանցագործությունը։ Հետևաբար քննարկման համար հրապարակված նոր օրենսգծի նախագիծը վկայում է ոչ թե այն մասին, որ իբր մեզ մոտ սպառնալի չափերի է հասնում անչափահասների անապաստանությունն ու հանցագործությունը, ինչպես այն կցանկանային ներկայացնել բուրժուական շատ մտածողներ, այլ նպատակ ունի այդ գործում ևս վճռական տեղ տալ Սովետական հասարակությանը։

Օրենքի նախագիծը ենթադրում է տեղական բոլոր Սովետների գործկոմներին կից ստեղծել անչափահասների գործերի հանձնաժողովներ, որոնք կկազմվեն դեպուտատներից և հասարակական կազմակերպությունների ամենատարբեր տարիքի ու զբաղմունքի ներկայացուցիչներից։ Նրանց կտրվեն լայն լիազորություններ ինչպես անչափահասների անխնամության և իրավախախտումների դեմ մղվող պայքարի միջոցառումներ իրագործելու համար, այնպես էլ այդ իրավախախտումների կանխման աշխատանքը կազմակերպելու համար։ Անչափահասների գործերով հանձնաժողովներին նույնիսկ իրա-

վունք է վերապահված դատարանի առաջ միջնորդություն հարուցել՝ ծնողներին իրենց ծնողական իրավունքներից զրկելու մասին, եթե պարզվի, որ նրանք ի չարն են գործ դնում այդ իրավունքները, կամ չարամտորեն խուսափում են երեխաների դաստիարակության պարտականությունների կատարումից։

Երեխաները մեր գեղեցկությունը, մեր կյանքի ծաղիկներն են։ Մեր պարտիայի և կառավարության պատվիրանն է՝ ոչ մի ծաղիկ առանց լույսի ու խնամքի մի՛ թողեք։ Անխնա՛ ոչնչացրե՛ք նրանց աճը խանգարող մոլախոտերը։ Եթե ծաղիկներն աճում են անփորձ ծաղկապանի պարտեզում, համբերատարությամբ օգնեցեք նրան տիրապետելու մշակության արվեստը։ Եթե ծաղիկները տրորվում ու գետնին են հավասարեցվում անխիղճ ու անազնիվ մարդկանց կողմից, զրկեցե՛ք նրանց ծաղկապան լինելու պատվավոր ու այնքան հաճելի իրավունքից։ Չէ՞ որ այդ ծաղիկները մերն են, ամբողջ հասարակությանը, և նրանցից պետք է հյուսվի մեր գալիք փառքի պսակը։

Վլադիմիր Իլյիչ Լենինը ուսուցանում էր. իշխանության կազմակերպման դեմոկրատական սկզբունքը նշանակում է, որ ամեն մի քաղաքացի պետք է դրվի այնպիսի պայմաններում, որպեսզի նա կարողանա մասնակցել և՛ պետության օրենքների քննարկմանը, և՛ իր ներկայացուցիչների ընտրությանը, և՛ պետական օրենքները կյանքում իրականացնելու գործին։ Սովետական իրականությունը տալիս է համաժողովրդական, լենինյան դեմոկրատիայի մարմնավորման անսպառ օրինակներ։ Բայց դեմոկրատիան երբեք էլ ինքնանպատակ չի եղել։ Սոցիալիստական դեմոկրատիան մեր զենքն է կոմունիզմի կառուցման թե՛ մեծ և թե՛ փոքր գործերում։ Եվ որքան ծավալվի, որքան ավելի աշխատավորների հոծ զանգվածներ ընդգրկի սոցիալիստական դեմոկրատիան իր ոլորտի մեջ, այնքան ավելի անվրեպ ու հատու կդառնա այդ զենքը։ Սոցիալիստական դեմոկրատիան շատ բարձունքներ է գրավել և այսուհետև էլ կգրավի, որովհետև այն իմաստավորում և նրան ուղղություն է տալիս կոմունիստների մեծագործ պարտիան՝ մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը։

Սոցիալիստական դեմոկրատիայի ուժն ու վեհությունը հենց նրանումն է, որ նա ծառայում է աշխատավոր մարդուն, նրա բարօրությանն ու երջանկությանը։ Եվ մի՞թե օրինաչափական չէ, որ հանուն նոր մարդու, ապագայի մարդու պայքարը ծավալվում ու նոր թափով է բռնկվում սոցիալիստական դեմոկրատիայի դրոշի ներքո։ Այդ պայքարն ամենահումանիստականն է մարդկության ողջ պատմության մեջ, այն չի կարող չհաղթանակել, այն պետք է հաղթանակ տանի և անպայման կհաղթանակի։

---

# ՄԵՐ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԸ

Լ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ

Երևանի Պետական համալսարանը մեր ռեսպուբլիկայի խոշորագույն բարձրագույն ուսումնական հաստատությունն է, որը կադրեր է պատրաստում երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի համարյա բոլոր բնագավառների համար։ Միևնույն ժամանակ, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայից հետո Երևանի Պետական համալսարանը խոշորագույն գիտա-հետազոտական հաստատությունն է Հայաստանում։

Ընդամենը 18 օր էր անցել Հայաստանում սովետական կարգեր հաստատելուց, երբ Սովետական կառավարության որոշմամբ Երևանում հիմնադրվեց ռեսպուբլիկայի առաջին բարձրագույն ուսումնական հաստատությունը՝ Երևանի Ժողովրդական համալսարանը։ Դժվար է գերագնահատել Երևանի համալսարանի հիմնադրման նշանակությունը։ Այն պայմաններում, երբ Հայաստանը տնտեսապես քայքայվել էր պատերազմի ու դաշնակների տիրահոչակ տիրապետության հետևանքով, և Սովետական իշխանությունը մեր երկրի տնտեսությունը կառուցում էր համարյա անապատում, համալսարանի հիմնադրումը կուլտուրայի և ժողովրդական կրթության նկատմամբ Սովետական պետության անսահման հոգատարության, կոմունիստական պարտիայի լենինյան ազգային իմաստուն քաղաքականության ամենավառ արտահայտությունն էր։

Իր գոյության շուրջ 40 տարիների ընթացքում Երևանի Պետական համալսարանի հիմնական խնդիրն է եղել՝ ապահովել ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և կուլտուրայի հիմնական բնագավառները բարձրորակ մասնագետ կադրերով։ Իր բացման ժամանակ համալսարանն ուներ երկու ֆակուլտետ՝ հասարակագիտական և բնագիտական։ Արտադրողական ուժերի և կուլտուրայի մակարդակի արագ զարգացումը հնարավորություն ընձեռեց 1921 թվականի հոկտեմբերին արդեն ունենալ բնագիտական (որը շուտով վերածվեց գյուղատնտեսականի), տեխնիկական, արևելագիտական (որը շուտով դարձավ պատմագրական), խորհրդային շինարարության, մանկավարժական ֆակուլտետներ։ Մի քանի ամիս անց (1922 թ. մարտին) բժշկական դպրոցի բազայի վրա Երևանի համալսարանին կից կազմակերպվեց մի նոր ֆակուլտետ ևս՝ բժշկականը։

Երևանի համալսարանի գոյության առաջին շրջանում՝ մինչև 20-ական թվականների վերջը, ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության և կուլտուրական շինարարության պահանջներին համապատասխան, համալսարանի ֆակուլտետները որոշ փոփոխություններ կրեցին։ Այսպես, մինչև 1930 թվականը համալսարանում կային նաև սոցիալ-տնտեսագիտական-իրավաբանական (իրավատնտեսագիտական) ֆակուլտետ, մանկավարժական ֆակուլտետ

(պատմական, ֆիզիկա-մաթեմատիկական և կենսաբանական բաժիններով)։

Սակայն 30-ական թվականների հենց սկզբներից համալսարանի ֆակուլտետներն այնքան կենսունակ էին, որ նրանց բազայի վրա հնարավոր դարձավ բացել առանձին ինստիտուտներ։ 1930 թվականին համալսարանից, որպես ինքնուրույն ինստիտուտներ, անջատվեցին բժշկական և գյուղատնտեսական ֆակուլտետները։ Միևնույն ժամանակ համալսարանի տեխնիկական ֆակուլտետի բազայի վրա կազմակերպվեց Պոլիտեխնիկական ինստիտուտը, իսկ սոցիալ-տնտեսագիտական-իրավական ֆակուլտետի բազայի վրա՝ Կոոպերատիվ-տնտեսագիտական ինստիտուտը։

Համալսարանի կազմում 30-ական թվականների սկզբում գործում էր հինգ ֆակուլտետ՝ տարբեր բաժիններով, որոնք մեր ռեսպուբլիկայի համար կադրեր էին պատրաստում պլանային, ֆինանսական, առևտրի, աշխարհագրության, սովետական շինարարության, վիճակագրության, պատմության, գրականության, լեզվաբանության, կենսաբանության, ֆիզիկայի, մաթեմատիկայի, մանկավարժության, 1935 թվականից՝ իրավաբանության, իսկ 1944 թվականից՝ նաև երկրաբանության գծով։ 1945 թվականից մինչև 1952 թվականը համալսարանն ուներ նաև միջազգային հարաբերությունների ֆակուլտետ։

Այժմ Երևանի Պետական համալսարանը մեր ռեսպուբլիկայի ամենամեծ ուսումնական հաստատությունն է՝ 12 ֆակուլտետով, բազմաթիվ մասնագիտացումներով ու 56 ամբիոններով։ Երևանի համալսարանում ներկայումս գործում են ֆիզիկայի, մեխանիկա-մաթեմատիկական, կենսաբանական, պատմության, տնտեսագիտական, իրավաբանական, հայկական բանասիրական, ռուսական ֆիլոլոգիական, օտար լեզուների, քիմիական, երկրաբանական և աշխարհագրական ֆակուլտետները։

Նախկին երկու ֆակուլտետի փոխարեն 12-ը՝ տարբեր մասնագիտություններով և ինքնուրույն ինստիտուտներ՝ ահա թե ինչ ուղի է անցել Երևանի համալսարանն իր գործունեության մոտ 4 տասնամյակների ընթացքում։ Այդ ժամանակամիջոցում Երևանի համալսարանը երկրին տվել է 9394 երիտասարդ մասնագետ, որից՝ 920 ֆիզիկոսներ ու մաթեմատիկոսներ, 717 քիմիկոսներ, 761 պատմաբաններ, 2235 բանասերներ ու լեզվագետներ, 813 իրավաբաններ, 1404 տնտեսագետներ, 780 կենսաբաններ, 480 աշխարհագրագետներ, 688 երկրաբաններ, 133 միջազգայնագետ-պատմաբաններ, 137 բժիշկներ (նկատի չունենք ինստիտուտների շրջանավարտները), 279 գյուղատնտեսներ, 47 ինժեներ-ճարտարապետներ։ Այդ մասնագետներն ակտիվորեն մասնակցում են սոցիալիստական շինարարությանը ինչպես մեր ռեսպուբլիկայում, այնպես էլ նրա սահմաններից դուրս։ Համալսարանի շրջանավարտների թվում են այնպիսի նշանավոր գիտնականներ, ինչպիսիք են՝ ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից անդամներ, ֆիզիոլոգ Է. Հասրաթյանը, մաթեմատիկոս Ս. Մերգելյանը, Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի ակադեմիկոսներ, մաթեմատիկոսներ՝ Ա. Շահինյանը, Մ. Ջրբաշյանը, պատմաբաններ՝ Մ. Ներսիսյանը, Ա. Հովհաննիսյանը, համալսարանի ռեկտոր, ագրո-քիմիկոս Գ. Դավթյանը, բիոքիմիկոս Հ. Բունիաթյանը, ագրոտեխնիկայի մասնագետ Գ. Աղաջանյանը, գենետիկայի մասնագետ Վ. Գուլքանյանը և ուրիշներ։ 406 գիտական աշխատողներ իրենց թեկնածու-



կան, իսկ 22-ը դոկտորական դիսերտացիաները պաշտպանել են մեր համալսարանում։

Համալսարանում այժմ սովորում են մոտ 4500 ուսանող, այդ թվում՝ 14 ազգությունների ներկայացուցիչներ՝ հայեր, ռուսներ, ուկրաինացիներ, բելոռուսներ, վրացիներ, ադրբեջանցիներ, կարելո-ֆիններ, քրդեր և այլն։ Համալսարանում դասավանդում են 400-ից ավելի բարձրորակ դասախոսներ, այդ թվում՝ Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի 17 անդամներ և թղթակից-անդամներ, 49 գիտության դոկտորներ և պրոֆեսորներ, 213 գիտության թեկնածուներ և դոցենտներ։ Համալսարանի դասախոսներից 253-ը համալսարանի սաներն են։

Համալսարանի և համալսարանական կրթության նկատմամբ Սովետական կառավարության ու Կոմունիստական պարտիայի մշտական հոգատարության վկայությունն է համալսարանի բյուջեի վերընթաց աճը։ Եթե 1923 թվականին Երևանի համալսարանի բյուջեն կազմում էր 49.216 ռ., ապա 1959 թվականին այն կազմում է 28.231.500 ռ.։ Մյուս կողմից, եթե մի ուսանողի վրա կատարված ծախսերը 1933 թվականին կազմում էին 3607 ռ., ապա 1958 թվականին կազմել են 8655 ռ.։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ 1953 թվականից սկսվել է Երևանի համալսարանի ուսումնական կորպուսների շինարարությունը՝ 40 միլիոն ռուբլու արժողությամբ։ Այժմ արդեն այդ կոմպլեքսից շահագործման է հանձնված 3 խոշոր կորպուս։

Պատվով կատարելով ՍՍՌՄ և ՀՍՍՌ Գերագույն Սովետների կողմից՝ կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու վերաբերյալ օրենքը, համալսարանի ղեկավարությունը ուսման պրոցեսը վերակառուցում է նոր խնդիրների համապատասխան։ Ամենից առաջ գիտության ու տեխնիկայի առաջատար, նոր զարգացող ճյուղերին բարձրորակ մասնագետներ տալու համար համալսարանի մի շարք ֆակուլտետներում պատրաստվում են նոր մասնագետներ՝ ինչպես, օրինակ, գազա-տուրբինային սարքավորումների, պոլիմերների ֆիզիկայի, պոլիմերների քիմիայի, հազվագյուտ ու ցրված մետաղների քիմիայի, մեքենայական հաշվառման գծով և այլն։ 1958—1959 ուսումնական տարում նախկին ֆիզիկա-մաթեմատիկական ֆակուլտետը վեր է ածվել երկու ինքնուրույն ֆակուլտետների՝ ֆիզիկայի և մեխանիկո-մաթեմատիկականի։

Համալսարանի գիտական խորհուրդներն արդեն վերանայել և ՍՍՌՄ Բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը հաստատել է բոլոր մասնագիտությունների գծով նոր ուսումնական ծրագրերն ու պլանները։ Նոր ծրագրերը համապատասխանում են կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու մասին օրենքի պահանջներին։ Նրանց իրականացումը, անշուշտ, կնպաստի որակյալ, իրոք պրակտիկ հմտություններով զինված կադրերի պատրաստմանը։

Այժմ գործող պլաններում մեծ չափով ավելացել են ուսումնական, մանկավարժական և, հատկապես, արտադրական պրակտիկային հատկացվող ժամերը։ Երկրաբանական ֆակուլտետում, օրինակ, նախկին ուսումնական պլաններով պրակտիկային հատկացված էր 23 շաբաթ, իսկ նոր պլաններով՝ 64 շաբաթ։ Կենսաբանական ֆակուլտետում արտադրական պրակտիկան ավելացել է 17 շաբաթով, իսկ երրորդ կուրսում մտցվել է բոլորովին նոր պրակտիկա՝ գյուղատնտեսության հիմունքներ առարկայից, որն ուսանողները կանցկացնեն կոլտնտեսություններում, սովխոզներում և ուսումնա-փորձնական տնտե-

սություններում։ Արտադրական պրակտիկային հատկացվող ժամերը 5000-ով ավելացել են։

Նոր պլանների համաձայն՝ տնտեսագիտական, պատմության, հայկական և ռուսական բանասիրական ֆակուլտետների առաջին կուրսերն ընդունված այն ուսանողները, որոնք երկու տարուց պակաս աշխատանքային ստաժ ունեն, առաջին տարում պետք է ցերեկներն աշխատեն արտադրության մեջ, իսկ դասի գան երեկոյան։ Սակայն պետք է նկատել, որ այս գործը մեզ մոտ, բացի տնտեսագիտական ֆակուլտետից, վատ կազմակերպվեց։

Համալսարանի ֆակուլտետների մեծ մասի համար նոր ուսումնական պլաններում պրակտիկ ժամերի ավելացման հետ միասին, երրորդ կուրսից սկսած, նախատեսվում է ուսուցումն իրագործել երկու հիմնական ուղղությամբ։ Ֆակուլտետների և բաժինների մի մասը մասնագետներ է պատրաստելու գիտական ու արտադրական օբյեկտներում աշխատելու համար, իսկ մյուս մասը՝ մանկավարժներ։ Առաջին դեպքում ուսումը տևելու է հինգ ու կես, իսկ երկրորդ դեպքում՝ հինգ տարի։

Նոր օրենքին համապատասխան այս տարի համալսարանում զգալիորեն ընդլայնվել է հեռակա և երեկոյան ուսուցման ցանցը։ Երեկոյան բաժիններ են բացվել մի շարք ֆակուլտետներում։ Այժմ երեկոյան բաժիններում սովորում են 763, հեռակա բաժիններում՝ 610 ուսանող։ Մեր պարտիան հատուկ ուշադրություն է հատկացնում երեկոյան և հեռակա ուսուցմանը, որը աշխատող երիտասարդությանը հնարավորություն է տալիս բարձրագույն կրթություն ստանալու, չդադարելով նյութական բարիքների արտադրության պրոցեսին մասնակցելուց։ Համալսարանի ռեկտորատի, պարտիական կազմակերպության, ողջ դասախոսական կոլեկտիվի առաջնահերթ խնդիրներից մեկն է՝ ուժեղացնել ուսման դրվածքը երեկոյան և հեռակա բաժիններում։

Դպրոցը կյանքի հետ սերտորեն կապելու օրենքը հատուկ արտոնություններ է վերապահում արտադրության մեջ աշխատած, կյանքի փորձ ունեցող երիտասարդներին։ Համալսարանի ռեկտորատը, պարտիական կոմիտեն աշխատել են ապահովել մեր պարտիայի այդ պահանջի կատարումը այս ուսումնական տարվա ընդունելության քննությունների ժամանակ։ Դրա շնորհիվ համալսարանի ուսանողության սոցիալական կազմը զգալի չափով բարելավվել է։ Այս տարի առաջին կուրս ընդունվածների մեջ կան 175 բանվոր և 45 կոլտնտեսական, իսկ 475 ուսանող՝ բանվորների և կոլտնտեսականների երեխաներ են։

Մեծ է համալսարանի դասախոս-գիտնականների դերն արդի գիտության պրոբլեմների մշակման գործում։ Վերջին շրջանում համալսարանի գիտնականների ուշադրությունը բևեռված է եղել հետևյալ կարևորագույն թեմաների վրա. Հայկական ՍՍՌ միկոֆլորայի ուսումնասիրությունը, խոնացող սիստեմների բաղադրիչների և բնույթի ազդեցությունը պոլիմերիզացիայի, կինետիկայի և կազմավորվող պոլիմերների կառուցվածքի ու հատկությունների վրա, էլեկտրոնային ֆոտոնային մեծ հոսքերի ուսումնասիրությունը, էլեկտրոնային արագահաշվիչ ունիվերսալ մաթեմատիկական մեքենայի նախագծումն ու պատրաստումը, լեռնային շրջանների պայմաններում բանջարանոցային կուլտուրաների նոր սորտերի ստացումը, թամբակենու ցեցի դեմ պայքարելու էֆեկտիվ միջոցներ գտնելու փորձերը, օքսի-օքսալակտոնների սինթեզի հետազոտությունը և այլն։ Լուրջ գիտական ուսումնասիրություններ են կատարվում ֆունկցիաների տեսության, մեխանիկայի, երկրաբանության, բանասիրության և այլ գիտությունների գծով։



Որոշակի աշխատանք է տարվում ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությանը ցույց տրվող գիտական ու պրակտիկ օգնությունն ուժեղացնելու գործում։ Համալսարանի պարտիական կոմիտեի ու ռեկտորատի նախաձեռնությամբ վերջերս տեղի ունեցավ համալսարանի գիտական աշխատողների ու ռեսպուբլիկայի ժողտնտխորհի աշխատողների համատեղ խորհրդակցություն, որտեղ լայնորեն քննարկվեցին երկու հիմնարկների համար փոխադարձաբար կարևոր նշանակություն ունեցող գիտական հետազոտությունները ծավալելու և դրանց՝ ժողտնտխորհի կողմից ցույց տրվող օգնության հարցը։ Ժողտնտխորհը համալսարանի գիտնականներին առաջադրել է արտադրության համար լուրջ հետաքրքրություն ներկայացնող բազմաթիվ թեմաներ։ Ամբիոններն արդեն քննարկել և որոշել են իրենց թեմաները, որոնց ժամանակին և որակով կատարումը մեծ օգնություն կլինի արտադրությանը։

Համալսարանում գիտա-հետազոտական աշխատանքի կարևոր կողմերից մեկն էլ մայրենի լեզվով բարձրորակ դասագրքերի և դասախոսությունների հրատարակումն է։ Այս ուղղությամբ վերջերս կատարվել է դրական աշխատանք։ Միայն վերջին տարվա ընթացքում համալսարանի հրատարակությամբ լույս են տեսել հայ ժողովրդի պատմության բուհական դասագրքի երեք պրակները, տնտեսական հաշվումների տեխնիկայի, հողերի դաշտային հետազոտությունների ձեռնարկները, 8 դասախոսություն ՍՄԿՊ պատմության ամբիոնի, 3 դասախոսություն փիլիսոփայության ամբիոնի գծով և այլն։ Սակայն այս ուղղությամբ կատարված աշխատանքը դեռևս բավարար չի կարելի համարել։ Համալսարանի ամբիոնները և գիտական խորհուրդները հատուկ ուշադրություն պետք է նվիրեն մի շարք առարկաների գծով թարգմանական և ինքնուրույն դասագրքեր ու ձեռնարկներ հրատարակելուն։ Դա վերաբերում է ո՛չ միայն վերջերս ձևավորված գիտություններին՝ պոլիմերների քիմիա և ֆիզիկա, հաշվողական մաթեմատիկա, կիսահաղորդիչների տեսություն և այլն, այլև, ոչ պակաս չափով, արդեն վաղուց հայտնի և տասնյակ տարիներ ավանդվող առարկաներին՝ ընդհանուր պատմություն, օրգանական քիմիա, ժողովրդական տնտեսության պատմություն և այլն։

Համալսարանի գիտնականների աշխատությունների հրատարակման գործում լուրջ դեր է խաղում համալսարանի հրատարակությունը, որն ունի իր սեփական տպարանը։ Վերջինս կազմակերպվել է 1937 թվականին։ Պետք է նշել, որ համալսարանի հրատարակչությունը դեռևս լիովին չի կարողանում կատարել իր առջև դրված խնդիրները։ Այն, ըստ երևույթին, առաջին անգամ, վերջին հինգ տարիների ընթացքում տվյալներ ունի կատարելու տարեկան հրատարակչական պլանը։

1933 թվականից համալսարանում հրատարակվում է բազմատիրաժ թերթ (այժմ այն կոչվում է «Երևանի համալսարան»)։ Մեծ է թերթի դերը որպես կոլեկտիվ ագիտատորի և կոլեկտիվ կազմակերպչի։ Սակայն «Երևանի համալսարանը» չի բավարարում դեռևս նրա նկատմամբ առաջադրվող բարձր պահանջները։ Թերթի ամենամեծ թերությունն այն է, որ նա երբեմն տեսնում ու գրում է մանրուքների մասին, սակայն նրա ուշադրությունից հաճախ վրիպում են համալսարանի կյանքում տեղ գտնող խոշոր երևույթները, ուսում-

նական պրոցեսի, գիտա-հետազոտական աշխատանքի առանձքային հարցերն ու նրանց հետ կապված թերությունները։

Երևանի համալսարանը գիտական և ուսումնա-մեթոդական սերտ կապ է պահպանում մեր մեծ Հայրենիքի այլ համալսարանների, մասնավորապես, Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի, Խարկովի, Տարտուի, Թբիլիսիի, Բաքվի համալսարանների հետ։ Թբիլիսիի և Բաքվի համալսարանների հետ Երևանի համալսարանը կազմակերպել է համատեղ գիտական սեսիաներ։ Նրա դասախոսները դասախոսություններով հանդես են եկել Մոսկվայի, Թբիլիսիի, Բաքվի համալսարաններում։ Միևնույն ժամանակ երկրի տարբեր համալսարանների գիտնականներ դասախոսություններ են կարդացել Երևանի համալսարանի ուսանողների համար։

Տարեցտարի ընդլայնվում են Երևանի համալսարանի գիտնականների միջազգային կապերը։ Մի շարք դասախոսներ զեկուցումներով հանդես են եկել միջազգային կոնգրեսներում՝ ԱՄՆ-ում, Անգլիայում, Չինաստանում, Իտալիայում և այլ երկրներում։

Մեր գիտնականների որոշ աշխատություններ հրատարակվել են Մոսկվայում և վերահրատարակվել արտասահմանյան մի շարք երկրներում։ Երևանի համալսարանում դասախոսություններով հանդես են եկել արտասահմանյան երկրների շատ գիտնականներ։

Համալսարանական կրթության կազմակերպման գործում զգալի դեր ունի կատարելու համալսարանի գիտական գրադարանը, որը 600.000 գիրք ունի, այդ թվում 5000 հազվագյուտ գիրք։ Համալսարանը գրքեր է փոխանակում արտասահմանյան 20 երկրների գրադարանների հետ, այդ թվում ժողովրդադեմոկրատական բոլոր երկրների գրադարանների հետ։

Մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանում հայ պատանիներն ու աղջիկները (իհարկե, ունևոր մարդկանց երեխաները) մեկնում էին Եվրոպայի և Ամերիկայի տարբեր երկրները՝ բարձրագույն կրթություն ստանալու։ Այժմ Երևանի համալսարանում մայրենի լեզվով սովորում է ո՛չ միայն Սովետական Հայաստանի երիտասարդությունը, այլև շատ հայ ուսանողներ՝ Արաբական Միացյալ Ռեսպուբլիկայից, Լիբանանից, Իրաքից, Իրանից և այլ երկրներից։

Համալսարանի աշխատանքների բոլոր բնագավառներում կարևոր դեր է խաղում համալսարանի պարտիական կազմակերպությունը։ Հայտաբերելով եղած թերություններն ու սխալները, համալսարանի պարտիական կոլեկտիվը, պարտիական կոմիտեն, ամեն ջանք գործադրում են իրենց պրակտիկ աշխատանքում ուղղելու դրանք։ Համալսարանի կոլեկտիվը՝ ողջ ուսանողությունն ու պրոֆեսորա-դասախոսական կազմը ջերմ խանդավառությամբ են արձագանքում Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության բոլոր միջոցառումներին և ակտիվ մասնակցությամբ ամեն կերպ նպաստում են այդ միջոցառումների կենսագործմանը։

Համալսարանի պարտիական կազմակերպությունը և նրա կոմիտեն առանձնակի ուշադրություն են հատկացնում պարտիական լուսավորության, հասարակագիտական առարկաների դասավանդման, ուսանողության կոմունիստական դաստիարակության հարցերին։ Պարտիական կոմիտեի և բյուրոների խնդիրն է՝ այսուհետև ևս ուշադրության կենտրոնում պահել կոմունիստների քաղաքական ուսուցման գործը, միջոցներ ձեռնարկել այդ բնագավառում տեղ գտած թերությունները ժամանակին վերացնելու համար։



Նրանք պետք է ղեկավարվեն «Արդի պայմաններում պարտիական պրոպագանդայի խնդիրների մասին» ՍՄԿՊ Կենտկոմի 1960 թ. հունվարի 9-ի որոշումով, որի մեջ տրված է պարտիայի իդեոլոգիական աշխատանքի լայն ու պարզ ծրագիրը, սահմանված է նրա բովանդակությունը, ձևերն ու մեթոդները, ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակության ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։

Իդեոլոգիական աշխատանքների կարևոր օղակներից մեկը հասարակագիտական առարկաների բարձր որակով դասավանդումն է, այն ռեալ միջոցը, որն անմիջականորեն նպաստում է ուսանողների կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը։ Համալսարանի ուսանողության ճնշող մեծամասնությունը հետաքրքրությամբ է ուսումնասիրում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, ՍՄԿՊ համագումարների ու Կենտկոմի պլենումների բանաձևերը։

Սակայն մեր հասարակագիտական ամբիոնների՝ ուսանողների հետ տարվող աշխատանքը դեռևս չի բավարարում այժմյան պահանջներին։ Դեռ ոչ բոլոր ուսանողներն են անհրաժեշտ խորությամբ ուսումնասիրում ՍՄԿՊ պատմությունը, քաղաքատնտեսությունը, փիլիսոփայությունը։ Ուսման պրոցեսը դեռևս սերտորեն չի կապակցվում ուսանողների կոմունիստական դաստիարակության հետ։ Հասարակագիտական ամբիոնների որոշ դասախոսներ ուշադրություն չեն դարձնում այն բանի վրա, որ որոշ ուսանողներ ցիտատներն անգիր անելուց այն կողմ չեն անցնում։

Ամառային արձակուրդների ժամանակ համալսարանի ուսանողները մասնակցում են քաղաքի որոշ օբյեկտների շինարարությանը։ Անցյալ տարի մեծ եռանդով նրանք օգնեցին համալսարանի ուսումնական ու բնակելի շենքերի շինարարության, գազամուղի, երրորդ ջրատարի, փողոցների բարեկարգման ու կանաչապատման աշխատանքներին։ Այդ վկայում է, որ անհամեմատ բարձրացել է ուսանողների ակտիվությունն ու գիտակցականությունը։ Դա միաժամանակ խոսում է ուսանողության աշխատանքային դաստիարակության գործում մեր ձեռք բերած որոշ հաջողությունների մասին։

Այսօրվա համալսարանը բոլորովին նման չէ երեկվա համալսարանին։ Էլ ավելի վառ է նրա ապագան։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ոչ մի ջանք չեն խնայում բարձրագույն կրթության գործն ավելի ու ավելի լավ հիմքերի վրա դնելու համար։

Համալսարանում տարեցտարի ընդարձակվելու է գիշերային և հեռակա ուսուցման ցանցը։ Այս ուղղությամբ ռեկտորատն ու պարտիական կոմիտեն շատ անելիքներ ունեն։ Դեռևս համալսարանում արմատախիլ արված չէ այն սխալ պատկերացումը, ըստ որի երեկոյան և հեռակա բաժինները համարվում են ստացիոնար ուսման կցորդը։ Այդ մասին է խոսում այն փաստը, որ համալսարանի 48 դոկտոր-պրոֆեսորներից միայն երկուսն են դասավանդում երեկոյան բաժնում։ Ժամանակն է, որպեսզի համալսարանի բոլոր օղակները՝ ամբիոնները, դեկանատները, ռեկտորատի բաժինները, բոլոր դասախոսները, ֆակուլտետների պարտիական կազմակերպություններն ու պարտիական կոմիտեն երեկոյան և հեռակա ուսուցման հաջող կազմակերպման համարեն իրենց առաջնահերթ պարտականությունը։

Տարեցտարի ո՛չ միայն ավելանալու է համալսարանի ուսանողների թիվը՝ հատկապես երեկոյան և հեռակա ուսուցման գծով, այլև գոյություն ունեցող ֆակուլտետներին կից բացվելու են նոր բաժիններ։ Այսպես, օրինակ, նախատեսված է համալսարանում կազմակերպել կիսահաղորդիչների ֆիզիկայի գծով մասնագիտացումը։

Նոր մասնագիտությունների ստեղծման առնչությամբ ռեկտորատի, պարտիական կոմիտեի և գիտական խորհուրդների առջև կանգնում են նոր, անհետաձգելի խնդիրներ։ Անհրաժեշտ է համալսարանում դասախոսական աշխատանքի հրավիրել մեր ռեսպուբլիկայի, ինչպես և Միության այլ գիտական կենտրոններում աշխատող լավագույն մասնագետների։ Ասպիրանտուրայի և երկարատև գիտական գործուղումների միջոցով պետք է պատրաստել նոր երիտասարդ մասնագետներ։ Հարկավոր է ընդլայնել ուսումնա-տեխնիկական բազան, սերտ կապ ստեղծել համապատասխան գիտական ու արտադրական հիմնարկների հետ։

Գիտության և տեխնիկայի հետագա զարգացման մի շարք կարևոր պրոբլեմների լուծման անհրաժեշտությունը, ժողովրդական տնտեսության և ռեսպուբլիկայի գիտա-հետազոտական հիմնարկների համար բարձրորակ կադրերի պատրաստման գործի վճռական բարելավումը վաղուց ի վեր հրամայական պահանջ էին դրել՝ արմատապես վերակառուցելու գիտա-հետազոտական աշխատանքի դրվածքը համալսարանում։ Բանն այն է, որ համալսարանը գրեթե զուրկ է եղել մի շարք գիտությունների գծով գիտության զարգացման արդի մակարդակին համապատասխան լուրջ հետազոտություններ կատարելու հնարավորությունից. համարյա չկային նորագույն սարքավորումներով կահավորված գիտա-հետազոտական աշխատանքի կայուն բջիջներ՝ իրենց գիտատեխնիկական աշխատողների կայուն հաստիքներով։ Այդպիսի բազայի ստեղծումը մեզանում սկսվեց 1956 թվականից, երբ գիտա-հետազոտական աշխատողների 5 հաստիք ստացվեց կոսմիկական ճառագայթների լաբորատորիայի գծով։ Այսօր, երբ ձևավորվել են գիտության բազմաթիվ նոր ուղղություններ (կիբերնետիկա, կիսահաղորդիչների ֆիզիկա, պոլիմերների քիմիա և ֆիզիկա, միջուկային ֆիզիկա և այլն) այդ հարցի լուծումը դարձել է անհետաձգելի խնդիր։ Սակայն դա սոսկ օրվա հարց չէ։ Այն վերաբերում է, հատկապես, համալսարանի ապագային, նրա հեռանկարներին։ Դրանից է մեծապես կախված համալսարանի ժամանակակից գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումներին համապատասխան բարձրորակ կադրերի պատրաստման դարբնոց և գիտության մի շարք ճյուղերի հետագա զարգացման կարևորագույն օջախներից մեկը դառնալը։

1959 թվականի ընթացքում ռեկտորատի և պարտիական կոմիտեի ջանքերի շնորհիվ զգալիորեն ընդարձակվել են մի շարք գիտությունների գծով էքսպերիմենտալ հետազոտությունների բազան և հնարավորությունները։ ՀԿՊ Կենտկոմի ցուցումով, Հայաստանի կառավարության հատուկ որոշմամբ վերջերս համալսարանում ստեղծվեց գիտա-հետազոտական սեկտոր, որն այժմ իսկ միավորում է մեր նորաստեղծ մի շարք գիտա-հետազոտական լաբորատորիաները 113,5 հաստիքային միավորներով՝ մինչև այժմ ունեցած 5 միավորի դիմաց։ Գիտա-հետազոտական սեկտորի մեջ մտնում են հետևյալ լաբորատորիաները՝ պոլիմերների ֆիզիկա-քիմիայի պրոբլեմային լաբորատորիան, էլեկտրոնային հաշվիչ և ղեկավարող մեքենաների, միջուկային ֆիզիկայի, կիսահաղորդիչների ֆիզիկայի պրոբլեմային լաբորատորիաները, կրիմինալիստիկայի գիտա-հետազոտական լաբորատորիան, կինո-ֆոտո լաբորատորիան և երկրի արհեստական արբանյակների դիտման կայանը։

Գիտա-հետազոտական սեկտորի ստեղծումը համալսարանի կյանքում աննախընթաց, խոշոր իրադարձություն է։ Բայց սա միայն գործի սկիզբն է։ Պարտիայի և կառավարության այս մեծ հոգատարությունը նոր խնդիրներ է առաջ քաշում և նոր մեծ պարտականություններ դնում մեր կոլեկտիվի վրա։ Ամենից առաջ անհրաժեշտ է նորաստեղծ գիտա-հետազոտական հիմնարկները կոմպլեկտավորել բարձրորակ, աճող, հեռանկարներ ունեցող գիտական աշխատողներով։ Պետք է հանգամանորեն մշակել նրանց թեմատիկան, այն հաշվով, որ նրանք իրենց հետազոտություններով կանգնած լինեն ժամանակակից գիտության առաջին գծի վրա. պարտիական կոմիտեն և համապատասխան ֆակուլտետների սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է մշտապես իրենց ուշադրության կենտրոնում պահեն այդ հիմնարկների գործունեությունը, օգնեն նրանց՝ ժամանակին կատարելու առաջադրված խնդիրները և ստացված արդյունքները ներդնելու ժողովրդական տնտեսության մեջ։

Մեր ռեսպուբլիկայի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունն ու ինտելիգենցիան այս տարի նշելու են Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-ամյակը, հանրագումարի են բերելու Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռք բերված նվաճումներն ու հաղթանակները ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի բոլոր բնագավառներում. Երևանի Պետական համալսարանը, որպես Սովետական իշխանության ծնունդ և նրա հասակակիցը, ուսումնական ու գիտա-հետազոտական աշխատանքների բնագավառում ձեռք բերած լուրջ հաջողություններով է ընթանում դեպի հայ ժողովրդի ազգային մեծ տոնը՝ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 40-ամյակը։

Երևանի համալսարանի պարտիական կազմակերպությունը, ողջ կոլեկտիվը ոչ մի ջանք չեն խնայի, որպեսզի պատվով կատարեն Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից համալսարանի առջև դրված խնդիրները։

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԻՆԴՈՒՍՏՐԱՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Գ. ԿԱՆԵՑՅԱՆ

Վաստակավոր շինարար

*ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ «ՍՍՌՄ-ի բնակարանային շինարարության զարգացման մասին» 1957 թվականի հուլիսի 31-ի որոշման մեջ նշված է՝ մոտակա 10—12 տարիներում մեր երկրում վերացնել բնակարանային պակասը։ Այդ նպատակով էլ պարտիայի XXI համագումարը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանում նախատեսավ քաղաքներում և բանվորական ավաններում պետական միջոցներով կառուցել 650—660 միլիոն քառ. մետր օգտակար մակերեսով բնակելի տարածություն, կամ շուրջ 15 միլիոն բնակարան, որը 2,3 անգամ ավելի է, քան նախորդ յոթնամյակում կառուցվածը։*

*Ընթացիկ յոթնամյա պլանով նախատեսված է Հայկական ՍՍՌ-ում միայն պետական միջոցներով կառուցել շուրջ 2300 հազար քառ. մետր բնակելի մակերես, որն ավելի քան 2,5 անգամ գերազանցում է նախորդ յոթնամյակում կառուցված բնակարանների մակերեսից։ Բնակարանային շինարարության այդպիսի թափն աշխատավորության նկատմամբ Կոմունիստական պարտիայի ցուցաբերած հոգատարության լավագույն վկայությունն է։*

*Մեր Հայրենիքի բոլոր մասերում այժմ կառուցումներն ընթանում են ծավալուն թափով։ ՍՍՌՄ-ում 1959 թվականին կառուցվեց ավելի քան 80 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տուն։ Սովետական Հայաստանում եթե 1957 թվականին կառուցվել է 128,5 հազար քառակուսի մետր, 1958 թվականին 196,3, ապա 1959 թվականին շահագործման է հանձնվել 255 հազար քառակուսի մետր բնակելի մակերես։*

*Շինարարության բնագավառում աշխատող բանվորները, կոնստրուկտորները, ճարտարապետները, տեխնիկներն ու մեխանիզատորները բոլոր ջանքերը գործադրում են, որպեսզի շինարարությունն ընթանա արագ ու ինդուստրիալ մեթոդներով։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը միշտ էլ խրախուսում ու մեծարում են կոմունիզմի կառուցման առավել ակտիվ մասնակիցներին։ Վերջերս ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հրամանագրով Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման արժանացան Ն. Յա. Կոզլովը, Վ. Գ. Լագուտենկոն, Ա. Ա. Սուսնիկովը և Է. Գ. Յուզբաշևը՝ շինարարության ինդուստրացման, առաջավոր կոնստրուկ-*



*ցիաների ներդրման, նոր մեխանիզմների ու տեխնոլոգիայի ստեղծման, կառուցումները արագ կերպով առաջ մղելու համար։*

*Բնակարանային շինարարության բնագավառում պարտիայի ու կառավարության առաջադրած խնդիրները հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է առաջին հերթին մտահոգվել շինարարության ինդուստրացման հարցով, որն առավելապես մեծ կարևորություն ունի մեզ համար։ Եթե մենք ներկա եղանակով շարունակենք շինարարության աշխատանքները, այդ նշանակում է կառուցող բանվորների թիվը, ներկայումս օգտագործվող մեքենաներն ու մեխանիզմները, ինչպես նաև փոխադրական միջոցներն ավելացնել 2,5 անգամ, այսինքն՝ շինարարության ծավալին համապատասխան։ Իհարկե, այդ անհնար է։ Ուրեմն, հարկավոր է ստեղծել և կառուցման մեջ լայնորեն կիրառել է՛լ ավելի առաջավոր, արագընթաց, ինդուստրիալ մեթոդներ, որոնք հնարավորություն կստեղծեն առանց բանվորական ուժի, մեխանիզմների ու փոխադրական միջոցների զգալի ավելացման, հաջողությամբ կատարել բնակարանային շինարարության առաջադրանքները։*

*Բնակարանային շինարարության հսկայական պլանների կատարումը պահանջում է շինարարական աշխատանքները ենթարկել մեքենայացման ու ինդուստրացման, կառույցներում մասսայականորեն կիրառել խոշոր բլոկներից ու պանելներից հավաքովի կոնստրուկցիաները, վերացնել շինարարական հրապարակները, որոնք իրենց տեղը կզիջեն մոնտաժային հրապարակներին։ Այդ հնարավորություն կտա պատերի ու ծածկերի կոնստրուկցիաներից բացի լուծել նաև սանիտարա-տեխնիկական ու էլեկտրատեխնիկական աշխատանքների ինդուստրացումը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1959 թվականի Հունիսյան պլենումը կառուցող կազմակերպություններից պահանջեց՝ շինարարության մեջ լայն կերպով կիրառել կոմպլեքսային մեքենայացումը, իսկ շինանյութերի և կոնստրուկցիաների արտադրության մեջ՝ նաև ավտոմատացումը։ Սակայն շինարարական աշխատանքների ներկա մեթոդների ու պրիոմների պայմաններում գրեթե հնարավոր չէ, կամ շատ քիչ է հնարավոր կիրառել կոմպլեքսային մեքենայացումը։ Դրա համար անհրաժեշտ է, նախ՝ մաքսիմալ կերպով ինդուստրացնել ինչպես շինարարական դետալների ու կոնստրուկցիաների պատրաստումը, այնպես էլ շինարարական մոնտաժային աշխատանքները։*

*Շինարարության ինդուստրացումը հետապնդում է մի քանի հիմնական նպատակներ, այն է՝ արագացնել շինարարության ընթացքը, խիստ կրճատել մեկ միավոր ստեղծելու համար բանվորական ուժի ծախսը, թեթևացնել շենքի քաշը, էժանացնել շինարարության արժեքը և բարձրացնել նրա որակը։*

*Շինարարական աշխատանքներում ամենաաշխատատար պրոցեսները՝ դրանք պատերի կոնստրուկցիաներն են ու միջհարկային ծածկերը, սանիտարա-տեխնիկական աշխատանքները և կախված այս կամ այն ինդուստրիալ մեթոդների կիրառման առկայությունից՝ հարթարման աշխատանքները։*

*Ինչպես հայտնի է, ներկայումս պատերը կառուցվում են բնական կամ արհեստական փոքրիկ քարերից (տուֆերից կամ աղյուսներից), որոնք հնարավորություն չեն տալիս հրաժարվել ձեռքի աշխատանքից։ Այդ ձևով շարվածքը պահանջում է ավելի շատ թաց պրոցեսներ (շաղախ)։ Կառուցման*

այս մեթոդը խիստ կերպով ազդում է շինարարության տեմպերի վրա, որի հետևանքով ձգձգվում է գործը։

Մեր երկրում անընդհատ ծավալվող շինարարության տեմպերը պահանջում են հրաժարվել շարի հին ձևերից և խոշորացնել ինչպես բոլոր կոնստրուկցիաները, այնպես էլ պատերի կառուցման էլեմենտները, դրանք պատրաստել գործարանային պայմաններում և հավաքումը կատարել միայն շենքերում, այն էլ մեքենաների միջոցով։

Ժամանակակից ինդուստրիալ մեթոդներով պատերը կառուցվում են խոշոր բլոկներից, խոշոր պանելներից և տարածական էլեմենտներից։ Պատերի խոշոր բլոկները կառուցվում են գործարանային կամ պոլիգոնային եղանակով, որոնք ունեն 0,3-ից մինչև 3,7 քառ. մետր մակերես կամ մինչև 3,0 տոննա քաշ։ Այս տիպի բլոկներով շարելիս բնակելի հարկը ստացվում է 2—3—4 քարերի շարից (իրար վրա), այսինքն՝ բլոկների բարձրությունը լինում է հարկի նշված քանակի համապատասխան բարձրության։ Բլոկները պատրաստի վիճակում տեղափոխվում են շենք և վերամբարձ կռունկների օգնությամբ տեղադրվում նախագծով նախատեսված տեղը՝ պատի վրա։ Շարքերի հորիզոնական և ուղղահայաց կարանները լցվում են շաղախով, որը առնվազն 8 անգամ ավելի քիչ է ծախսվում, քան աղյուսի շարում և 12 անգամ ավելի քիչ՝ քան բնական քարի շարում։ Այս մեթոդով կառուցելու դեպքում շենքի քաշը թեթևանում է 10—12 տոկոսով, մեկ քառակուսի մետր բնակելի մակերեսի արժեքը 6—8 տոկոս ցածր է լինում, քան աղյուսով բնակելի տան շարի արժեքը. զգալիորեն կրճատվում է կառուցման ժամկետը և ծախսվող բանվորական ուժը։ Նման տիպի պատի կոնստրուկցիաների առավելությունը մնացած ինդուստրիալ մեթոդներից այն է, որ բլոկների պատրաստումը պարզ է, չի պահանջում մեծ ու բարդ հարմարանքներ։ Հնարավոր է բլոկներ պատրաստել նաև շինարարության հրապարակում, որովհետև դրանք բարձրացնելու համար 3—5 տոննայից ավելի հզորություն ունեցող վերամբարձ կռունկի կարիք չի զգացվում։

Պատերի կառուցման ժամանակակից ավելի ինդուստրիալ մեթոդը՝ այդ գործարանային եղանակով խոշոր պանելներից պատերի պատրաստումն է։ Ներկայումս գոյություն ունի պատերի պանելների պատրաստման ավելի քան 6 հիմնական եղանակ, որոնք ինչպես պատրաստման տեխնոլոգիայով, այնպես էլ հավաքման և նախագծային պլանային լուծմամբ խիստ տարբերվում են միմյանցից, սակայն բոլոր տիպերն էլ պատրաստվում են գործարանային եղանակով։

Մինչև առանձին պանելների մասին խոսելը հարկավոր է նշել, որ շենքերի հիմքերը և հիմնակետերը, ինչպես կանոն, կառուցվում են համապատասխան խոշոր բլոկներից։

1. Թրթռիչների (վիբրացիաների) միջոցով աղյուսից խոշոր պանելները պատրաստվում են տաքացված ստենդների վրա։ Տաքացված ստենդը իրենից ներկայացնում է բետոնից պատրաստած մի հարթ մակերես, որի մեջ (մակերեսից 1,5—2,5 սմ խորությամբ) տեղադրված են օձապտույտ մետաղյա խողովակներ։ Դրանց միջով անցնում է գոլորշին ու տաքացնում բետոնային հարթությունը, ավելի շուտ նրա մակերեսը, որի վրա (հատուկ յուղով պատելուց հետո, որպեսզի բետոնը չկպչի) պատրաստում են ցանկացած կոնստրուկցիաներ։ Այս եղանակով հավաքովի երկաթբետոն արտադրելիս կաղապարը



ունենում է միայն շրջանակային ձև, իսկ որպես կաղապարի ներքին մաս օգտագործվում է ստենդը, որը միաժամանակ ծառայում է տաքացման աղբյուր։ Գործարանային եղանակի դեպքում այս վերջին ֆունկցիան կատարում է գոլորշու հորը, ուր տեղադրվում է մետաղյա կաղապարներում լցված թարմ կոնստրուկցիան (բետոնը)։

Վերը նշված ստենդի վրա տեղադրվում է պանելի չափերով պատրաստված համապատասխան շրջանակը, որը ծառայում է որպես կաղապար։ Այս շրջանակում հարթ կերպով, 2—2,5 սմ հաստությամբ լցվում է մածուցիկ շաղախը, որից հետո շարվում է աղյուսը (պահպանելով շարքի կապերի կանոնները), մեկը մյուսից 1—1,5 սմ հեռավորությամբ, ապա աղյուսի շարքի վրա հավասար հաստությամբ լցվում է 2—3 սմ շաղախի շերտ, որից հետո հարթ թրթռիչների միջոցով 8—10 վայրկյան մշակվում է հարթությունը, խտացվում շաղախը, այնուհետև ծածկվում բրեզենտով և այդ վիճակում մնում է մինչև հաջորդ օրը։ Այս ժամանակամիջոցում ջերմության ազդեցության տակ շաղախը ամրանում է և ստանում պատի խոշոր պանելների ամբողջական ձև։ Բնակելի տան ներքին պատերի պանելները այս եղանակով պատրաստում են 14 սմ հաստությամբ (350×250 սմ չափերի), այսինքն՝ սենյակի ամբողջական պատերի չափերը։ Այսպիսի պանելի մեկ քառ. մետր պատը (առանց անցքի հոծ պատի) կշռում է 300 կգ, նույն աղյուսից 50 սմ լայնության շարած պատի 950—1050 կգ-ի փոխարեն։

Արտաքին պատերը պատրաստվում են երկու չափերի՝ 14 կամ 26 սմ հաստությամբ պանելներից, որի մեկ քառ. մետրը կշռում է 533 կգ։ Արտաքին պատերի այս երկու չափերի պանելները տաքացվում են բարձր որակի ջերմամեկուսիչների միջոցով (միներալային բամբակի սալերից, փրփրապակու կամ փրփրակիրալիտի սալերից, ֆիբրալիտով և այլն)։ Եթե տաքացնող շերտը կոշտ սալերից չէ, արտաքին պատերը պատրաստվում են եռաշերտ։

Պանելներին կոշտություն տալու համար նրանց ենթարկում են թեթև ամրանավորման, որն ունի շրջանակաձև տեղադրում, այսինքն՝ բացվածքներն ու ամբողջական պանելները չորս կողմից շրջափակված են 4—6 մմ տրամագծի երկաթյա շրջանակով։ Մեկ քառ. մետր պանելի վրա ծախսվում է 1,6-ից մինչև 1,9 կգ երկաթ։

Եթե այս տիպի պանելները համեմատենք սովորական աղյուսից շարած պատերի հետ, կտեսնենք, նախ՝ աշխատատար պրոցեսները հիմնականում կատարվում են գործարանային եղանակով (պոլիգոնային), որի շնորհիվ շաղախը հավասարապես խտացվում է աղյուսի շարքերի կարաններում և շարքի կրող ունակությունը մեծանում է 2-ից 2,5 անգամ։ Բացի սրանից, վիբրացիայի ենթարկված շարը լավ է գործում, որը շատ մեծ նշանակություն ունի կառուցվածքների կայունության համար։ Պանելի այս հատկությունները հնարավորություն են տալիս պատի հաստությունը բարակացնել 2 և ավելի անգամ։ Սրանք են այս պատերի տեխնիկա-էկոնոմիկական առավելությունը սովորական աղյուսից պատերի նկատմամբ։

2. Հորիզոնական ձևով մեկ և բազմաշերտ պանելները պատրաստվում են գործարանային եղանակով, թրթռիչ սեղանի վրա մետաղյա հատուկ կաղապարների մեջ։ Այս պանելները նույնպես ամբողջ հարկի բարձրությամբ և լայնությամբ համապատասխանում են սենյակի չափերին։ Միաշերտ պանելների դեպքում պատրաստման տեխնոլոգիան հետևյալն է. կաղապարը յու-

վում են, ապա լցնում 2—3 սմ հաստություն ունեցող երեսապատող շերտը (գունավոր շաղախ), ապա տեղադրում արմատուրան (մետաղյա կարկասը), որից հետո լցնում բետոնի հիմնական մասսան ու խտացնում։ Այնուհետև բետոնը վերևից ճնշման են ենթարկում հատուկ ծանրոց-սալով, որի շնորհիվ պանելի ներսի (սենյակի կողմի) մակերեսն ընդունում է հարթ տեսք։

Այս վիճակում թարմ պանելը կաղապարով տեղափոխվում է շոգեհացման խցիկը, ուր շոգու մշակումից 8 ժամ հետո, որպես պատրաստի կոնստրուկցիա, հանվում է կաղապարից։

Այս տիպի պանելը սովորաբար պատրաստում են թեթև լիցքային նյութերից (կերամզիտից, շլակից, պեմզայից), որպես վատ ջերմահաղորդիչ, որի շնորհիվ արտաքին պատերի հաստությունը զգալի կրճատվում է։ Այսպես, օրինակ, «Գլավմոսպրոմստրոյմատերիալով»-ի № 10 գործարանում այս եղանակով պատրաստած միաշերտ պատի արտաքին պանելները, որոնք պատրաստվում են կերամզիտից, ունեն 40 սմ հաստություն, իսկ ներքին պատերի պանելները՝ 25 սմ հաստություն։ № 12 բնակարանա-շինարարական գործարանի արտադրած արտաքին եռաշերտ պանելներն ունեն 30 սմ հաստություն։ Այստեղ օգտագործվող թեթև արհեստական լիցքանյութի (կերամզիտի) 1 խմ կշռում է 350—400 կգ, իսկ բետոնինը՝ 1200 կգ։

3. Գլանման հաստոցներում (Կոզլովի հաստոց) պանելները պատրաստում են հիմնականում երկու տիպի։ Դրանց պատրաստման սկզբունքը նույնն է, բայց կապակցող նյութերը և տեխնոլոգիան խիստ տարբերվում են։ Այս հաստոցներում պատրաստվում են միջնորմների պանելներ և պատի ու միջհարկային ծածկերի ամրանավորված, կրող պանելներ։

Միջնորմների պանելները պատրաստվում են գիպսի, փայտի, թեփի և ավազի խառնուրդից. ամրանավորվող մասը հանդիսանում է փայտի մնացորդներից պատրաստված ցանցը։ Փայտի ցանցը դրվում է հաստոցի սկզբնական մասում, որի ամբողջ երկարությամբ շարժվող («անվերջ խառնող») շաղախախառնիչից թափվում է վերոհիշյալ բաղադրիչներից կազմված շաղախը և անցնում երկու գլանների միջով։ Գլաններից մեկը միաժամանակ ծառայում է կաղապարի հատակ։ Պանելի շրջանակը (կաղապարը) պատրաստված է փայտից։ Վերին ու ներքին գլանների վրա փաթաթված են ռետինից 3,6 մետր լայնության ժապավենները, որոնց միջով անցնող գիպսի շաղախը ստանում է սկզբնական ամրությունը։ Ստացված կոնստրուկցիան այնուհետև անցնելով մետաղյա գլաններով, հաջորդ սեղանի վրա հանվում է բացվածքներում դրված կաղապարից (եթե այդպիսին կա), որից հետո նույն հորիզոնական դրությամբ գլաններով հաջորդ սեղանի վրայով տեղափոխվում է շրջվող հաստոց-սեղանի վրա, որը պտտվելով իր առանցքի շուրը 90 աստիճան, պանելին տալիս է ուղղահայաց կանգնած վիճակ։ Նախօրոք շաղախի մեջ թողնված մետաղյա կեռերից բարձրացվում է պանելն ու կանգնած վիճակում տեղադրվում հատուկ հարմարանքներով սայլակի վրա և տեղափոխվում չորանոց։

Այսպիսի պանելները, նախագծին համապատասխան, նույնպես ունեն սենյակի ամբողջական չափերը, որոնք 8—10 սմ հաստությամբ են։

Շնորհիվ հարթ գլանման, նման միջնորմների պանելները, ինչպես մնացած պատերի պանելները, լրացուցիչ ծեփային աշխատանքներ չեն պահանջում։ Շենք են տեղափոխվում հատուկ պանել տեղափոխող մեքենաների միջոցով և տեղադրվում վերամբարձ կռունկների միջոցով, իր համար նախագծով նախատեսված տեղը։



Այս տիպի պանելների արտադրության համար Երևանում կառուցված է գործարան (Հայկական ՍՍՌ Շինարարության մինիստրության գծով), որը վերջերս սկսեց տալ իր առաջին արտադրանքը։ Նկարագրված մեկ այսպիսի հաստոցը տարեկան կարող է արտադրել 400—450 հազ. քառ. մետր միջնորմների պանելներ։

4. Գլանման եղանակով պատերի պանելները պատրաստվում են նաև երկաթբետոնից, վերը նշված սկզբունքով, իհարկե որոշ ձևափոխումով (եթե չհաշվենք ջերմային մշակումը, որը կատարվում է հաստոցի վրա)։ Այստեղ պտտվող ներքին ժապավենը կողավոր է ու մետաղից։ Մետաղյա ցանցը (արմատուրան) տեղադրելուց հետո «անվերջ պտտվող» բետոնախառնիչներից թափվում է բետոնը, որը բաղկացած է ցեմենտից, մանր ու խոշոր ավազից (առանց խճի)։ Պտտվող ներքին ու վերին ժապավենների միջով անցնելով, բետոնը գլանվում է ու կաղապարվում ինչպես կողերում, նույնպես և միջգլանային տարածության մեջ, որը հետագայում ծառայում է որպես պանելի հարթ-երեսային մաս։ Պատրաստի թարմ բետոնը երկար ձգված ժապավենի հետ միասին շարժվում է առաջ ու մտնում երկու կողմից ռետինի ու բրեզենտի ժապավեններով պարփակված կամերայի (խցիկի) մեջ, ուր բաց է թողնըվում գոլորշին։ Այս տիպի կողավոր պանելների սալի հաստությունը կազմում է 2,8 սմ, կողերի հաստությունը՝ 8—5 սմ։

Այս պանելները օգտագործվում են միաժամանակ երկու նպատակի, ինչպես պատերի, այնպես էլ միջհարկային ծածկերում։

Երկու այսպիսի պանելները մետաղյա մասերով միացվում են միմյանց, զոդման միջոցով, ընդ որում, կողերը արվում են դեպի ներս, որի շնորհիվ արտաքինում ծածկերը և պատերը ստանում են սովորական հարթ պանելների տեսք։ Արտաքին պատերի՝ նման երկու պանելների միջև, կողերի վրա դըրվում է ջերմամեկուսիչ նյութ, որը հնարավորություն է տալիս կլիմայական պայմանների համապատասխան պատրաստել տարբեր հաստությամբ պատեր։ Միջհարկային ծածկերի համար վերոհիշյալ տիպի պանելներ պատրաստելիս, երկու պանելների կողերի մեջ դրվում է ոչ թե ջերմության, այլ ձայնի մեկուսիչ նյութ և վերին պանելի մակերեսը օգտագործվում է որպես հիմք (առանց լրացուցիչ բետոնի ու մշակման) պարկետի տեղադրման համար։

Պատերի ու ծածկերի պանելների երկաթբետոնի ընդհանուր հաստությունը կազմում է 7—7,5 սմ։ Հարկավոր է նշել, որ այս պանելների մեկ խմ բետոնը պահանջում է 2 անգամ ավելի ցեմենտ, քան կերամզիտոբետոնը, կամ սովորական այլ բետոններ, քանի որ խճի փոխարեն օգտագործվում է ավազ։

5. Խոշոր պանելների արտադրության կասետային եղանակը հիմնականում երկուսն է. հարթ, 10—12 սմ հաստության պանելների արտադրություն և բարակ պատերով ու կոշտ շրջանակներով պանելների արտադրություն։

Պանելների կասետային արտադրությունը իրենից ներկայացնում է ուղղահայաց վահանների մի խումբ, որոնք սարքավորված են իրար կողքի, որոշ հեռավորության վրա։ Այդ վահանների մեջ նախօրոք համապատասխանորեն տեղադրվում է արմատուրան և ապա լցվում է բետոնը։ Գոլորշային մշակումը կատարվում է երկու հարևան վահանների մեջ թողնված ազատ տարածու-

*թյուններում, գոլորշի բաց թողնելով: Բետոնի խտացումը կատարվում է մետաղյա պատերին ամրացված թրթռիչների միջոցով: Հարթ կասետային տիպի պանելները նույնպես ծառայում են ինչպես պատի, այնպես էլ միջհարկային ծածկերի համար, կախված նրանց ամրանավորումից: Պատերի այսպիսի պանելներն ավելի նպատակահարմար է օգտագործել հատկապես միջնապատերի համար, որովհետև այդ պանելներն արտաքին պատերի համար օգտագործելու դեպքում անհրաժեշտ է պանելներին սոսնձել ջերմամեկուսիչ նյութերի թերթեր:*

*6. Կասետային պանելի մյուս ձևը բարակ պատերով պանելն է: Այս տիպի պանելները կազմված են 10×10 սմ չափեր ունեցող շրջանակից և մոտ 4 սմ հաստություն ունեցող սալ-պատից: Դրանց կառուցման տեխնոլոգիան նույնն է, ինչ որ վերը նշվածներինը, այն տարբերությամբ, որ սրանց կաղապարների մետաղյա վահաններն ունեն ոչ թե հարթ մակերես, այլ միջին մասը ցցված է դուրս և ստեղծում է կողավոր պանել: Դրա շնորհիվ էլ պանելը հիմնականում ունի 4 սմ հաստություն: Այս տիպի պանելներ պատրաստելու դեպքում հնարավոր չէ օգտագործել սովորական մածուցիկություն և բաղադրիչներով բետոն: Այս դեպքում բետոնը պատրաստվում է չրիկ վիճակում: Մեկ խոր. մետր բետոնում օգտագործվում է 700—800 կգ ցեմենտ: Այս պանելների կողերը ծառայում են որպես կրող կոնստրուկցիաներ, ինչպես հաջորդ հարկի պանելների, նույնպես և միջհարկային ծածկերի հենման համար: Ճիշտ է, այսպիսի պանելներից շենքեր հավաքելը կապված է որոշ բարդության հետ, սակայն, շնորհիվ տեխնո-էկոնոմիկական լավ ցուցանիշների, վերջերս Մոսկվայում խիստ տարածում է գտել այսպիսի պանելներից տների կառուցումը, որը կոչվում է հեղինակի անունով՝ «Լագուտենկոյի սիստեմ»:*

*Այս եղանակով պատերի ու միջհարկային ծածկերի պանելներ այժմ պատրաստվում են հատուկ՝ բնակարանա-շինարարական գործարաններում, ուր պատրաստվում են ոչ միայն պատերի ու ծածկի պանելներ, այլև սանիտարական խցիկներ (բլոկներ), ջերմային պանելներ, ծպեղի պատրաստի սալեր և այն ամենը, ինչ հարկավոր է, որպեսզի առանց մեծ ու լրացուցիչ աշխատանքի շինարարական հրապարակում հավաքվեն գործարաններում պատրաստված բնակելի տները:*

*Բնակարանա-շինարարական գործարաններում պատերի պանելների մեջ տեղադրվում են դռներ, պատուհաններ ու ներկվում մինչև նախավերջին շերտը: Վերջերս փորձեր են արվել կասետային և գլանման միջհարկային պանելները ուղարկել մոնտաժային հրապարակ՝ հատակը լրիվ պատրաստված վիճակում (պարկետով կամ լինոլիումով ծածկելուց հետո):*

*Որպեսզի բնակարանային շինարարությունում մաքսիմում կրճատվի սանիտարատեխնիկական ու էլեկտրատեխնիկական աշխատանքները, գործարանում պատրաստվում են սանիտարական խցիկներ, ջեռուցման պանելներ և այլն:*

*Սանիտարական խցիկը իրենից ներկայացնում է թեթև մետաղյա կարկաս՝ 8—12 մմ հաստություն ունեցող հարթ ազբոշիֆերի թերթերից պատրաստված առաստաղով, դռնով ու պատուհանով՝ նախագծով նախատեսված չափերի ու ձևերի համապատասխան: Այս խցիկի մեջ հավաքվում են սանիտարական հանգույցի բոլոր խողովակներն ու սարքավորումները (լողարան, ջեռուցման կալոնկան, լվացարանը, լուսավորությունը, սրբիչ չորացնելու հարմարանքը և այլն):*



*Պատրաստի այս արկղ-խցիկը, որը կշռում է 500—800 կգ, տեղափոխվում է շենք և տեղադրվում նախագծով նախատեսված իր տեղում:*

*Այսպիսով, շինարարության ինդուստրիալ եղանակների լայն կիրառման շնորհիվ հիմնականում փոխվում է շինարարական աշխատանքների տեխնոլոգիան, նրանց կառուցման ձևը, աշխատող բանվորների որակական կազմը (տրմնադիրների ու ծեփագործների փոխարեն մոնտաժողներ և այլն), օգտագործվող շինարարական նյութերի տեսակները: Զգալի չափերի է հասնում սանտեխնիկայի ու էլեկտրատեխնիկայի աշխատանքների ծավալը: Այս բոլորի շնորհիվ կառուցման ժամկետը կրճատվում է 4—7 անգամ, կրճատվում է մեկ միավորի վրա ծախսված բանվորական ուժի քանակը, թեթևանում շենքի քաշը, ծախսվող նյութերի քանակը, բարձրանում շինարարության որակը և խիստ կրճատվում բնակարանային շինարարության արժեքը:*

**Տարբեր տիպի կոնստրուկցիաներով բնակելի տների տեխնիկաէկոնոմիկական ցուցանիշները**

*(Ըստ Գլավմոսստրոյի տվյալների)*

| Կոնստրուկցիաների տեսակները | Մեկ խմ կառուցվածքի քաշը (կիլոգրամ) | Մեկ քմ բնակելի մակերեսի արժեքը (ռուբլի) | 1 քմ բնակելի մակ. կառուցման ծախսվող աշխատանք (մարդ-օր) |
|---|---|---|---|
| 1. Աղյուսից կառուցված բնակելի տներ . | 3000 | 1750 | 1,4—1,5 |
| 2. Խոշոր բլոկներից » » . | 2700 | 1600 | 1,0—1,1 |
| 3. Աղյուսե պանելներից » » . | 2000 | 1500 | 1,0—1,1 |
| 4. Կերամզիտե պանելներից » » . | 1600 | 1400 | 0,8—0,9 |
| 5. Գլանային եղանակով պանել. . | 1000 | 1200 | 0,55 |
| 6. Կասետային պանելներից . | 900 | 1100 | 0,6—0,7 |

*Իհարկե, պանելային տիպի շինարարությունը դեռևս կառուցումների ինդուստրացման գագաթնակետը չի կարելի համարել: Այժմ լայն աշխատանք է տարվում նոր տիպի բնակարանային շինարարության ուղղությամբ, որն ամենայն հավանականությամբ լինելու է պանելային շինարարությանը հաջորդող բնակարանային շինարարության ավելի ինդուստրիալ եղանակը: Այդ շենքի տարածական դետալները պատրաստվում են գործարանային եղանակով, մի քանի պատեր ու ծածկեր միացվում են իրար և որպես «բաց արկղներ» տեղափոխվում են մոնտաժային հրապարակ և տեղադրվում իրար վրա, ապա ծածկում են երկու ճակատները խոշոր պանելներով, և բնակելի տունը հիմնականում պատրաստ է:*

*Բնակարանային շինարարության ինդուստրացման ուղղությամբ վերջին տարիներս զգալի աշխատանք է կատարվել Սովետական Հայաստանում:*

*Անցյալ տարի հունիսին Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեն և Մինիստրների Սովետը ընդունեցին «Հայկական ՍՍՌ-ում շինանյութերի արդյունաբերության ու շինարարական ինդուստրիայի զարգացումը 1959—1965 թվականներին» համատեղ որոշում: Այդ որոշման մեջ հստակ կերպով նշված են մեր ռեսպուբլիկայում շինարարական ինդուստրացման ուղիները, զարգացման հեռանկարները ըստ գործարանների, տարիների և արտա-*

դրության ծավալների։ Նախատեսված է Հայաստանում ստեղծել հավաքովի տների կառուցման մի շարք գործարաններ։ Ռեսպուբլիկայի միայն Շինարարության մինիստրության գծով նախատեսված է կառուցել տարեկան 240000 քմ բնակելի մակերեսի համար դետալներ արտադրող գործարաններ։ Երևանում կառուցվելու են 170000 քմ բնակելի մակերեսի դետալներ թողարկող գործարաններ, այդ թվում 1960 թվականին թողարկվելու է 35000 քմ, 1960 թվականին ևս 80000 քմ և 1965 թվականին 55000 քմ դետալներ արտադրող գործարաններ։ Այսպիսի գործարաններ կառուցվելու են նաև Լենինական ու Կիրովական քաղաքներում, յուրաքանչյուրը տարեկան 35000 քմ արտադրական կարողությամբ։ Նախատեսվում է Լենինականում կառուցվող գործարանը շահագործման հանձնել 1961 թվականին, իսկ Կիրովականինը՝ 1962 թվականին։

ՀԿՊ Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի որոշման մեջ նշված է նաև Կիրովական քաղաքում կառուցել մեկ գործարան՝ գլանման եղանակով միջնորմների պանելներ արտադրելու համար՝ տարեկան 400000 քմ պանելների արտադրության ընդհանուր հզորությամբ։

Նախատեսված է բնակարանաշինարարական գործարաններ կառուցել նաև ԺՏԽ-ի գծով, Հրազդանում՝ տարեկան 35000 քմ բնակելի մակերեսի արտադրանքի համար, որը պետք է շահագործման հանձնվի 1962 թվականին։

Այսպիսով, 1962 թվականի վերջերում մեր ռեսպուբլիկայում կունենանք հավաքովի բնակարանաշինարարական մի շարք գործարաններ, որոնք մեր շինարարներին հնարավորություն կտան 1963 թվականից սկսած տարեկան հավաքել 275000 քմ խոշոր պանելներից միանգամայն ինդուստրիալ եղանակով բնակելի տներ։

Այժմ ամբողջ Միության մեջ նշված եղանակով տարեկան կառուցվում է 3 միլիոն քմ բնակելի տարածություն։ Յոթնամյակի վերջում խոշոր պանելներից բնակելի տների կառուցումը նախատեսվում է հասցնել 25 միլիոն քմ։

Շինարարության առաջընթաց թափն ապահովելու համար նախատեսված է ռեսպուբլիկայի հավաքովի երկաթ-բետոնի արտադրությունը ավելացնել ավելի քան 6 անգամ, 1963 թվականին այն հասցնելով տարեկան 520 հազար քմ, այդ թվում 80 հազար խմ լարված կոնստրուկցիաներով հավաքովի երկաթ-բետոն։ Նախատեսվում են նաև մի շարք այլ միջոցառումներ, որոնք հըսկայական թափով կբարձրացնեն Հայաստանի շինարարության ինդուստրիան, կփոխեն շինարարության կառուցման տեխնոլոգիան։ Բավական է նշել, որ 1963 թվականից Երևանում պետական գումարներով կառուցվող բնակելի տների 85—90 տոկոսը կառուցվելու են լրիվ ինդուստրիալ եղանակով՝ խոշոր պանելներով։ Լենինական, Կիրովական քաղաքներն այդ ցուցանիշներին կհասնեն 1964 թվականին։

Իսկ ի՞նչ է կատարվում այդ ուղղությամբ մեզ մոտ։ Շինարարության մինիստրությունը վերջերս Զարբախում շահագործման հանձնեց գլանման եղանակով միջնորմների խոշոր պանելների առաջին գործարանը (Կոզլովի հաստոցը)։ Այս գործարանի տարեկան հզորությունը կազմում է 400000 քմ միջնորմների խոշոր պանելների արտադրություն, որը լիովին կբավարարի Երևանի բնակելի շինարարությանը։ Գործարանը պանելների արտադրության համար օգտագործելու է տեղական շինանյութեր՝ գիպսի փոխարեն գաջ, թեփի և ավազի փոխարեն շլակ կամ պեմզա, իսկ մոտ ապագայում՝ պերլիտ։



Շինարարության մինիստրության № 8 շինարարական տրեստը կազմակերպել է սանիտարական խցիկների մասսայական արտադրությունը։ Այս խցիկներից արդեն տեղադրված են Երևանի Ծերեթելի փողոցի բնակելի տներում, ինչպես նաև խոշոր պանելից շինված տանը։ Նախատեսված է այս տարի այդպիսի խցիկներ արտադրել ու մոնտաժել Երևանում կառուցվող բնակելի տների զգալի մասում։

Մինչև հավաքովի բնակարանային շինարարության գործարանների կառուցումը ռեսպուբլիկայի Շինարարության մինիստրությունը նախաձեռնել է № 3 երկաթ-բետոնի գործարանում հորիզոնական եղանակով պատերի խոշոր պանելների արտադրության նոր տեխնոլոգիական գիծ ստեղծելու աշխատանքները։ Այս նոր գիծը շահագործման հանձնելու շնորհիվ գործարանն իր հիմնական արտադրանքից բացի կտա նաև 25000 քառ. մետր բնակելի մակերեսի համար պատի խոշոր պանելներ։

Այս տարի հունվարի սկզբին Զարբախում սկսվեց առաջին պանելային տան հավաքումը և փետրվարի 7-ին հիմնականում ավարտվեցին նրա մոնտաժի աշխատանքները։ Շուտով, առաջին պանելային այս շենքը կհանձնվի շահագործման։ Շինարարության մինիստրությունը նույն հրապարակում սկսել է երկրորդ պանելային շենքի մոնտաժը։ Մինչև երրորդ եռամսյակի վերջը այստեղ կհավաքվեն 9 այսպիսի բնակելի շենքեր, շուրջ 13000 քառակուսի մետր բնակելի մակերեսով։ Այս տան տաքացումը նախատեսվում է կատարել օդային ջեռուցման միջոցով։ Սա նորություն է Սովետական Միության մեջ և շատ հեռանկարային, հատկապես մեր ռեսպուբլիկայի համար։ Այս տիպի ջեռուցումը համարյա բացառում է մետաղյա խողովակների օգտագործումը և միաժամանակ ամառվա շոգ եղանակներին կարելի է մատակարարել սառը (զով) օդ, ձմեռվա տաքի փոխարեն։

Մեծ աշխատանքներ են տարվում նաև Հայաստանում մշակված նոր տիպի հաստոցի միջոցով (մամլման եղանակով) պատերի և միջհարկային խոշոր պանելների ստացման ուղղությամբ, որը նորություն է շինարարական արվեստում և ունի խոշոր հեռանկարներ։

Աշխատանք է տարվում ռեսպուբլիկայի շրջաններում, հատկապես լեռնային հեռավոր մասերում բնակելի շինարարության ինդուստրացման ուղղությամբ, այն է, «միտիսի» փոխարեն խոշոր բլոկներից պատերի շարքին անցումը։ Այժմ կառուցվում է մեկ ունիկալ հաստոց, որն անշուշտ մոտ ապագայում կլուծի այս հարցը։ Այս հաստոցը իր պարզության, մեծ արտադրողականության և ճկունության շնորհիվ մոտ ապագայում գործածություն կգտնի նաև ռեսպուբլիկայի սահմաններից դուրս և կլուծի գյուղական շինարարության առաջին էտապին վերաբերող խնդիրներից մեկը։

Չնայած այս բոլորին, մենք դեռ շատ բան ունենք անելու շինարարության ինդուստրացման ուղղությամբ։ Հարկավոր է ռեսպուբլիկայում արագացնել հատկապես պատերի կոնստրուկցիաների ինդուստրացումը, քանի որ ներկայիս շարի «միտիս» սիստեմը պատի բոլոր տիպի շարերից ամենահետամնացն է, և դրանով կատարել շինարարների առաջ դրված խնդիրներն անհնար է։ Անհրաժեշտ է շինարարության ինդուստրիայի բազաները կառուցել և թողարկել ժամկետից շուտ, որը կհանդիսանա յոթնամյակի հոյակապ պլանների կատարման լավագույն գրավականը։

# ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՎԱԳՈՆԱՅԻՆ ԴԵՊՈՅՈՒՄ

Գ. ՍՈՒՔԻԱՍՅԱՆ

Լենինականի վագոնային դեպոյի պարտկազմակերպության քարտուղար

*Արտադրա-տեխնիկական ավելի բարձր ցուցանիշների հասնելու, արտադրության տեխնոլոգիական պրոցեսները կատարելագործելու, ռացիոնալիզատորական առաջարկությունները ավելի լայն մասշտաբով արմատավորելու և կիրառելու գործում մեծ նշանակություն ունի աշխատավորների ակտիվ ներգրավումը արտադրության կառավարմանը։ Հաշվի առնելով այդ, Լենինականի վագոնային դեպոյի պարտիական, արհեստակցական կազմակերպությունները և տնտեսական ղեկավարությունը շատ բան են անում, որպեսզի աշխատավորությունը ակտիվ կերպով մասնակցի արտադրության ղեկավարմանը։*

*Այդ նպատակին է ծառայում մշտապես գործող արտադրական խորհրդակցությունը, որի կազմի ճիշտ ընտրությունից շատ բան է կախված։ Այդ խորհրդակցության կազմում պետք է լինեն այնպիսի մարդիկ, որոնք ավելի մոտ կանգնած լինեն արտադրությանը, լավ հասկանան արտադրության կազմակերպման խնդիրները և հստակ պատկերացնեն արտադրա-տեխնիկական ավելի բարձր ցուցանիշների հասնելու ուղիները։ Ահա թե ինչու Լենինականի վագոնային դեպոյի արտադրական խորհրդակցության կազմում ընդգրկված են ինժեներա-տեխնիկական աշխատողներ, վարպետներ, բրիգադավարներ, ցեխի պետեր, փականագործներ, վագոնի զննիչներ։*

*Այնտեղ ամիսը մեկ անգամ տեղի է ունենում արտադրական խորհրդակցություն, ուր քննության են առնվում բազմապիսի հարցեր, հանվում որոշումներ. բայց էականը որոշումներ կայացնելը չէ, այլ դրանց կատարումը։*

*Այժմ դեպոյի կոլեկտիվը սոցիալիստական մրցության մեջ է Թբիլիսիի և Բաթումիի վագոնային դեպոյի կոլեկտիվների հետ և պայքարում է մրցությունից պատվով դուրս գալու համար։ Արտադրական խորհրդակցությունում հաճախ է քննարկվում մրցությունը լավ կազմակերպելու հարցը։ Վերջերս լսվել է պրոֆմիության տեղկոմի նախագահ Ա. Սարգսյանի զեկուցումը և մշակվել են գործնական միջոցառումներ սոցիալիստական մրցության գործն ավելի բարձր հիմքերի վրա դնելու համար։*

*Արտադրական խորհրդակցությունը հաճախ է քննարկում ներքին ռեզերվների՝ վառելանյութի, էլեկտրաէներգիայի տնտեսման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, նորի, առաջավորի արմատավորման, տեխնիկական ուսուցման և տեխնիկական պրոպագանդայի, արտադրողականության բարձրացման և ինքնարժեքի իջեցման հարցերը։*



*Արտադրանքի ինքնարժեքի իջեցման ամենաարդյունավետ ուղիներից մեկը վառելանյութի և էլեկտրաէներգիայի տնտեսումն է։ Լավ գիտակցելով այդ, վագոնային դեպոյի կոլեկտիվը պայքարում է էլեկտրաէներգիայի և վառելանյութի ա.եսակարար ծախսերի նվազեցման համար, որի շնորհիվ ձեռնարկությունը տարեցտարի իջեցնում է արտադրանքի ինքնարժեքը։ Խնայված էլեկտրաէներգիայի և վառելանյութի իջեցման արժեքի գումարը մեզ մոտ տարեկան կազմում է ոչ պակաս, քան 400 հազար ռուբլի։*

*Մի ժամանակ մենք էլեկտրաէներգիայի մեծ կորուստներ էինք տալիս անվազույգերը սվարահան ապարատով մաքրելու հետևանքով։ Բավական է նշել, որ անվազույգերի մաքրման վրա տարեկան ծախսում էինք 93 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա։ Դրությունը փոխվեց, երբ անվազույգերը սկսեցինք մաքրել քիմիական եղանակով։*

*Դեռ 1956 թվականին դեպոն իր ուժերով պատրաստեց ու տեղակայեց անվազույգերի քիմիական մաքրման հատուկ սարքավորում, որի կիրառմամբ ո՛չ միայն կանխեցինք կորուստը, այլև տարեկան տնտեսեցինք 100 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա. ավելի բարձրացավ մաքրման որակը և յուրաքանչյուր անվազույգի վրա աշխատող բանվորական ուժը պակասեց 0,3 մարդ-ժամով։*

*Հյուսնի ցեխում թեփի ու տաշեղների ծծիչ մեխանիզմը, ավտոմատ անջատիչ չունենալու պատճառով, մոտ 45 րոպե աշխատում էր անտեղի՝ վատնելով հսկայական քանակությամբ էլեկտրաէներգիա և առաջացնելով դետալների անժամանակ մաշվածք։ Վագոնայինները ծծիչ մեխանիզմի վրա տեղակայեցին ավտոմատ անջատիչ, որը վերացրեց մեխանիզմի անտեղի աշխատանքը։ Ծծիչ մեխանիզմը ավտոմատ կերպով գործի է գցվում այն ժամանակ, երբ փայտամշակման հաստոցների մոտ կուտակվում է զգալի քանակությամբ թեփ ու տաշեղ, իսկ երբ այդ հաստոցների վրա դադարում է աշխատանքը, ավտոմատ կերպով անջատվում է նաև ծծիչ մեխանիզմը։ Նման ավտոմատ անջատիչներ են տեղակայված նաև էլեկտրազոդման տրանսֆորմատորների վրա, որը նույնպես էլեկտրաէներգիայի մեծ տնտեսում է տալիս։ Վերջին տարիներս էլեկտրաէներգիայի ծախսումը 28 տոկոսով նվազել է նաև խտացված օդի արտադրության ժամանակ, չնայած որ արտադրության մեջ այժմ կիրառվում է 13 տոկոսով ավելի խտացված օդ։*

*Վագոնային դեպոն երկաթուղային հանգույցի այն ձեռնարկություններից է, որտեղ շատ վառելանյութ է պահանջվում։ Արտադրական-տնտեսական նպատակներով ծախսվող պայմանական վառելանյութը միջին հաշվով կազմում է տարեկան 700 տոննա։ Ներկա պայմաններում վառելանյութի ամենամեծ մասը կլանում են ստացիոնար շոգեկաթսաները։ Այդ պատճառով էլ վագոնայինները, հատկապես մեծ ուշադրություն են հատկացնում շոգեկաթսաները սարքին վիճակում պահելուն և դրանց խնամքը լավ կազմակերպելուն։ Հայտնի է, որ կաթսայի պատերի քափը, մուրը և այլ նստվածքներ խիստ բացասաբար են անդրադառնում այդ պատերի ջերմահաղորդականության վրա։ Դրա համար էլ վագոնայինները ժամանակին մաքրում են կաթսաները զանազան նստվածքներից, որի շնորհիվ բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը, նվազում ծախսվող վառելանյութի քանակը։*

*Անտառանյութի արհեստական չորացումը նույնպես պահանջում էր մեծ քանակությամբ վառելանյութ, քանի որ չորանոցային կամերաները, աշխա-*

տելով ամբողջ տարին, մեծ դժվարությամբ էին արտադրությանն ապահովում անհրաժեշտ քանակությամբ չորացած անտառանյութով։ Ընդ որում, մեկ խորանարդ մետր անտառանյութ չորացնելու համար ծախսվում էր 64 կգ վառելանյութ։ Երբ կազմակերպվեց անտառանյութի բնական չորացում, այդ ծախսը նվազեց։ Այժմ արհեստական չորացում միայն ձմռանն է կատարվում, իսկ տարվա մյուս եղանակներին լայնորեն օգտագործվում է արեգակի էներգիան։ Այսպիսով, յուրաքանչյուր խորանարդ մետր անտառանյութի չորացման վրա ծախսվող վառելանյութը նվազեց 23 կգ-ով։

Վառելանյութի մեծ խնայողության կարելի է հասնել արտադրական և ծառայողական շենքերի ձմեռային ջեռուցումը լավ նախապատրաստելու միջոցով։ Վաղօրոք ստեղծելով ձմռանն անխափան աշխատելու բոլոր պայմանները, ճիշտ օգտագործելով ցեխերի օդափոխիչ հարմարանքները և սահմանելով շենքերի ջեռուցման ճիշտ սիստեմ, մենք կարողացանք հասնել վառելանյութի զգալի տնտեսման։ Եթե 1954 թվականին շենքերի յուրաքանչյուր 100 խորանարդ մետր ծավալի տաքացման համար ծախսվեց միջին հաշվով 957 կգ վառելանյութ, ապա 1959 թվականին այդ ծախսը կազմեց ընդամենը 658 կիլոգրամ։

Էլեկտրաէներգիայի և վառելանյութի տնտեսման դեռ շատ ու շատ ռեզերվներ կան և վագոնայինները որոնում են դրանք ավելի արդյունավետ օգտագործելու նոր մեթոդներ ու եղանակներ։

Լենինականի վագոնային դեպոն շոգեքարշային դեպոյից անջատվելուց հետո ուներ արտադրական խիստ աննշան միջոցներ։ Չկար վագոնների նորոգման հիմնական տեխնիկական բազա, բոլոր օպերացիաները կատարվում էին ձեռքով, տնայնագործական եղանակով։ Իսկ այժմ այդ դեպոն կատարում է երկանիվ, քառանիվ ու վեցանիվ վագոնների տարեկան, միջին ու հիմնական նորոգումներ։

Կատարվող աշխատանքների ծավալին համապատասխան ավելացել է նաև ձեռնարկության տեխնիկական ու արտադրական հզորությունը։ Եթե 1933 թվականին էլեկտրաշարժիչների ու հոսանքընդունիչների կարողությունը կազմել է 108 կիլովատ, ապա 1959 թվականին այն հասել է 482 կիլովատի, կամ, եթե 1934 թվականին ծախսվել է 36,9 հազար խորանարդ մետր խտացված օդ, ապա 1959 թվականին ծախսված օդի քանակը կազմել է 147,8 հազար խորանարդ մետր։ Արտադրական ծածկված շենքերի տարածությունը համապատասխան ժամանակամիջոցում ավելացել է 2820 քառակուսի մետրով։

Լավ ցուցանիշների են հասել անվազույգերի մշակման բնագավառում։ Մինչև 1952 թվականը վագոնային դեպոն անվազույգերը մշակում էր «Վեյլեյտ» կոչվող անվախառատային հնատիպ հաստոցի վրա, որը 24 ժամում հղկում էր երկու անվազույգերի բանդաժներ։ Նոր «Ռեֆամեդ» տիպի անվախառատային հաստոցի գործարկումից և մետաղի հատման արագընթաց մեթոդի արմատավորումից հետո 8 ժամում հղկվում է 10—12 անվազույգ։

Փայտամշակումը երկար ժամանակ դեպոյի նեղ օղակներից մեկն էր։ Փայտամշակման ցեխը ամբողջ օրը աշխատելով չէր կարողանում պահանջված քանակությամբ պատրաստի նյութեր մատակարարել վագոնահավաքման ցեխին։ Դեպոն այդ դրությունից դուրս եկավ այն ժամանակ, երբ իր ուժերով ու միջոցներով մի շարք մեխանիզմներ պատրաստեց փայտը կտրելու, հղկելու, ծածկելու և այլ պրոցեսների համար։ Ստեղծվեց փայտի տաշեղների



ու թեփի մեքենայացված ծծիչ։ Այժմ այդ ցեխի արտադրողականությունը, 1933 թվականի համեմատությամբ, բարձրացել է առնվազն 5 անգամ։

Ավազահան սարքավորման, լվացող ագրեգատի և եռացման բաքի տեղադրմամբ վերջ տրվեց անվազույգերը, վագոնարուքսերը և մյուս դետալները ձեռքով լվանալուն, որը խիստ վտանգավոր ու դժվար աշխատանք էր։ Օժանդակ բանուժը ազատված է նյութեղենը, պահեստամասերը և մյուս ծանրաքաշ բեռները ձեռքով փոխադրելուց, քանի որ այն այժմ կատարվում է դեպոյի ուժերով պատրաստված հարմարավետ սայլակների միջոցով։ Լիովին մեքենայացված են անվազույգերի բեռնման ու բեռնաթափման պրոցեսները։

Դեպոյում լայնորեն ծավալված է գյուտարարական ու ռացիոնալիզատորական աշխատանքը։ Արտադրության մեջ աշխատող յուրաքանչյուր 5 մարդուց մեկը ռացիոնալիզատոր է։ Անցած տարիներին արմատավորվել են ռացիոնալիզատորական հարյուրավոր բարձրարժեք առաջարկություններ, որոնցից ձեռնարկությունը ստացել է ոչ պակաս, քան կես միլիոն ռուբլու օգուտ։ Դեպոյի ռացիոնալիզատորների գործերը հայտնի են ո՛չ միայն Լենինականի երկաթուղային հանգույցում, այլև ամբողջ Անդրերկաթուղում։

Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացմամբ Լենինականի դեպոն առաջավոր տեղ է գրավում միության մասշտաբով։ Մի անգամ չէ, որ այդ, համեմատաբար ոչ մեծ ձեռնարկությունը հաղթող է դուրս եկել Համամիութենական սոցիալիստական մրցությունում, նվաճել է ՀԱՄԿԽ-ի ու Հաղորդակցության ճանապարհների մինիստրության փոխանցիկ դրոշը և արժանացել Համամիութենական սոցիալիստական մրցության առաջին մրցանակի։

Արտադրական խորհրդակցությունը քննարկել է նաև աշխատանքի արտադրողականության և տեխնիկական նորմավորման հարցը։ Քննարկումը ցույց տվեց, որ այդ խնդիրը հաջողությամբ կարելի է լուծել կադրերի որակավորումը բարձրացնելու, տեխնիկապես ճիշտ հիմնավորված նորմաներ մշակելու և արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու միջոցով։ Դեռ անցյալ տարվա վերջին դեպոյի ղեկավարները ձեռնամուխ եղան գործող վիճակագրական նորմաները վերանայելու և տեխնիկապես հիմնավորելու աշխատանքներին։ Առանձնացվեց տարբեր մասնագիտությունների առաջավոր բանվորների և վարպետների բրիգադա, որի անդամների համար կազմակերպվեց 5-օրյա սեմինար պարապմունք, որտեղ ինժեներա-տեխնիկական աշխատողները տվեցին անհրաժեշտ մասնագիտական ցուցումներ։ Սեմինարում մշակեցին, թե ինչ կարգով և ինչ եղանակով պետք է վերանայել աշխատանքային հնացած վիճակագրական նորմաները։ Բրիգադան մեկ ամսում վերանայեց և տեխնիկապես հիմնավորեց ավելի քան 265 նոր արտադրական նորմա, որոնք ներդրվեցին արտադրության մեջ։

Այդ միջոցառումը հնարավորություն տվեց 1959 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 4 տոկոսով։ Տեխնիկապես հիմնավորված նորմաների գործադրման շնորհիվ կրճատվեց բանվորական ուժը, ավելացավ արտադրանքի թողարկումը։ Բավական է նշել, որ 1959 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, զգալիորեն քիչ բանվորական ուժով 78 վագոն ավելի է նորոգվել։ Վագոնայինների այս նախաձեռնությունը ջերմ հավանության արժանացավ Անդրերկաթուղու աշխատողների կողմից։

Դեպոյի տեխնիկական բյուրոն նոր տնտեսական տարվա առաջին իսկ
օրերից ձեռնարկել է բոլոր վիճակագրական նորմաները տեխնիկապես հիմ-
նավորելու գործին: Արդեն վերանայվել և հիմնավորվել է ավելի քան 88 նոր-
մա: Յուրաքանչյուր նորմայի վերանայման ժամանակ հաշվի են առնվում
տեխնիկական նոր հարմարանքները, ունեցած սարքավորումների կարողու-
թյունը, ինչպես և ինժեներա-տեխնիկական և այլ աշխատողների գյուտարա-
րական և ռացիոնալիզատորական առաջարկությունները:
Այս ամենը օգնում են՝ սահմանելու ավելի պրոգրեսիվ նորմաներ, կոլեկ-
տիվի ստեղծագործական միտքն ուղղել արտադրության ռեզերվների հայտա-
բերման և օգտագործման նպատակին: Տեխնիկական կազմակերպչական ձեռ-
նարկումները պայմաններ են ստեղծում հասնել բարձր արտադրողականու-
թյան, աշխատել շահութաբեր: Դեպոյի կոլեկտիվը անցյալ տարի գերակա-
տարեց վագոնների պլանային նորոգման առաջադրանքը: Աշխատանքի ար-
տադրողականությունը բարձրացել է 8,7 տոկոսով, նախատեսված 7 տոկոսի
փոխարեն, զգալիորեն իջել է նորոգումների ինքնարժեքը: Արտադրության
կազմակերպման տարբեր օղակներում կիրառելով ինչպես տրանսպորտի,
այնպես էլ դեպոյի առաջավորների հարուստ փորձը, զգալի հաջողությունների
է հասել գնացքների տեխնիկական զննման ցեխի կոլեկտիվը: Վագոնային-
ները ապահովեցին բոլոր գնացքների չվացուցակային երթևեկությունը,
ուղարկվող և ընդունվող բոլոր գնացքների տեխնիկական զննման ժամանակը
կրճատելով 12 տոկոսով:
Առավել բարձր ցուցանիշների է հասել վարպետ Ա. Սարգսյանի հերթա-
փոխը: Խտացրած գրաֆիկով, առանց վագոնը գնացքի կազմից անջատելու,
նրա բրիգադան նորոգել է ավելի քան 240 վագոն: Աշխատանքին մեծ չափով
նպաստել է արտադրական ցեխերում նոր մարքավորումների տեղադրումը:
Միայն 1957 թվականին վագոնների հավաքման ցեխում տեղադրվեց և շահա-
գործման հանձնվեց էլեկտրական շարժական կռունկը, որի շնորհիվ աշխա-
տանքի արտադրողականությունը բարձրացավ 8—10 տոկոսով:
Արտադրական խորհրդակցության որոշումների կիրառման շնորհիվ ան-
ճանաչելի է դարձել դեպոյի ավտոմատ-արգելակների տեխնիկական զննման
ցեխը: Ձեռք են բերվել մի շարք նոր հարմարանքներ, ճնշված օդի միջոցով
աշխատող շատ գործիքներ ու մեխանիզմներ, համարյա թե մեխանիզացիայի
են ենթարկվել օդաբաշխիչների նորոգման տեխնոլոգիական պրոցեսները,
ցեխն արդեն հնարավորություն ունի նորոգելու Մատրոսովի նոր, կատարելա-
գործված 135 օդաբաշխիչը. այս ամենի շնորհիվ զգալիորեն բարձրացել է
ցեխի արտադրողականությունը. բարձր ցուցանիշների են հասել փականա-
գործներ՝ Պողոսյանը, Բարսեղյանը, Հովհաննիսյանը. օրվա նորման նրանք
կատարում են 150—180 տոկոսով:
Խորհրդակցության ուշադրությունից չեն վրիպել նաև արտադրա-ֆինան-
սական հարցերը: Քննարկվել է, հատկապես, գերածախսով աշխատող ցեխերի
հարցը, կայացվել են որոշումներ, որոնց շնորհիվ դեպոյականները չունեն
ոչ մի գերածախս. ընդհակառակը, ամեն ամիս յուրաքանչյուր ցեխի վարպետ
իր ցեխի կոլեկտիվի ուժերով ձեռք բերած տնտեսման 3 տոկոսը պարգևի
կարգով բաժանում է իր ցեխի առաջավոր բանվորներին: Դեպոյի կոլեկտիվը
պայքարելով նյութեղենի և բանվորական ուժի կորուստների դեմ, 1959 թվա-
կանի ընթացքում տնտեսեց ավելի քան 480 հազար ռուբլի:



Դեպոյի պարտիական կազմակերպության, արտադրական խորհրդակ-
ցության ուշադրության կենտրոնում են կոմունիստական աշխատանքի բրի-
գադաները: Գործում են կոմունիստական աշխատանքի յոթ բրիգադա: Ան-
վանի փականագործ Մանուկյանի բրիգադան տարվա առաջադրանքը կատա-
րել է 10 ամսում, պլանից դուրս տալով 30 հազար ռուբլու արտադրանք, այն
էլ առաջին կարգի: Մանուկյանը դեպոյում հայտնի է որպես անվանի ռացիո-
նալիզատոր: Նա իր սեփական ռացիոնալիզատորական առաջարկությունների
շնորհիվ մեքենայացրել է ավտոմատ կցարկման գլխիկների հետ կապված շատ
աշխատանքներ, որի շնորհիվ բրիգադայի աշխատանքի արտադրողականու-
թյունը բարձրացել է 12 տոկոսով. ավելին, նրա առաջարկության շնորհիվ
բրիգադան իջեցրել է արտադրանքի ինքնարժեքը:
Ավելի բարձր արտադրական ցուցանիշներով են աշխատում ավտոմատ-
արգելակների տեխնիկական զննման և նորոգման ցեխի՝ Ածիկյանի կոմու-
նիստական աշխատանքի բրիգադան. Ածիկյանը ռացիոնալիզատոր է, ունի
10-ից ավելի առաջարկություններ, որոնք կրկնակի անգամ բարձրացրել են
բրիգադայի աշխատանքի արտադրողականությունը: Կոմունիստական աշխա-
տանքի բրիգադաների անդամները համառորեն բարձրացնում են իրենց որա-
կավորումը, հարստացնում գիտելիքները: Կոմունիստական աշխատանքի և
հարվածայնության պատվավոր կոչման համար պայքարում են դեպոյի բոլոր
աշխատամասերը և առանձին աշխատողներ:
Յոթժամյա աշխատանքային օրվա անցնելու կապակցությամբ արտա-
դրական խորհրդակցությունում որոշվեց անցկացնել աշխատանքի հասա-
րակական ստուգատես: Այն ավարտվելուց հետո արտադրական խորհրդակցու-
թյունը ստուգատեսի արդյունքները դրեց քննարկման և կայացրեց մի շարք
որոշումներ. օրինակ, ցեխերի ծանր դետալների փոխադրական աշխատանք-
ներն արագացնելու նպատակով որոշվեց արագացնել նոր ստացված էլեկտրա-
կան սայլակը շահագործման հանձնելու գործը, գազաճնշման դազգահը տե-
ղափոխել օժանդակ ցեխի արհեստանոցը, զոդողների աշխատանքային պայ-
մանները բարելավելու համար:
Հյուսների նախապատրաստական ցեխի աշխատանքի թողունակությունը
բարձրացնելու նպատակով արտադրական խորհրդակցությունը անհրաժեշտ
համարեց տեղադրել փայտամշակման դազգահ. օժանդակ բանվորների թիվը
կրճատելու նպատակով որոշվեց բոլոր ցեխերի օժանդակ բանվորներին միա-
վորել մի բրիգադայում:
Իր գոյության տարիներին վագոնային դեպոն անցել է ստեղծագործ աշ-
խատանքի բեղմնավոր ուղի: Տարակույս չկա, որ նրա յուրաքանչյուր անդամ
այսուհետև ևս կաշխատի ավելի մեծ էնտուզիազմով, կպայքարի տեխնիկա-
տնտեսական առավել բարձր ցուցանիշների հասնելու համար:

# ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ ԵՎ ԴԱՍԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ

## ՄՈՆՈՊՈԼ ԳԻՆ ԵՎ ՄՈՆՈՊՈԼ ՇԱՀՈՒՅԹ

*Մոնոպոլ գների և մոնոպոլ բարձր շահույթի մասին լրիվ հասկացողություն կազմելու համար չափազանց կարևոր է ճիշտ պատկերացում ունենալ մոնոպոլիայի մասին, որը ժամանակակից կապիտալիզմի՝ իմպերիալիզմի ամենախոր տնտեսական հիմքն է։*

*Կապիտալիստների ստացած շահույթի մեծությունը կախված է ոչ միայն բանվորների շահագործման աստիճանից, այլև իրացվող ապրանքների գների մակարդակից։ Դրանով է բացատրվում, որ կապիտալիստ-ձեռնարկատերերի տնտեսական քաղաքականության հիմնական ուղեցույցը հանդիսանում է գնագոյացումը, իսկ նպատակը՝ գերշահույթը։ Այդ հավասարաչափ կերպով վերաբերում է ինչպես մինչմոնոպոլիստական, այնպես էլ մոնոպոլիստական կապիտալիզմին։*

*Անհրաժեշտ է նշել, որ կապիտալիզմի զարգացման մոնոպոլիստական (իմպերիալիզմի) ստադիայում գնագոյացումը և հավելյալ արժեքի (շահույթի) բաշխումը որոշակիորեն փոփոխման են ենթարկվում։ Չնայած նրան, որ արժեքի, հավելյալ արժեքի և միջին շահույթի օրենքները գործում են նաև մոնոպոլիստական կապիտալիզմի ժամանակաշրջանում, սակայն մոնոպոլիայի տիրապետության հետևանքով նրանք ստանում են նոր դրսևորում։ Եթե հին կապիտալիզմի համար բնորոշ էր ազատ շուկայական գինը, որը տատանվում էր արտադրության գնի (արտադրության ծախսերին գումարած միջին շահույթը) շուրջը, ապա նորագույն կապիտալիզմի, իմպերիալիզմի ժամանակաշրջանի համար հատուկ է մոնոպոլ բարձր գինը, որն ավելի մեծ է, քան ազատ շուկայական գինը։*

*Մոնոպոլ բարձր գինը, որն ավելի մեծ է արտադրության գնից ու ապրանքի արժեքից, մոնոպոլիաների տիրապետության հետևանք է, մոնոպոլիաներ, որոնք կապիտալիզմի զարգացման իմպերիալիստական ստադիայում վճռական դեր են խաղում տնտեսական կյանքում։ Քանի որ «...արտադրության համակենտրոնացման հետևանքով մոնոպոլիայի առաջացումն ընդհանրապես կապիտալիզմի զարգացման արդի ստադիայի ընդհանուր ու հիմնական օրենքն է» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 259), ապա գնագոյացումը և շահույթի ստացման աղբյուրներն ու նրանց բաշխումը պետք է դիտել մոնոպոլիայի տեսանկյունից։*

*Եթե մինչմոնոպոլիստական կապիտալիզմը տնտեսական կյանքում իշխում էր ազատ մրցակցության սկզբունքը, ուր պայմաններ կային կապիտալի ներհոսման և արտահոսման համար և գոյանում էր միջին շահույթ ու արտադրության գին, ապա նորագույն կապիտալիզմի ժամանակ մոնոպոլիայի տիրապետությունն արգելակում է այդ։ Մոնոպոլիան, որը ժամանակակից կապիտալիզմի տնտեսական ազդակն է, հանգեցնում է մոնոպոլ բարձր գների գոյացման, որը և հանդիսանում է մոնոպոլ բարձր շահույթի հարահոս աղբյուրը։*

*Մոնոպոլիստական միությունները (կարտելներ, սինդիկատներ, տրեստներ, կոնցեռններ) հաստատելով իրենց տիրապետությունը արտադրության և իրացման ոլորտներում, կազմակերպում են իրենց ապրանքների վաճառքը նախօրոք պայմանավորված մոնոպոլ բարձր գներով։ «Կարտելները,— գրել է Վ. Ի. Լենինը,— փոխադարձ համաձայնության են գալիս վաճառքի պայմանների, վճարման ժամկետների մասին և այլն։ Նրանք իրենց միջև բաժանում են վաճառահանման մարզերը։ Նրանք որոշում են արտադրելիք արտադրանքների քանակը։ Նրանք սահմանում են գները։ Նրանք բաշխում են շահույթն առանձին ձեռնարկությունների միջև և այլն» (Երկեր, հ. 22, էջ 261)։*

*Մոնոպոլիստական միավորումները մոնոպոլ բարձր գներ սահմանելու համար ոչ միայն նախօրոք իրացման շուկաները բաշխում են իրար միջև, այլև արտադրությունը կրճատելու, արտադրանքը պահեստներում կուտակելու ու ոչնչացնելու միջոցով վաճառահանման շուկաներում ստեղծում են ապրանքային սով, որպեսզի պահպանեն բարձր գներ, ապահովեն ապրանքների իրացումը մոնոպոլ բարձր գներով։*

*Այդ նշանակում է, որ մոնոպոլիստական կապիտալիզմի հիմնական նպատակն է մոնոպոլ բարձր գների միջոցով ստանալ մոնոպոլ բարձր շահույթ։ Այստեղից հետևում է, որ հավելյալ արժեքի օրենքը որպես կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենք, մոնոպոլիստական կապիտալիզմի դարաշրջանում դրսևորվում է մոնոպոլ բարձր շահույթի ձևով։*

*Կապիտալիստական հասարակարգի արդի ժամանակաշրջանում իրացման մոնոպոլ բարձր գներից բացի գոյություն ունեն և այլ կարգի գներ, ինչպես, օրինակ, ազատ շուկայական գին, միջին բորսայական գին (մեծաքանակ առևտրի դեպքում), դեմպինգային գին (վաճառքի ցածր գին օտարերկրյա շուկաներում), մարտական կամ հարվածող գին (մոնոպոլ ցածր գնի յուրատեսակը), որը կիրառվում է ինչպես ներքին, այնպես էլ արտաքին շուկաներում, ապրանքների գնման մոնոպոլ ցածր գին և այլն։ Այդ ցածր գինը մոնոպոլիաների կողմից գործադրվում է գաղութային և տնտեսապես կախյալ երկրների նկատմամբ։*

*Ի տարբերություն դեմպինգային գնի, այսպես կոչված, մարտական կամ հարվածող գինը, որպես մոնոպոլ ցածր գին, բնորոշ է նրանով, որ այն խոշոր մոնոպոլիստների կողմից կիրառվում է՝ ինչպես ներքին, այնպես և արտաքին շուկաներում մրցակիցներին շրջանառության ոլորտից վանելու, ստիպելու համանման արտադրողներին իրենց դիրքերը զիջելու։*

*Մարտական գները ոչ միայն ցածր են արտադրագնից, այլև ինքնարժեքից (արտադրության ծախքերից), ուստի և այդօրինակ գներ կիրառող խոշոր մոնոպոլիաները որոշ և ժամանակավոր վնասներ են կրում։ Մարտական գների գործադրման ժամկետը սովորաբար կարճ է տևում և հենց որ խոշոր մոնոպոլիստներին հաջողվում է հասնել իրենց տիրապետության հաստատմանը, նրանք սկսում են վարել մոնոպոլ բարձր գների քաղաքականություն։ «Տրեստները որոշ ժամանակով գները իջեցնում են ինքնարժեքից ցածր,—*

գրում էր Վ. Ի. Լենինը,—դրա համար միլիոններ ծախսելով, որպեսզի քայքայեն կոնկուրենտին և գնեն նրա ձեռնարկությունը, նրա հումքի աղբյուրները (հանքերը, հողերը և այլն) (Երկեր, հ. 23, էջ 44—45)։ Այդ նշանակում է, որ մոնոպոլ ցածր գները ծառայում են որպես միջոց մոնոպոլ բարձր գներ սահմանելու՝ հանուն մոնոպոլ բարձր շահույթի ապահովման։

Եթե արդյունաբերական կապիտալիզմի ժամանակ գները տատանվում էին արտադրագնի շուրջը, ապա մոնոպոլիստական կապիտալիզմի տիրապետության դեպքում իրացման գները տատանվում են մոնոպոլ գների շուրջը, որը բացառապես յուրահատուկ է կապիտալիզմի զարգացման ավելի բարձր ու վերջին ստադիային, իմպերիալիզմին։

Գների դինամիկան ցույց է տալիս, որ մրցակցության հետևանքով ազատ շուկայական գներն ավելի են ենթակա անկման, քան մոնոպոլ գները։ Այդ հատկապես ցայտուն կերպով երևաց 1929—1932 թթ. ճգնաժամի ժամանակ։ Եթե 1926 թվականի գների մակարդակն ընդունենք 100 տոկոս, ապա Կանադայի տրեստների և կոնցեռնների մեծաքանակ առևտրի ապրանքների գները 1932 թվականին ընկան 34 տոկոսով, իսկ չմոնոպոլացված ձեռնարկությունների ապրանքների գները՝ 52 տոկոսով։ 1933 թվականին Գերմանիայում հումքի և կիսաֆաբրիկատների մոնոպոլ գները ընկան 16,5 տոկոսով, իսկ ազատ շուկայական գները՝ 51,5 տոկոսով։ Ընդ որում ճգնաժամերի առկայության դեպքում ավելի տուժում են ու կորցնում իրենց դիրքերը չմոնոպոլացված կապիտալիստ ձեռնարկատերերը։

Մոնոպոլ բարձր գներ սահմանելու գլխավոր պայմանները հետևյալներն են՝

1. Մոնոպոլիստական միավորների (միությունների) տիրապետության հաստատումը արտադրության և շրջանառության ոլորտներում, որը հնարավորություն է տալիս նրանց որոշ չափով ազդելու առաջարկի ու պահանջարկի հարաբերությունների վրա, շուկայում առաջ բերելու ապրանքային «սով» և ազատորեն վարելու մոնոպոլ բարձր գների քաղաքականությունը։ Կամ «գները պլանաչափորեն գցել», կողմնակիներին հարվածելու համար (աութսայդերներ—չմոնոպոլացված ձեռնարկություններ)։

2. Ապրանքների և շուկաների բաշխումը մոնոպոլիստական միություններ կողմից նշանակված խոշոր կապիտալիստ-ձեռնարկատերերի միջև՝ ապրանքների վաճառքը նախօրոք սահմանված գնով, կողմնակի ձեռնարկատերերին «վաճառահանումից զրկելը», գնորդի հետ պայմանագիր կնքելը, որ նա առևտրական հարաբերություններ ունենա բացառապես կարտելների հետ, գները պլանաչափորեն գցելը, որպեսզի ասպարեզից դուրս մղվեն մոնոպոլիային չենթարկվող ձեռնարկությունները (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 22, էջ 267)։

3. Պետական ապարատի օգտագործումը, մոնոպոլիայի սերտաճումը պետական ապարատի հետ։ Ֆինանսական օլիգարխիայի դրածոների կառավարող դերը պետական ապարատում հնարավորություն է տալիս՝ կիրառելու հովանավորման (պրոտեկցիոնիզմի) քաղաքականություն, սահմանելու բարձր մաքսեր ներմուծվող ապրանքների վրա, իջեցնելու մոնոպոլիստների կողմից արտահանվող ապրանքների տարիֆային վճարը (ինչպես երկաթուղային, այնպես էլ ծովային), սահմանելու պարգևատրումներ և անգամ գործադրելու ռազմական ուժ՝ մոնոպոլիայի շահերը պաշտպանելու համար։ Այդ մասին են



վկայում անգլո-ֆրանսիական ինտերվենցիան Եգիպտոսում 1956 թվականի աշնանը, անգլո-ամերիկյան զինված ուժերի միջամտությունը Լիբանանի, Իրաքի և Հորդանանի ներքին գործերին 1958 թվականին։

Պետական մոնոպոլիստական կապիտալիզմը ոչ միայն չի արգելակում մոնոպոլիստական միությունների կազմակերպումն ու այդ միությունների վարած գների բարձրացման քաղաքականությունը, այլև խրախուսում, պարգևատրում ու պետական ռազմական պատվերների գերակշռող մասը հատկացնում է նրանց։

Մոնոպոլ գների առաջացումը սակայն չի բացառում ազատ շուկայական գնի առկայությունը մոնոպոլիստական կպիտալիզմի ժամանակ։ Ինքնին այդ հասկանալի է, քանի դեռ գոյություն ունի արտադրության միջոցների կապիտալիստական մասնավոր սեփականություն։

Իմպերիալիզմ կամ մոնոպոլիստական կապիտալիզմ — դա մի ինչ-որ նոր ֆորմացիա չէ, այն կապիտալիզմի անմիջական շարունակությունն է, միայն նրա ավելի բարձր ստադիան, որտեղ դեռ տեղի են ունեցել որոշ որակական փոփոխություններ։

Հետևապես՝ հավելյալ արժեքի, արժեքի, կոնկուրենցիայի, արտադրության անարխիայի, միջին շահույթի օրենքները գործում են նաև մոնոպոլիստական կապիտալիզմի դարաշրջանում, միայն դրսևորման որոշ առանձնահատկություններով։ Վերցնենք արժեքի օրենքը։ Մինչմոնոպոլիստական կապիտալիզմը այդ օրենքը գործում էր ազատ շուկայական գների խաղի միջոցով, իսկ մոնոպոլիայի տիրապետության դարաշրջանում, որպես ապրանքափոխանակության կարգավորիչ, հանդես է գալիս ոչ միայն ազատ շուկայական գների, այլև մոնոպոլ գների մեխանիզմի միջոցով։

Ինչպես հայտնի է, արժեքի օրենքը պահանջում է ապրանքափոխանակություն իրականացնել համարժեքային փոխհատուցման սկզբունքի համաձայն, այսինքն՝ ըստ ապրանքների մեջ նյութականացած հասարակականորեն անհրաժեշտ հավասարաչափ աշխատանքի։ Սակայն ապրանքների փոխանակության համարժեքային փոխհատուցման այդ սկզբունքը խիստ խախտվում է մոնոպոլիայի տիրապետության հաստատման և նրա վարած գների քաղաքականության հետևանքով, որն արտահայտվում է «մոնոպոլ բարձր» և «մոնոպոլ ցածր» գների միջոցով։ Մոնոպոլիան հանգեցնում է այն բանին, որ ապրանքները վաճառվում են արժեքից, արտադրագնից ու շուկայական գնից բարձր գներով, որոնք տարածվում են ոչ միայն տվյալ երկրի սովորական սպառողների, գաղութային երկրների, տնտեսապես կախյալ երկրների, այլև մոնոպոլիստների մեջ չմիավորված ձեռնարկատերերի վրա։

Սակայն որքան էլ մոնոպոլիայի ուժով խախտվի ապրանքների համարժեքային փոխհատուցման սկզբունքը, հասարակական մասշտաբով ապրանքների մոնոպոլ գների և ազատ շուկայական գների գումարը միշտ հավասար է ապրանքների արժեքների գումարին։ Դա նշանակում է, որ մոնոպոլ գների միջոցով սոսկ տեղի է ունենում շահույթի անհամաչափ բաշխումը հօգուտ մոնոպոլիստների։

Դեռ Կարլ Մարքսը գրել է. «Որոշ ապրանքների մենաշնորհ գինը ուրիշ ապրանք արտադրողների շահույթի մի մասը սոսկ կփոխադրեր մենաշնորհ գին ունեցող ապրանքների վրա։ Անուղղակի կերպով տեղական խախտում կառաջանա հավելյալ արժեքը արտադրության տարբեր ոլորտների միջև բաշ-

խելու գործում, բայց նման խախտումն անփոփոխ կթողներ իր իսկ հավելյալ արժեքի սահմանը» (Կ. Մարքս, «Կապիտալ», հ. III, մաս II, էջ 402):

Կ. Մարքսի այդ դրույթը ցույց է տալիս, որ քանի մոնոպոլ բարձր գների հիմնական աղբյուրը հանդիսանում է հավելյալ արժեքը, ապա արժեքի օրենքը գործելով մոնոպոլ և ազատ շուկայական գների միջոցով միայն, կարող է բաշխել և վերաբաշխել շահույթը տարբեր ապրանքարտադրողների միջև:

Ինչ վերաբերում է արտադրագնին (արտադրության ծախքերին գումարած միջին շահույթը), ապա այն, կապիտալիզմի ամենաբարձր ստադիայում նույնպես հանդես է գալիս, քանի որ մոնոպոլիան չի կարող վերացնել կապիտալի ներհոսումն ու արտահոսումը և հետևապես միջին շահույթի առաջացումը:

Չնայած նրան, որ մոնոպոլիան ուղղված է ազատ կոնկուրենցիայի դեմ, նա չի կարողանում վերացնել այն, քանի որ արտադրության միջոցների կապիտալիստական մասնավոր սեփականությունն անխուսափելի է դարձնում դա: Բացի այդ, աճում են նոր, կողմնակի ձեռնարկություններ, որոնց համար բնորոշ է գների ազատ խաղի ու կոնկուրենցիայի սկզբունքը:

Իմպերիալիզմի դարաշրջանում կոնկուրենցիան երևան է գալիս տվյալ երկրի մոնոպոլիստների միջև, ինչպես, օրինակ՝ ԱՄՆ-ում, «Ջեներալ Մոտորս», «Ֆորդ» և «Կրեյսլեր» ավտոմոբիլային մոնոպոլիաների միջև, փոխարինող ապրանքներ արտադրողների միջև (ածխի, նավթի, գազի և այլն), մոնոպոլիայի և կողմնակի (չմնոպոլացված) ձեռնարկությունների միջև, մոնոպոլիայի ներսում՝ հանուն բաժնեմուծումների (կվոտի) և հետևապես շահույթի:

Այսպիսով, քանի որ մոնոպոլ բարձր գինը հանգեցնում է մոնոպոլ բարձր շահույթի ստացման, ապա մոնոպոլիան հանդիսանում է նրա տնտեսական հիմքը: Արդ տեսնենք որո՞նք են մոնոպոլ բարձր շահույթների աղբյուրները:

Մոնոպոլ բարձր շահույթի ամենագլխավոր աղբյուրը հավելյալ արժեքն է, որը ստացվում է բանվորների շահագործման միջոցով:

Կապիտալիզմի զարգացման ամենաբարձր ստադիայում, երբ պրոլետարիատի դասակարգային ու ռևոլյուցոն ինքնագիտակցությունը մեծ չափով բարձրացել է, երբ նրա պայքարը ղեկավարում են կոմունիստական ու բանվորական պարտիաները, կապիտալիստներին դժվար է դիմել շահագործման բացարձակ ձևերի, ուստի կիրառվում են ավելի քողարկված ձևեր: Չնայած նրան, որ կապիտալիստական երկրներում օրենսդրական կարգով սահմանված է ութժամյա աշխատանքային օր, սակայն աշխատատար պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման, ինչպես նաև արտադրական չափազանց բարձր նորմաներ սահմանելու միջոցով սաստկացել է բանվորների աշխատանքի լարվածության և հետևապես շահագործման աստիճանը: Բուրժուական երկրների պաշտոնական տվյալների համաձայն, ԱՄՆ-ի լեռնային և վերամշակման արդյունաբերության մեջ հավելյալ արժեքի նորման (շահագործման աստիճան) 1929 թվականի 210 տոկոսից 1947 թվականին բարձրացել է մինչև 260 տոկոսի, իսկ որոշ ճյուղերում կազմել է շուրջ 350 տոկոս (թեթև արդյունաբերության ճյուղերում):

Անգլիացի տնտեսագետ Ջոն Իթոնի տվյալների համաձայն, 1950 թվականին հավելյալ արժեքի նորման անգլիական արդյունաբերության մեջ կազմում էր 300 տոկոս, իսկ Արևմտյան Գերմանիայում՝ 320 տոկոս: Այդ թվերը վկա-



յում են այն մասին, որ կապիտալիստների ստացած շահույթի գումարը մոտ 3 անգամ գերազանցում է բանվորների աշխատավարձի ֆոնդին:

Մոնոպոլ բարձր շահույթի կարևոր աղբյուրներից է հանդիսանում իրական աշխատավարձի իջեցումը, որն իրականացվում է երկու ճանապարհով. մի կողմից՝ լայն սպառման առարկաների գների բարձրացման և մյուս կողմից՝ անվանական աշխատավարձի հարաբերական իջեցման ճանապարհով: Այսպես, օրինակ, 1947—1952 թթ. ընթացքում Ֆրանսիայում հացի գինը բարձրացել է 2 անգամ, միսը՝ 1,8, իսկ կարագինը՝ 1,9 անգամ: Միայն 1958 թվականին կենսարժեքը բարձրացել է 15 տոկոսով: Անգլիայում համապատասխանաբար բարձրացել է 1,9, 1,3 և 2,2 անգամ: Արևմտյան Գերմանիայում 1958 թվականին կենսարժեքն աճել է 3,5 տոկոսով, նախորդ տարվա համեմատությամբ: Բուրժուական վիճակագրության պաշտոնական տվյալների համաձայն ԱՄՆ-ում 1946—1959 թվականների ընթացքում կենսարժեքը բարձրացել է 60 տոկոսով, մինչդեռ կորպորացիաների շահույթը 1939 թվականի 6,4 միլիարդ դոլարից 1957 թվականին բարձրացել է 13,4 միլիարդ դոլարի: Դա նշանակում է, որ 1957 թվականին խոշոր մոնոպոլիստների շահույթը, 1939 թվականի համեմատությամբ ավելացել էր մոտ 7 անգամ:

Մոնոպոլ բարձր շահույթի ստացման երրորդ կարևոր աղբյուրը մանր արտադրողների շահագործումն ու քայքայումն է:

Արդյունաբերական ապրանքների բարձր գների սահմանումը (գյուղատնտեսական մեքենաներ և գործիքներ, պարարտանյութեր, սպառման առարկաներ և այլն) և գյուղատնտեսական ապրանքների ու հումքի ցածր գների սահմանումը մոնոպոլիստներին հնարավորություն են տալիս յուրացնելու մանր արտադրողների եկամուտների զգալի մասը: Դրանով է բացատրվում, որ հետպատերազմյան շրջանում ԱՄՆ-ում խիստ ուժեղացել է ֆերմերային տնտեսությունների աղքատացումն ու քայքայումը:

Ամերիկյան տնտեսագետ Վ. Պերլոյի տվյալների համաձայն, միայն տասը տարվա ընթացքում (1947—1957 թթ.) ֆերմերային տնտեսությունների քանակը 5873 հազարից իջել է 4850 հազարի, այսինքն՝ 1023 հազար տնտեսություններ աղքատացման հետևանքով քայքայվել են:

Մոնոպոլ բարձր շահույթի չորրորդ կարևոր աղբյուրը ապրանքների ոչ համարժեքային փոխանակությունն է, որը խոշոր մոնոպոլիստները կիրառում են տնտեսապես հետամնաց երկրների նկատմամբ: Այդպես է ձեռք բերվում՝ քրոմնիկելը Թուրքիայից, կաուչուկը՝ Ցեյլոնից և Ինդոնեզիայից, սուրճը և բամբակը՝ Ուգանդայից: 1952 թվականին անգլիական մոնոպոլիստները Ուգանդայից գնել են սուրճը՝ տոննան 200 ֆունտ ստեռլինգով, իսկ այլ շուկաներում վաճառել են 512 ֆունտ ստեռլինգով, Գաննայից մեկ տոննա կակաոյի հատիկը գնել են 128 ֆունտ ստեռլինգով ու վաճառել արտաքին շուկաներում 294 ֆունտ ստեռլինգով, այսինքն՝ 2,3 անգամ ավելի թանկ: ԱՄՆ-ը 1948 թվականին Գոնդուրասին վաճառած մեկ մետր բամբակեղենի գործվածքի համար ստացել են 3,5 անգամ ավելի բամբակ, քան 1939 թվականին: Այդ նույն թվականին Նոր Զելանդիան մեկ մետր բամբակեղեն գործվածքի դիմաց անգլիական մոնոպոլիստներին տվել է 2,6 անգամ ավելի միս, քան 1938 թվականին:

Կապիտալի արտահանումը մի կողմից, և թույլ երկրներին ցույց տրված այսպես կոչված տնտեսական օգնությունը մյուս կողմից, ստեղծում են արտա-

նյալ պայմաններ՝ խոշոր տերությունների մոնոպոլիստների ապրանքների իրացման համար։ Հատկապես այդ բնորոշ է ԱՄՆ-ի համար, որոնց մոնոպոլիստական միությունները տնտեսապես թույլ, գաղութային և կախյալ երկրներում վաճառելով իրենց ապրանքները մոնոպոլ բարձր գներով, գնում են հումք և պարենային ապրանքներ մոնոպոլ ցածր գներով։ Եթե 1957 թվականին արդյունաբերական ապրանքների և սարքավորումների գները բարձրացել էին 2,3 տոկոսով, ապա հումքի և պարենային ապրանքների գները իջել էին 7,5—10 տոկոսով։ Միայն 1958 թվականին ԱՄՆ-ի մոնոպոլիստների շահույթը կազմեց 36,4 միլիարդ դոլար։

Մոնոպոլ բարձր շահույթի ստացման գործում չափազանց խոշոր նշանակություն ունի հումքի և աշխատուժի էժան ձեռքբերումը, որը խիստ կերպով նպաստում է արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը և շահութաբերության բարձրացմանը։

Ամերիկյան «Մեգեզին օֆ Ուոլ-Սթրիտ» ժուռնալի տվյալների համաձայն 1946—1955 թթ. Սաուդական Արաբիայից, Իրաքից, Կուվեյտից արտահանված է 146 միլիոն տոննա նավթ, որը բերել է հսկայական շահույթ անգլո-ամերիկյան մոնոպոլիաներին։ Միմիայն 1955 թվականին նրանք ստացել են 1850 միլիոն դոլար շահույթ։ Չափազանց ուշագրավ է այն, որ միայն «Կուվեյթ Օյլ» կոմպանիայի զուտ եկամուտը կազմել է 530 միլիոն դոլար, որը հինգ անգամ գերազանցում է ներդրված կապիտալի գումարին։ Եթե ամերիկյան «Ստանդարտ օյլ կոմպանիայի» շահույթի նորման բուն երկրում կազմում է 11 տոկոս, ապա մերձավոր և միջին արևելքում՝ 33 տոկոս։ Դրանով է բացատրըվում է ԱՄՆ-ի կապիտալի արտահանման մեծ աճը օտար երկրներում։ Կապիտալի արտահանման ընդհանուր գումարը 1957 թվականին հասավ մոտ 55—56 միլիարդ դոլարի։

Մոնոպոլ բարձր շահույթի կարևոր աղբյուրներից են հանդիսանում պետական բյուջեի բաշխումը և շահույթն ըստ կվոտների (ապրանքների մուծման միավոր) բաժանման սիստեմը, ընդ որում, կվոտների ճնշող քանակը կազմում է խոշոր կապիտալիստների բաժինը։ Մոնոպոլիայի սերտաճումը պետական ապարատի հետ մի կողմից, մոնոպոլիայի առանձնահատուկ ձևերի, այսպես կոչված ներկայացուցչական օրգանների ստեղծումը, մյուս կողմից, հնարավորություն են տալիս խոշոր մոնոպոլիաներին ավելի հզորանալու։ Այդպիսի ներկայացուցչական միություններ են հանդիսանում՝ «Արդյունաբերողների ազգային ասոցիացիան» ԱՄՆ-ում, «Բրիտանական արդյունաբերողների ազգային միությունը», «Մեքենաշինարարների բրիտանական ասոցիացիան» Անգլիայում, «Գերմանական արդյունաբերողների միությունը» և այլն։ Համանման մոնոպոլիստական «ընկերություններ» գոյություն ունեն գրեթե բոլոր կապիտալիստական երկրներում։

Այդ ներկայացուցչական կազմակերպությունները ունեն իրենց պաշտոնական ներկայացուցիչները պետական ապարատում, իսկ պետության ներկայացուցիչները՝ նրանց օրենսդրական օրգաններում։

Մոնոպոլիայի այդ յուրահատուկ ձևերը առավելագույն չափով օգտագործվում են խոշոր ֆինանսական արքաների կողմից մոնոպոլ բարձր շահույթ ստանալու համար։ Օգտագործելով ըստ կապիտալի մեծության ընտրական սիստեմը (ձայների քանակի սահմանումը ըստ կվոտների), խոշոր մոնոպոլիստները ղեկավար դիրքեր են գրավում հիշյալ ասոցիացիաների օրենսդրա-



կան օրգաններում և օգտագործում այն իրենց շահերի օգտին։ Որպես կանոն, հիշյալ ներկայացուցչական կազմակերպությունների խորհուրդների նախագահներ ընտրվում են ֆինանսական տուզերը, իսկ ապրանքների իրացման գործակալությունների անդամները նշանակվում են խոշոր կապիտալիստներից։

Խոշոր մոնոպոլիաներն այդ ներկայացուցչական օրգանների և պետական ապարատում տեղավորված իրենց դրածոների միջոցով ձեռք են բերում ոչ միայն պետական ռազմական պատվերների գերակշռող մասը, այլև վաճառում ռազմական արտադրանքը մոնոպոլ բարձր գնով։

ԱՄՆ-ում ֆինանսական օլիգարխիայի այնպիսի հայտնի ներկայացուցիչներ, ինչպիսիք են՝ Հարիմանը, Ֆորրեստոլը, Լովետը, Դրեյպերը, Ռոյալը, Օլդրիչը (Ռոքֆելլերի աներոջ որդին) և ուրիշներ գրավել են և այժմ էլ գրավում են պատասխանատու պետական պաշտոններ։ Էյզենհաուերի կառավարության կազմի մեջ նախորդ կառավարության համեմատությամբ երկու անգամ ավելի շատ բիզնեսմեններ են ընդգրկված։ 1954 թվականին նավթային արքա Ռոքֆելլերի «գործարար ընտանիքի» անդամ Նելսոն Ռոքֆելլերը նշանակվեց արտաքին գործերի գծով Էյզենհաուերի խորհրդատու։ Պետական քարտուղարի պաշտոնը վարում էր Ջոն Ֆոստեր Դալլեսը, որը երկար ժամանակ հանդիսացել է Ռոքֆելլերի իրավաբանական տան դիրեկտորը։ Այդ ֆինանսական արքայի նախկին խորհրդատու ադմիրալ Ստրաուսը ատոմային էներգիայի հանձնաժողովի նախագահն էր։ Ռոքֆելլերի խումբը գերակշռող դեր է խաղում ազգային անվտանգության խորհրդում, որը երկրի տնտեսական և քաղաքական կյանքում վճռական դեր է խաղում։ ԱՄՆ-ի ներկա վիցե պրեզիդենտ Նիքսոնը սերտ կերպով կապված է Կալիֆորնիայի ֆինանսական խմբավորման հետ։ Ազգային անվտանգության կոմիտեի 13 անդամներից երկուսը հանդիսանում են Մորգանի դրածոները։ Խոշոր բանկիր և արդյունաբերող Հարրիմանը իր թեկնածությունն է ներկայացրել սպասվելիք պրեզիդենտական ընտրություններին։ Սենատորների և կոնգրեսմենների բացարձակ մեծամասնությունը բաղկացած է ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչներից և նրանց դրածոներից։ 1955 թվականին ամերիկյան գործադիր իշխանության գլուխ կանգնած 58 հոգուց 36-ը հանդիսանում էին ֆինանսական օլիգարխիայի ներկայացուցիչները։ Էյզենհաուերի առաջին կառավարության կազմի 272 բարձր կառավարական գործիչներից 150 հոգի խոշոր ձեռնարկատերեր էին։

Այս ամենը վկայում են, որ ԱՄՆ-ի, ինչպես նաև այլ կապիտալիստական երկրների պետական ապարատը ամբողջապես գտնվում է խոշոր մոնոպոլիաների ձեռքում և այդ օգտագործվում է նրանց կողմից պետական ռազմական պատվերներ ստանալու և այդ միջոցով յուրացնելու պետական բյուջեի զգալի մասը։ Հետպատերազմյան շրջանում ստեղծված բազմապիսի ռազմական պակտերի սիստեմը խոշոր տերությունների խաղաղ էկոնոմիկան փոխադրել է ռազմական ռելսերի վրա և դրանով իսկ մոնոպոլիստների համար լայն հնարավորություններ է ստեղծել մոնոպոլ բարձր շահույթ ստանալու։

Բացի այդ, որպես կանոն, մոնոպոլիստական զանազան միությունների (կարտելների, սինդիկատների, տրեստների, կոնցեռնների) վարչությունների դիտորդական և խորհուրդների վերստուգիչ հանձնաժողովների անդամներ են ընտրվում խոշոր կապիտալի ներկայացուցիչները, որոնք ոչ միայն վարպետորեն օգտագործում են հիշյալ միությունների օրգանները, այլև ստանում են

արտոնյալ և անվանական ակցիաներ, որոնք նույնպես հանդիսանում են մոնոպոլ բարձր շահույթի աղբյուր, քանի որ նրանց բերած դիվիդենտը (եկամուտը) անհամեմատ ավելի բարձր է, քան սովորական ակցիաների բերած դիվիդենտը։

Ամերիկյան խոշոր մոնոպոլիաներից մեկը, «Ջեներալ Մոտորսը», որը երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում պետությունից ստացավ ռազմական պատվերներ՝ 13,5 միլիարդ դոլար գումարով, կարողացավ 13 անգամ ավելացնել իր զուտ շահույթը։

Հատկապես արտասովոր կերպով աճեց «Ջեներալ Դայնեմիկ» կորպորացիայի շահույթը, որը հիմնականում արտադրում է ռազմական ապրանքներ (ատոմային և ջրասուզանավեր, ռազմական ինքնաթիռներ, տանկեր և այլն)։ Միայն 30 ամսվա ընթացքում (1955 թ. հունվարից մինչև 1957 թ. հունիս ամիսը) նրա ռազմական պատվերների ընդհանուր գումարը կազմեց 2,36 միլիարդ դոլար։ Տասը տարվա ընթացքում (1947—1957 թթ.) նրա զուտ շահույթն ավելացավ 31 անգամ։

Վերը շարադրվածը վկայում է այն մասին, որ հավելյալ արժեքը, որպես կապիտալիզմի հիմնական տնտեսական օրենք, կապիտալիզմի իմպերիալիստական ստադիայում դրսևորվում է մոնոպոլ բարձր շահույթի ձևով։ Մոնոպոլ բարձր շահույթի ստացման տնտեսական պայմանը մոնոպոլիան է։ Մոնոպոլիայի տիրապետության հաստատումը արտադրության և շրջանառության ոլորտներում հնարավորություն է տալիս վարելու բարձր գների քաղաքականությունը, էժան հումքի աղբյուրների ձեռքբերման, ոչ համարժեքային փոխանակության, բանվորների աշխատավարձի իջեցման, ռազմական էկոնոմիկայի զարգացման, պետական ու ռազմական պատվերների անհավասարաչափ բաշխման քաղաքականությունը։ Դրանք են մոնոպոլ բարձր շահույթի հիմնական աղբյուրները։

Մոնոպոլիան, որը հետապնդում է բարձր շահույթի ստացում, խափանում է արտադրողական ուժերի զարգացումը։ Այն պայքարն ու մրցավազքը, որը տեղի ունի կապիտալիստների միջև հանուն մոնոպոլ բարձր շահույթի, ավելի ու ավելի է սրում այն խորացող հակասությունները, որոնք գոյություն ունեն մոնոպոլացված և չմոնոպոլացված ձեռնարկությունների, հենց իրենց մոնոպոլիաների, իմպերիալիստական տերությունների, սրանց և գաղութային երկրների միջև։ Այն չտեսնված մրցավազքը, որը կապիտալիզմի զարգացման մոնոպոլիստական ստադիայում ավելի ու ավելի ուժեղ բնույթ է ընդունում հանուն մոնոպոլ բարձր շահույթի, արագացնում է ռևոլյուցիոն ճգնաժամը և հետևապես կապիտալիզմի կործանումը։

Մ. ԶԱՔԱՐՅԱՆ

---



## ՎԻՃԱՐԿԵԼԻ ԴՐՈՒՅԹՆԵՐ

1920 թվականի մայիսյան ապստամբությունը Հայաստանի բանվորների ու գյուղացիների ազատագրական պայքարի հերոսական դրվագներից մեկն է։ Հայաստանի աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ զինված պայքարի դրոշ պարզելով դաշնակների ու անգլո-ամերիկյան գաղութարարների դեմ, մահու և կենաց կռվում արտահայտեցին իրենց անխախտ վճռականությունը՝ հաստատել Հայաստանում Սովետական իշխանություն։ Դա հերոսական մի էպոպեա էր, որի գիտական ուսումնասիրությունն ու լուսաբանումը սովետահայ պատմագիտության կարևոր խնդիրներից մեկն է։ Ապստամբությունը կազմակերպելու և ղեկավարելու գործում բոլշևիկյան կազմակերպությունների դերի, աշխատավորների անձնազոհ պայքարի, բոլշևիկ կազմակերպիչների և հերոս նահատակների կյանքի բազմակողմանի ուսումնասիրությունը, ինչպես նաև ապստամբության բնույթի, շարժիչ ուժերի և Արմենկոմի թույլ տված սխալների խոր վերլուծությունը ո՛չ միայն գիտական, այլև հսկայական դաստիարակչական նշանակություն ունի։

Առաջին հարցը, որի ճիշտ բնորոշումը չափազանց կարևոր նշանակություն ունի մայիսյան ապստամբության գնահատման համար, այն է, թե Հայաստանում 1920 թվականի մայիսյան զինված ապստամբության համար պայմաններ կայի՞ն, թե՞ ոչ, այսինքն՝ գոյություն ունե՞ր ռևոլյուցիոն սիտուացիա, կայի՞ն նրա հաղթանակի օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմաններ։ Շ. Ամիրխանյանի հոդվածից («Լենինյան ուղիով» № 7, 1959 թ.) այն տպավորությունն է ստացվում, որ Հայաստանում այդ օրերին չկար ռևոլյուցիոն սիտուացիա։ Նա գրում է. «...վերջին տարիներս պատմագրության մեջ առանց տեսական ընդհանրացումների և առանց լուրջ վերլուծության լայնորեն տարածվում է մի տեսակետ, որը գտնում է, թե 1920 թ. մայիսին Հայաստանում բարենպաստ պայմաններ կային, որպեսզի բոլշևիկները գրավեին իշխանությունը, թե դրա համար ամեն ինչ արված էր, ուժերը բավարար էին, բայց վճռական րոպեին ապստամբության ղեկավարներին պակասեց վճռականությունն ու համարձակությունը»։ Այնինչ բազմաթիվ փաստերով և պատմական փաստաթղթերով ապացուցված է, որ Հայաստանում դեռ 1920 թվականի սկզբներին տակավին գոյություն ուներ տնտեսական ու քաղաքական խոր ճգնաժամ, խորանում էր արդյունաբերության, գյուղատնտեսության և տրանսպորտի քայքայումը, փլուզումը. աշխատավորական մասսաները գտնվում էին տնտեսական և քաղաքական ճնշման ծայրահեղ վատ պայմաններում։ Շարունակվում էին ազգամիջյան կոտորածներն ու ջարդերը, դաշնակցական մաուզե-

րիստների կողմից ժողովրդին կողոպտելն ու թալանը, նրա նկատմամբ հալածանքներն ու բարբարոսությունները։ Այդ ամենըասում են այն մասին, որ 1920 թվականի գարնանը Հայաստանն ապրում էր ռևոլյուցիոն ճգնաժամ. Բանվորներն ու գյուղացիները այլևս անկարող էին դիմանալ դաշնակցական բռնապետական կարգերի սարսափներին և անխուսափելիորեն պիտի բռնեին և իրոք բռնեցին ռևոլյուցիայի՝ զինված ապստամբության ճանապարհը։

Հաշվի առնելով երկրում ռևոլյուցիոն սիտուացիայի առկայությունը, Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջին կոնֆերենցիան 1920 թվականի հունվարին զինված ապստամբության նախապատրաստման կուրս է վերցնում։ Ելնելով ստեղծված իրադրությունից՝ կոնֆերենցիան «Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը համարում է նախապատրաստել մասսաներին և երբ Կարմիր Բանակի զորամասերը մոտենան Հայաստանի սահմաններին, զինված ապստամբությամբ տապալել դաշնակների ռեժիմը և Հայաստանում հաստատել սովետական իշխանություն»[1]։ Իր հոդվածում Շ. Ամիրխանյանը կասկածի տակ է առնում կոնֆերենցիայի կողմից ընդունված այդ բանաձևը։ Նա գրում է, որ «Արմենկոմն իր մեծամասնությամբ, Կասյանի գլխավորությամբ ժխտում էր, թե կոնֆերանսն ընդունել է հիշյալ բանաձևը»։ Երբ Կասյանը, որպես Արմենկոմի ղեկավարներից մեկը, ձգտում է ժխտել կոնֆերենցիայի կողմից ընդունված ճիշտ գիծը, բանաձևը՝ դա հասկանալի է, որովհետև դեռ կոնֆերենցիայից առաջ և նրանից հետո էլ Ս. Կասյանը կանգնած էր այլ դիրքերում և գտնում էր, որ Հայաստանում սոցիալիստական ռևոլյուցիա իրականացնել չի կարելի, որ Հայաստանում չկա բանվոր-դասակարգ, այնտեղ Սովետական իշխանություն կարելի է հաստատել միայն դրսի ուժերով։ 1922 թվականին Ս. Կասյանը գրել է. «Այդ ժամանակ (1920 թվականի սկզբներին — Հ.Տ.) Հայաստանում գոյություն չուներ մասսայական ռևոլյուցիոն սիտուացիա... որովհետև ծայր աստիճանի քայքայված և սովի ճիրաններում գալարվող երկրի ցուրտն ու քաղցը մի կողմից, իսկ տնտեսական անխուսափելի բլոկադան մյուս կողմից, հենց սաղմի մեջ պիտի խեղդեին սովետական իշխանությունը»[2]։ Այս սխալ դրույթը, որ ի դեպ պաշտպանել է նաև Աշ. Հովհաննիսյանը (տե՛ս նրա «Հայաստանի հուլիսն ու հոկտեմբերը», «Նորք» ամսագիր, № 2, 1922 թ.), ժամանակին քննադատված է։ Բայց տարօրինակն այն է, որ Շ. Ամիրխանյանն էլ է կասկածում կոնֆերենցիայի ընդունած որոշման վրա։ Նա գրում է. «Եթե վերլուծելու լինենք այն բանաձևը, որի մասին խոսվում է այստեղ, ապա դժվար չի լինի հասկանալ, որ քաղաքացիական պատերազմի և դաշնակների իշխանության բռնի, ռևոլյուցիոն ճանապարհով տապալման մասին խոսելով որպես առաջնակարգ խնդիր, բանաձևի հեղինակները այդ ճասկացել են ոչ որպես առաջիկա գործնական խնդիր, որ բխում է երկրի ներքին դրության վերլուծությունից (այնտեղ այդպիսի վերլուծություն չկա) և գյուղացիության տրամադրության հաշվառումից (նրանք այդ բավարար չափով հաշվի չէին առնում). մինչդեռ գյուղացիությունը կազմում էր բնակչության մոտ 90 տոկոսը» (ընդգծումը մերն է — Հ.Տ.)։ Ընդհակառակը, կոնֆերենցիան ճիշտ հաշվի առնելով ներքին իրադրությունը, բանվորների, գյուղացի-

[1] Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. Արմենկոմ, էջ 33։ Առաջին կոնֆերենցիայի բանաձևը։

[2] «Նոր աշխարհ», № 1, 1922 թ., էջ 9։



ների, զինվորների խիստ դժգոհությունը դաշնակների անտանելի ռեժիմից, պարտիական կազմակերպությունների առաջիկա գործնական խնդիրը համարում է զինված ապստամբության նախապատրաստումը։ Հենց գյուղացիության տրամադրությունները նկատի ունենալուց է բխում կոնֆերենցիայի այն ցուցումը, որ «պարտիական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն աշխատանքը գյուղացիական միություններում, պրոֆմիություններում, կոոպերատիվներում, երիտասարդության մեջ և մյուս հասարակական կազմակերպություններում»[1]։ Կոնֆերենցիան հատուկ որոշում է ընդունում դաշնակցական բանակի զինվորների մեջ տարվելիք աշխատանքների մասին, պահանջելով պարտիական կազմակերպություններից՝ նախապատրաստել զինվորներին զինված ապստամբության համար։

Հանրահայտ է, որ մայիսյան ապստամբության մասնակիցների զգալի մասը դաշնակցական բանակի զինվորներն էին (որոնք, ի դեպ, շինել հագած գյուղացիներ էին և ճիշտ չեն այն ընկերները, որ գտնում են, թե գյուղացիությունը չի մասնակցել այդ ապստամբությանը)։ Մի շարք շրջաններում (Շամշադին, Ղազախ, Դիլիջան, Զանգեզուր, Նոր Բայազետ, Քավթառլու) գյուղացիությունը ակտիվ կերպով մասնակցում էր զինված ապստամբությանը։ Սա, իհարկե, կոմունիստական կազմակերպությունների կազմակերպական աշխատանքի արդյունքն էր։ Սխալ է այն տեսակետը, թե դաշնակցական բանակի զինվորները չէին գնում կոմունիստների հետևից. ապստամբության ժամանակ զինվորների մեծ մասն ամենուրեք ընդգրկվեց ապստամբության մեջ, իսկ մյուս մասը, ինչպես նաև սպաների մի մասը, բռնեց չեզոք դիրք և հրաժարվեց դուրս գալ ապստամբների դեմ։ Պատահական չէ, որ օգտվելով ապստամբության անկազմակերպվածությունից, ինչպես նաև Արմենկոմի կողմից թույլ տված սխալներից, խմբապետ Սեպուհը միայն իր մաուզերիստներից կազմված զորամասով կարողացավ մեկը մյուսի հետևից ճնշել ապստամբությունները։

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ ռևոլյուցիայի հաղթանակի համար բավական չէ միայն օբյեկտիվ պայմանների առկայությունը, միաժամանակ անհրաժեշտ է, որ ապստամբությունը ղեկավարող Կոմունիստական պարտիան լինի այնքան ունակ ու հասուն, որ կարողանա ռեալ հնարավորություններն իրականություն դարձնել։ Ահա, հենց այստեղ էլ պետք է փնտրել մայիսյան ապստամբության պարտության պատճառները։ Արմենկոմը և Հայաստանի ՌԲԿ-ն չկարողացան ճիշտ օգտագործել ռևոլյուցիոն ռեալ հնարավորությունները և ապահովել հաղթանակը։ Իհարկե, Արմենկոմի ընկերներին մեղադրել միայն մարքսիզմ-լենինիզմի դրույթները չյուրացնելու մեջ, բավական չէ։ Արմենկոմի թույլ տված սխալները հետևանք էին և՛ «աջ» և՛ «ձախ» օպորտունիստական տարրերի քաղաքականության, որի մասին խոսում է Շ. Ամիրխանյանը և որը, դժբախտաբար, մեծագույն դեր խաղաց զինված ապստամբության պարտության գործում։ Որոշ ընկերներ, այդ թվում նաև Շ. Ամիրխանյանն իր հոդվածում նշում են, թե Հայաստանում չկար բանվոր դասակարգ, այն թույլ էր, հետևաբար ռևոլյուցիայի մեջ չէր կարող լինել պրոլետարիատի հեգեմոնիա, որ Հայաստանում ռևոլյուցիան ըստ էության պիտի լիներ ոչ թե սոցիալիստական, այլ գյուղացիական։ Նա գրում է. «1920 թվա-

[1] ՄԼԻ արխիվ, ֆ. Արմենկոմ, կոնֆերանսի բանաձևից։

կանի մայիսին առաջին զինված ապստամբությունը դաշնակների իշխանության դեմ և Հայաստանում Սովետական իշխանություն հաստատելու համար իր սոցիալ-քաղաքական բնույթով և պատմական իմաստով նույնպիսի գյուղացիական ապստամբություն էր, ինչպիսին Սիբիրում գյուղացիական ապստամբությունն էր Կոլչակի դեմ»։ Հայաստանի մայիսյան ապստամբության վերաբերյալ այս դրույթը միանգամայն սխալ է։ Սիբիրի գյուղացիության մասին Լենինի ասույթը, որը բերում է Շ. Ամիրխանյանը, ոչ մի կապ չունի մայիսյան ապստամբության հետ և ճիշտ համեմատություն չէ։ Նախ, ամեն մի գյուղացիական ռևոլյուցիա, միաժամանակ բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիա է։ Մի՞թե Հայաստանում 1920 թվականի մայիսին Կոմունիստական պարտիան ձգտում է իրականացնել բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիա։ Սա, իհարկե, աբսուրդ է։ Ճիշտ է, դաշնակցական բուրժուա-նացիոնալիստական կառավարության տիրապետության օրոք կային ճորտատիրական մնացորդներ, այդ մնացորդները կային նաև Ռուսաստանում, փետրվարյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո, որոնք հարևանցիորեն լիկվիդացվեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ժամանակ։ Այդպես էլ եղավ մեզ մոտ՝ Հայաստանում, սովետական կարգերի հաստատումից հետո։

Պատմական փաստերը ցույց են տալիս, որ Հայաստանում ո՛չ միայն կար բանվոր դասակարգ, այլև 1917—1920 թթ. նա քաղաքական պայքարի մեծագույն դպրոց անցավ։ Հայաստանի բանվոր դասակարգը Կոմպարտիայի ղեկավարությամբ իրագործում էր իր հեգեմոն դերը ապստամբության մեջ։ Հենց ռևոլյուցիայի մեջ Կոմունիստական պարտիայի ղեկավարություն ասելով մարքսիզմ-լենինիզմը հասկանում է պրոլետարիատի ղեկավար դերը, որը, իհարկե, սերտորեն կապված է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի հետ. ժխտել բանվոր դասակարգի ղեկավար դերը (այսինքն՝ Կոմպարտիայի ղեկավար դերը) այդ շարժման մեջ, նշանակում է կանգնել այն ընկերների տեսակետին (Կասյան, Աշ. Հովհաննիսյան և ուրիշներ), որոնք չէին ընդունում, որ «Որքան էլ թույլ լիներ մեր պրոլետարիատը, այնուամենայնիվ միայն նա էր, որ կարող էր հեղափոխական շարժման ղեկավար լինել» (Թ. Մանդալյան «Մայիսյան ապստամբությունը Հայաստանում», էջ 24—25, 1929 թ.)։ Մենք ամբողջովին համամիտ ենք դրան։ Ոչ թե պրոլետարիատի քանակով է որոշվում, թե նա որքան է հասունացել ռևոլյուցիայի համար, այլ նրա որակով, գյուղացիությանը և աշխատավորական մասսաներին ղեկավարելու հմտությունից, պարտիայի կազմակերպական ուժից և ունակությունից։

Հենց այստեղից էր բխում Արմենկոմի որոշ ղեկավար ընկերների այն սխալ դիրքորոշումը, որ իբր Հայաստանում պրոլետարիատի բացակայության պատճառով սոցիալիստական ռևոլյուցիա իրականացնել հնարավոր չէր, որ Սովետական իշխանությունը մեզ մոտ պետք է հաստատվի խաղաղ ճանապարհով։ Կասյանի և մի քանի այլ ղեկավարների այդ քաղաքականության հետևանքն էր այն, որ երբ Հայաստանի բանվորները, զինվորներն ու գյուղացիները դիմեցին զինված ապստամբության, Արմենկոմը, որպես Հայաստանի պարտիական ղեկավար կենտրոն, փոխանակ իր ձեռքը վերցնելու ապստամբության ղեկավարման գործը, բռնել էր դաշնակցական կառավարության ղեկավարների հետ բանակցությունների, իշխանությունը խաղաղ ճանապարհով վերցնելու ուղին և, նույնիսկ, համաձայն էր դաշնակների հետ միասին ստեղծելու կոալիցիոն կառավարություն։ Ահա որտեղ էր հաս-



ցնում այդ ընկերների քաղաքականությունը (այդ փաստը հաստատվում է Երևանում մայիսյան ցույցերից հետո դաշնակցական կառավարության ղեկավար խատիսովի հետ Արմենկոմի սկսած բանակցություններով)։

Ճիշտ է նշում Շ. Ամիրխանյանը, որ Ալեքսանդրոպոլի (և ո՛չ միայն Ալեքսանդրոպոլի — Հ.Տ.) կազմակերպությունը թերագնահատում էր գյուղացիների մեջ տարվելիք աշխատանքը։ Այդպես էին վարվում Արմենկոմի մի քանի գործիչներ (Ավ. Նուրիջանյան և ուրիշներ)։ Բայց ճիշտ չէ նա, երբ նշում է, որ «Պատմությունը շատ ավելի արագ և դիալեկտիկորեն էր ընթանում։ Այն արդեն ռևոլյուցիոնականացրել էր գյուղացիներին և դաժան կենսափորձով նրանց հասցրել էր ռուսական ռևոլյուցիոն պրոլետարիատի տեսակետին»։ Հայաստանի գյուղացիության ռևոլյուցիոնացումը հետևանք էր Անդրերկոմի և Հայաստանի Կոմունիստական կազմակերպության տարած աշխատանքի։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ազդեցությունը և կյանքի դառը փորձը գյուղացիներին վերջնականապես բերել էին Սովետական իշխանության գաղափարին, որն, ի դեպ, մեր գյուղացիության մեջ սկսվում է ոչ թե 1920 թվականի մայիսյան ապստամբության նախօրյակին, ինչպես ձգտում է ապացուցել Շ. Ամիրխանյանը, այլ տակավին 1917 թվականի Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակից հետո։ Բազմաթիվ հրապարակված և դեռևս չհրապարակված փաստաթղթերում արձանագրված է հայ գյուղացիության պայքարը Սովետական իշխանության համար՝ Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո։

1920 թվականի հունվարյան պարտիական կոնֆերենցիայից և Կարմիր Բանակը Անդրկովկասի սահմաններին մոտենալուց հետո, կոմունիստական կազմակերպությունների ազդեցությունը բավականին աճեց բանվորական, գյուղացիական և զինվորական մասսաների վրա, բայց Արմենկոմը չկարողացավ այդ ազդեցությունը կազմակերպորեն ամրապնդել։ Դաշնակցական կառավարության դեմ ապստամբած մասսաները կարող էին հաղթել և անպայման կհաղթեին, եթե Արմենկոմը և ՀՌՌԿ-ն, որպես այդ շարժումը ղեկավարող կենտրոններ, լինեին իրենց կոչման բարձրության վրա, եթե ժամանակին չեզոքացվեին այդ ղեկավար կենտրոններում նստած «աջ» և «ձախ» օպորտունիստական տարրերը։

Իր հոդվածում Շ. Ամիրխանյանը գրում է. «Եթե իրոք կոմունիստները պատրաստվում էին ապստամբության և ապստամբության ժամանակ (ինչպես պատմաբան Ղարիբջանյանը գրում է իր աշխատության 248—249 էջերում) ռազմական ու բարոյական գերակշռություն ունեին թշնամու նկատմամբ, ապա ինչու ապստամբությունը պարտություն կրեց», և ապա բերում է Գ. Ղարիբջանյանի խոսքերը. «Այդ պայմաններում հարկավոր էր ցուցաբերել ճկունություն և վճռականություն, ավելի համարձակ ղեկավարել մասսաների հերոսական պայքարը։ Սակայն Արմենկոմը և Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն քաղաքական և ռազմա-ստրատեգիական լուրջ սխալներ թույլ տվին։ Նրանք չկարողացան ամուր կապ ստեղծել տեղերի հետ, միավորել Հայաստանի շրջանների ապստամբած ուժերը, ցուցաբերեցին անվճռականություն և անթույլատրելի բարեհոգություն թշնամիների նկատմամբ։ Վճռական րոպեին երևան եկավ ճիշտ և բավականին փորձված ղեկավարության բացակայությունը»։ Գ. Ղարիբջանյանի վերոհիշյալ դրույթը լրացման որոշ կարիք ունի այն իմաստով, որ Արմենկոմի այդ սխալների արմատները պետք է

փնտրել Արմենկոմի կազմում գտնվող «աջ» և «ձախ» օպորտունիստական
տարրերի գործունեության մեջ, որը և հասցրեց ապստամբության վերաբեր-
յալ մարքս-լենինյան դրույթների անտեսման և չիրագործելուն։ Բայց ստիպ-
ված ենք նշել, որ Շ. Ամիրխանյանի դրույթից ևս երևում է, որ մայիսյան
ապստամբության պարտության պատճառները ո՛չ թե սուբյեկտիվ, այլ օբ-
յեկտիվ էին, այսինքն՝ Հայաստանում չկային սոցիալիստական ռևոլյուցիայի
պայմաններ, որի հետ երբեք չի կարելի համաձայնել։

Վ. Ի. Լենինը գրում է. «Մասսաները պետք է իմանան, որ գնում են դեպի
զինված, արյունալի, կատաղի պայքար։ Արհամարհանքը դեպի մահը պետք
է տարածվի մասսաների մեջ և ապահովի հաղթանակը։ Թշնամու վրա պատ-
րաստվող հարձակումը պետք է ամենաեռանդուն բնույթ կրի. հարձակում և
ոչ պաշտպանություն՝ պետք է դառնա մասսաների լոզունգը. թշնամու անխնա
ոչնչացումը — կդառնա նրանց խնդիրը. պայքարի կազմակերպումը կլինի
շարժուն և ճկուն. զորքի տատանվող տարրերն ակտիվ պայքարի մեջ կքաշ-
վեն։ Այդ մեծ պայքարում գիտակից պրոլետարիատի պարտիան պետք է կա-
տարի իր պարտքը» (Երկեր, հատ. 11, էջ 208—209)։ Ահա թե ինչը չկարողա-
ցավ կատարել Արմենկոմը՝ որպես պարտիական կազմակերպությունների
ղեկավար կենտրոն։ Այսպիսով, մայիսյան ապստամբության պարտության
պատճառները ոչ այնքան օբյեկտիվ էին, որքան սուբյեկտիվ։

Վերցնենք հետևյալ կարևոր փաստը. Արմենկոմի պլանի համաձայն զին-
ված ապստամբությունը պետք է սկսվեր Դիլիջան—Շամշադին—Ղազախից
(Սովետական Ադրբեջանի սահմանակից շրջաններից)։ Բայց երբ հետագա-
յում Ալեքսանդրոպոլը, Կարսը, Սարիղամիշը զինված ապստամբության ան-
խուսափելիության առջև կանգնեցին, Արմենկոմը ձգձգում էր այդ շրջաննե-
րին սանկցիա տալը։ «Արմենկոմը այդպիսի սուր մոմենտներին,— ինչպես
ճիշտ կերպով նշել է Ս. Մուսայելյանը,— բավականաչափ գործունեություն
չցուցաբերեց»։ Պատահական չէ, որ մի շարք շրջանների ու գավառների պար-
տիական կոմիտեները, որոնք դուրս էին գտնվում Արմենկոմի ազդեցությու-
նից (Դիլիջան, Շամշադին, Ղազախ, Ն. Բայազետ, Զանգեզուր) ավելի լավ
էին հասկանում մեր պարտիայի լենինյան ստրատեգիան ու տակտիկան,
համեմատաբար ավելի լավ էին կազմակերպել ապստամբության գործը և
ավելի հեռու մնացին վերոհիշյալ սխալներից։

Շ. Ամիրխանյանը գրում է. «Հիմք չկա այդպիսի ռևոլյուցիոն հերոսին
(խոսքը Ս. Մուսայելյանի մասին է — Հ.Տ.) մեղադրելու անհամարձակության
և ինչ-որ անհասկանալի ռազմա-ստրատեգիական սխալների մեջ, ապստամ-
բության մարքսիստական-լենինյան կանոնները չկատարելու մեջ։ Ժամա-
նակակից սովետական մարդիկ ու նրանց սերունդները ի՞նչ կարծիք պիտի
կազմեն Ալեքսանդրոպոլի ապստամբության ղեկավարների մասին պատմա-
բան Ղարիբջանյանի գիրքը կարդալով»։ Այնուհետև նա նշում է, որ Վ. Ի.
Լենինը ասել է. «բայց եթե վճռական պահին երևան է գալիս արիության պա-
կասություն, այդ արդեն սխալմունք չէ, այլ դավաճանություն է»։ Վերջում
Շ. Ամիրխանյանը նշում է, որ եթե լենինաբար մեկնաբանենք Ղարիբջանյանի
վերոհիշյալ հայտարարությունը, ուրեմն Ալեքսանդրոպոլի ապստամբության
ղեկավարները դավաճաններ են։ Նախ պետք է նշել, որ այստեղ տեղին չի
օգտագործված Վ. Ի. Լենինի վերոհիշյալ ասույթը։ Լենինի խոսքը վերաբերում
է պարտիական տարաձայնությունների հաղթահարմանը, սխալներ թույլ



տված ընկերների կողմից այդ սխալներն ընդունելու և ուղղելու անբավարար
տոկունությանը։ Ռևոլյուցիայի և պարտիայի գործին մինչև վերջը նվիրված
մարդիկ (հենց թեկուզ Ս. Մուսայելյանը), եթե ապստամբության ժամանակ
թույլ են տալիս ռազմա-ստրատեգիական սխալներ, կամ անվճռականություն
ու թուլություն, այդ դեռ դավաճանություն չէ և այդպիսի եզրակացությունը
մայիսյան ապստամբության ղեկավարների մասին զուրկ է որևէ հիմքից։
Մարքս-լենինյան պատմագիտության խնդիրն է ո՛չ միայն գրի առնել մայիս-
յան ապստամբության հերոսների անձնվեր գործունեությունը, կոմունիզմի
գործին նրանց մինչև վերջ նվիրված լինելը, այլև, միաժամանակ, նրանց թե-
րությունները, նրանց գործունեության ստվերոտ կողմերը։ Հենց ինքը ընկ.
Ամիրխանյանը ստիպված է գրել, որ «մարքսիստական-լենինյան կանոններն
իրականացնելն այնքան էլ հեշտ ու դյուրին չէ»։

Դեպքերի ընթացքը Ալեքսանդրոպոլում, Կարսում, Սարիղամիշում առա-
ջադրում է ապստամբությունն անհապաղ սկսելու բացահայտ անհրաժեշտու-
թյունն այդ տեղերում։ Ձգձգումներն ու անվճռականությունը կարող էին կոր-
ծանարար լինել ապստամբության ելքի համար։ Հաշվի առնելով ստեղծված
դրությունը, Ալեքսանդրոպոլի կոմիտեն դիմում է Արմենկոմին՝ նրանից պա-
հանջելով ապստամբության սանկցիա։ Արմենկոմը ձգձգում է ապստամբու-
թյան սանկցիա տալը։ Նա չկարողացավ անմիջապես կողմնորոշվել արագո-
րեն զարգացող ռևոլյուցիոն սիտուացիայի բարդ պայմաններում։ Նա իր ներ-
կայացուցիչն է ուղարկում Ալեքսանդրոպոլ՝ տեղում վիճակը ստուգելու և
ապստամբության հարցը պարզելու համար։ Դրանից հետո Արմենկոմը հա-
մաձայնում է սկսել ապստամբությունը Ալեքսանդրոպոլում։ Բայց այս անգամ
էլ ապստամբությունը սկսելու հրահանգ չի տրվում Դիլիջան, Շամշադին, Ղա-
զախ և մյուս շրջանների բոլշևիկյան կազմակերպություններին։ Չնայած
հայտնի էր Արմենկոմի որոշումը՝ ապստամբությունը սկսել Սովետական
Ադրբեջանի սահմանակից շրջաններից, որը, իհարկե, չէր բացառում նաև, որ
ապստամբությունը առաջինը կարող էր սկսել Ալեքսանդրոպոլը։ Գավառների
պարտիական կոմիտեները սպասում էին Արմենկոմի ղեկավար ցուցումներին,
որ նրանք այդպես էլ չստացան և ստիպված եղան հետագայում իրենց ինք-
նուրույն, սեփական նախաձեռնությանը դիմելու։

Այսպիսով, մայիսյան զինված ապստամբության հիմնական շարժիչ ուժը
հանդիսանում էին Հայաստանի բանվորները, գյուղացիները և զինվորները։
Այդ ապստամբության նպատակն էր՝ տապալել դաշնակների բուրժուա-նա-
ցիոնալիստական ռեժիմը և Հայաստանում հաստատել Սովետական իշխա-
նություն, պրոլետարիատի դիկտատուրա։ Մայիսյան ապստամբությունն իր
բնույթով սոցիալիստական ռևոլյուցիա էր, որը վերջացավ պարտությամբ։

Մայիսյան ապստամբության պարտությունը շատ թանկ նստեց Հայաս-
տանի աշխատավորներին։ Եթե ապահովվեր մայիսյան ապստամբության հաղ-
թանակը, որի համար կային բոլոր օբյեկտիվ պայմանները, ապա Հայաս-
տանում կհաստատվեր Սովետական իշխանություն, այդ դեպքում չէր լինի
հայ-թուրքական վերջին պատերազմը (1920 թ. աշնանը), նորից չէր հոսի
հարյուր-հազարավոր մարդկանց արյունը, չէին ավերվի հարյուրավոր գյուղեր,
և Սովետական Հայաստանը չէր կորցնի հսկայական տերիտորիա Արևելյան
Հայաստանում։

Հ. ՏՈՆՈՅԱՆ

# ԻՆԴՈՆԵԶԻԱ

**(Տեղեկանք)**

Ինդոնեզիան գտնվում է Հարավ-արևելյան Ասիայում, տեղավորված է Մալայան արշիպելագի ավելի քան 3000 կղզիների վրա, որոնցից կարևորներն են՝ Ճավան (Մադուրայի հետ միասին 132 հազար քառ. կմ), Սումատրան (նրան հարող կղզիներով 474 հազար քառ. կմ), Բոռնեոն կամ Կալիմանտանը (կղզու ինդոնեզական մասը 540 հազար քառ. կմ), Ցելեբեսը կամ Սուլավեսին (189 հազար քառ. կմ), Արևմտյան Իրիանը (Նոր Գվինեա կղզու արևմտյան մասը 412,8 հազար քառ. կմ) և բազմաթիվ այլ մանր կղզիներ: Ընդհանուր առմամբ Ինդոնեզիայի տերիտորիան հավասար է 1 միլիոն 904 հազար քառ. կիլոմետրի: Նրա բնակչությունը կազմում է 84 միլիոն մարդ: Ինդոնեզիայի մայրաքաղաքն է Ջակարտան, որը գտնվում է Ճավա կղզու հյուսիս-արևմտյան ափին: Ջակարտան արշիպելագի ամենախոշոր քաղաքն է, Ինդոնեզիայի առևտրական շրջանի գլխավոր նավահանգիստը և ունի ավելի քան 2,5 միլիոն բնակչություն: Ճավան ամբողջ երկրի քաղաքական ու տնտեսական կենտրոնն է: Ինդոնեզիայի գլխավոր քաղաքներն են՝ Սուրաբայան, Բանդունգը, Սեմարանգը, Սուրակարտան, Ջոկյակարտան, Մելանգը, Մակասարը, Պալեմբանգը և այլն: Ինդոնեզիան ողողվում է Հարավ-Չինական ծովի, Խաղաղ և Հնդկական օվկիանոսների ջրերով. նա կապող օղակ է Ավստրալիայի և Ասիայի միջև:

Հիասքանչ է Ինդոնեզիայի բնությունը, անչափ հարուստ օգտակար հանածոներով: Երկիրն ունի նավթի հսկայական պաշարներ: Նրա ընդերքում առատորեն կան բոքսիտներ, կապար, քարածուխ, անագ, երկաթահանք, պղինձ, մարգանեց, ցինկ, նիկել, պլատին, ոսկի, քրոմ և այլ հանածոներ: Երկրում մշակվում են թեյ, ծխախոտ, սուրճ, խինին, շաքարի եղեգն, բրինձ և գյուղատնտեսական այլ կուլտուրաներ, որոնք մեծ մասամբ արտահանվում են: Հատկապես նա հայտնի է որպես բնական կաուչուկի երկիր. կաուչուկի արտադրության ասպարեզում Ինդոնեզիային է պատկանում աշխարհում առաջին տեղը՝ համաշխարհային արտադրանքի մոտ 40 տոկոսը:

Ինդոնեզիան ագրարային երկիր է: Սննդի, տեքստիլ, կաշվի և մշակող արդյունաբերության այլ ճյուղերում գերակշռում է գործարանային մանր արտադրությունը: Երկրում կան նաև մեծ թվով տնայնագործական ձեռնարկություններ, որոնք արմավենիներից, բամբուկից, արծաթից և այլ նյութերից թողարկում են բազմապիսի առարկաներ:

Ինդոնեզցիները հնադարյան կուլտուրայի ժողովուրդ են: Նրանք աչքի են ընկնում մեծ աշխատասիրությամբ, դեպի գիտելիքներն ու արվեստն ունեցած մեծ սիրով: Բուն բնակչությունը կազմված է մալայան ցեղերից ու ազգություններից, որոնց անունով էլ արշիպելագը կոչվում է Մալայան: Ազգային պատկանելության տեսակետից բնակչության մեծ մասը ինդոնեզցիներ են: Սակայն այդտեղ ապրում են նաև չինացիներ, արաբներ, հնդիկներ և ուրիշներ:

Ինդոնեզիայի պատմությունը չափազանց հարուստ է իրադարձություններով: Դա հզոր թագավորությունների ու տիրակալների, հնադարյան կուլտուրայի պատմություն է, բայց դա նաև գաղութակալության և ռևոլյուցիայի պատմություն է:

Հոլանդական առաջին առևտրական գաղութարարները Ինդոնեզիայում երևացին XVI դարի վերջում: Ամրանալով ծովափնյա մի շարք վայրերում, նրանք այնուհետև դուրս մղեցին մյուս եվրոպացիներին և 1799 թվականին գրավեցին ամբողջ արշիպելագը: Իրենց գաղութակալական տիրապետության երկար տարիների ընթացքում հոլանդացի գաղութարարները գիշատչորեն հափշտակել են կղզիների բնական հսկայական հարստությունները, ճնշելով ու շահագործելով ժողովրդին: Հոլանդական կապիտալն արդեն երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին Ինդոնեզիայում գնահատվում էր 4 միլիարդ գուլդեն, կազմելով Հոլանդիայի ամբողջ ազգային հարստության վեցերորդ մասը: Այդ նույն միջոցին արդեն կզալի չափերի էին հասել նաև Անգլիայի ու ԱՄՆ-ի կապիտալ ներդրումները Ինդոնեզիայում: Վերջին երկու տասնամյակները Ինդոնեզիայի համար քաղաքական վիթխարի իրադարձությունների մի ժամանակաշրջան հանդիսացավ: Հանդես եկան և սկսեցին գործել քաղաքական բազմաթիվ պարտիաներ ու կազմակերպություններ, որոնց կզալի մասի հիմնական գործունեությունն ուղղված է գաղութակալության դեմ: Այդ պարտիաներից ամենախոշորներն են. Ազգային պարտիան, որն ստեղծվել է 1927 թվականին: Այն, հենց հիմնադրման օրից, գլխավորեց ինժեներ Սուկառնոն, որն այժմ Ինդոնեզիայի ռեսպուբլիկայի պրեզիդենտն է (ներկայումս Սուկառնոն Ազգային պարտիայի անդամ չէ: Ռեսպուբլիկայի ժամանակավոր կոնստիտուցիայի համաձայն պրեզիդենտը քաղաքական որևէ պարտիայի անդամ լինել չի կարող): Այդ պարտիան արտահայտում է ազգային բուրժուազիայի շահերը: Իր արտաքին քաղաքականության մեջ նա պայքարում է իմպերիալիզմի և գաղութակալության դեմ: Ազգային պարտիայի հիմնական կորիզը կազմում են մանր բուրժուազիան, ինտելիգենցիան, գյուղացիության մի մասը: Չնայած առանձին տատանումներին և անվճռականությանը, Ազգային պարտիան պայքարում է Ինդոնեզիայի չեզոք քաղաքականության, անկախության համար, ազգային էկոնոմիկայի զարգացման համար:

Ինդոնեզիայի կոմունիստական պարտիան ըստեղծվել է 1920 թվականին (գլխավոր քարտուղարը Այդիտն է): Նա արագորեն աճում է և այժմ իր շարքերում ունի 1,5 միլիոն մարդ: Իր անձնուրաց պայքարով, աշխատավորների կենսական շահերի պաշտպանությամբ կոմպարտիան մեծ հեղինակություն է նվաճել ժողովրդի մոտ: Կոմպարտիան հետևողականորեն մարտնչում է երկրի լիակատար անկախության և ազատագրման համար: Նրա հիմնական նպատակն է սոցիալիստական հասարակարգի կառուցումը Ինդոնեզիայում:

Մաշումի մուսուլմանական պարտիան ստեղծվել է 1945 թվականին և արտահայտում է Ինդոնեզիայի ռեակցիոն դասակարգերի՝ ֆեոդալների և կոմպրադոր բուրժուազիայի շահերը: Վերջիններս հանդես են գալիս որպես իմպերիալիզմի սոցիալական հենարան և փորձում են ամեն կերպ խոչընդոտել Ինդոնեզիայի կառավարության կենսականորեն կարևոր առաջադիմական ձեռնարկումների իրականացմանը: Մաշումի ռեակցիոն պարտիայի հետ համատեղ գործում է նաև սոցիալիստական պարտիան (աջ սոցիալիստների պարտիան, որը ստեղծվել է 1948 թվականին):

***

Հոլանդական գաղութարարներին փոխարինած ճապոնական օկուպանտների դեմ ինդոնեզական ժողովրդի մղած ազգային-ազատագրական մարտերի շնորհիվ, ճապոնական զորքերի կապիտուլյացիայից երկու օր հետո, 1945 թվականի օգոստոսի 17-ին Ինդոնեզիան հռչակվեց ռեսպուբլիկա: Ինդոնեզական ժողովուրդը թևակոխեց պայքարի մի նոր փուլ:

Հոլանդական գաղութարարները ամենևին էլ մտադիր չէին հրաժարվել Ինդոնեզիայից: Նրանք ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի օժանդակությամբ, ձգնելով երկրում վերականգնել իրենց գաղութային տիրապետությունը, երիտասարդ ռեսպուբլիկային ներքաշեցին ծանր պատերազմի մեջ: Ինդոնեզիայի ժողովուրդը չորս տարի շարունակ հերոսաբար պայքարում էր գաղութարարների դեմ: Այդ պայքարը գտավ համաշխարհային հասարակայնության պաշտպանությունը: Ինտերվենտները հարկադրված էին բանակցություններ սկսել: Սակայն Հաագայում 1949 թվականին տեղի ունեցած այսպես կոչված Կլոր սեղանի կոնֆերանսն ավարտվեց հոլանդական գաղութարարների օգտին: Կոնֆերանսը պահպանեց նաև հոլանդական տիրապետությունը Ինդոնեզիայի անվիճելի մասի՝ Արևմտյան Իրիանի նկատմամբ: Ինդոնեզական ժողովուրդը վճռական մի նոր պայքար սկսեց գաղութարարների դեմ՝ Հաագայի կոնֆերանսի որոշումների վերացման համար: Եվ ահա ժողովրդական լայն շարժման ճնշման տակ տապալվեց Հոլանդիայի քաղաքական տիրապետությունը: Ինդոնեզական ռեսպուբլիկան հռչակվեց անկախ պետություն, պառլամենտն ընդունեց ժամանակավոր կոնստիտուցիա, որի մեջ ընդգրկված էր երկրում գաղութակալությունը արմատախիլ անելու անհրաժեշտությունը:

Ինդոնեզիայի անկախ գոյության հենց առաջին տարիներից սկսած կառավարությունը սկսեց ձեռնարկել այնպիսի միջոցառումներ, որոնք հետըզհետե վերացնում կամ սահմանափակում են օտարերկրյա կապիտալի դիրքերը երկրի էկոնոմիկայում: 1958 թվականի դեկտեմբերի սկզբներին հոլանդական սեփականությունն ազգայնացնելու մասին ինդոնեզական պառլամենտի ընդունած օրենքը, ինչպես նաև երկրի կանքում հոլանդական ազդեցությունը վերացնելու վերաբերյալ կառավարության ձեռնարկած միջոցառումները լուրջ հարվածներ էին գաղութակալության մնացորդներին:

Սակայն Ինդոնեզիայի կառավարությունը երկրի զարգացման տվյալ էտապում իր առջև նպատակ չի դնում տնտեսության բոլոր ճյուղերից օտարերկրյա կապիտալի դուրս մղումը: Ազգային կապիտալների սուր պակասի հետևանքով ցանկալի է համարվում որոշ ժամանակվա ընթացքում օգտագործել դրսից ներգրավված կապիտալները (առաջին հերթին փոխառությունները, բացառությամբ հոլանդական կապիտալի) տնտեսության որոշ ճյուղերի զարգացման համար: Օտարերկրյա կապիտալ չի թույլատրվում օգտագործել այն ձեռնարկություններում, որոնք երկրի համար ունեն կենսական նշանակություն: Այդ կապիտալի օգտագործում չի թույլատրվում նաև ազգային կապիտալի կողմից յուրացված ճյուղերում:

Ազգային տնտեսության զարգացման նպատակով արդեն մշակվել է առաջին հնգամյա պլանը, որտեղ առաջատար տեղ են գրավում արդյունաբերությունը, էներգետիկան և տրանսպորտը, որոնց

զարգացման համար ենթադրվում է տրամադրել պետական հատկացումների 75 տոկոսը:

Բռնելով ազգային ինքնուրույն զարգացման ուղին, Ինդոնեզիայի կառավարությունը, որը Ասիայի ու Աֆրիկայի 29 երկրների Բանդունգի կոնֆերանսի նախաձեռնողներից մեկն է, վարում է խաղաղասիրական քաղաքականություն:

Բայց Ինդոնեզիայի կառավարության խաղաղասիրական այդ քաղաքականությունը, քաղաքական ու տնտեսական փոփոխությունները բորբոքեցին երկրի ռեակցիոն խմբավորումներին: Եվ ռեակցիոն լագերի քաղաքական երկու պարտիաները՝ Մաշումի և սոցիալիստական պարտիաները, դաշն կնքելով իմպերիալիստների հետ, ռեակցիոն խռովություն բարձրացրին՝ նպատակ ունենալով տապալել այն, ոչնչացնել վերջին տարիների ընթացքում ձեռք բերված ազգային զարգացման բոլոր նվաճումները, ջախջախել առաջադիմական ուժերը, երկիրը ներքաշել ՍԵԱՏՕ ռազմական բլոկի մեջ և Ինդոնեզիայում հայտարարել ռազմական դիկտատուրա:

1956 թվականի աշնանը Ինդոնեզիայում ծայրահեղորեն սրվեց քաղաքական իրադրությունը: Դեկտեմբերին Հյուսիսային Սումատրայի զորքերի հրամանատար Սիմբոլոնը իմպերիալիստների օժանդակությամբ խռովություն բարձրացրեց կենտրոնական կառավարության դեմ: Սուկառնոյի դեկրետով երկրում հայտարարվեց արտակարգ դրություն: Երկրի առաջադիմական բոլոր ուժերը համախմբվեցին ընդդեմ դավաճան խռովարարների: Ռեակցիոն ուժերի ստոր դավադրությունը անհաջողության մատնվեց: Ինդոնեզիային բարոյական մեծ օժանդակություն ցույց տվեցին Սովետական Միությունը, ՉԺՌ-ն, սոցիալիզմի լագերի մյուս երկրները, ինչպես նաև Հնդկաստանը և Ինդոնեզիային բարեկամ այլ պետություններ:

1959 թվականի հուլիսին Ինդոնեզիայի ռեսպուբլիկան թևակոխեց իր պատմության նոր փուլը: Պրեզիդենտ Սուկառնոյի հատուկ դեկրետով կրկին գործի դրվեց 1945 թվականի կոնստիտուցիան, արձակվեցին հիմնադիր ժողովը և Ջուանդայի կառավարությունը: Կազմվեց Սուկառնոյի գլխավորությամբ նոր կառավարություն: 1945 թվականի կոնստիտուցիային համապատասխան Ինդոնեզիայի ներկայիս կառավարությունը պրեզիդենտական է. պրեզիդենտը գլխավորում է կաբինետը և միևնույն ժամանակ հանդիսանում է Ինդոնեզիայի ռեսպուբլիկայի զինված ուժերի գլխավոր հրամանատար: Այժմյան կառավարության մեջ սահմանված է առաջին կամ գլխավոր մինիստրի պոստ, որը գրավում է Ջուանդան. նա միաժամանակ ֆինանսների մինիստրն է: Այս կաբինետի մեջ մըտնում են 8 մինիստրներ ևս, ներառյալ գեներալ Նասուտիոնը, որն այժմ համատեղում է բանակի շտաբի պետի, պաշտպանության մինիստրի և ներքին անվտանգության մինիստրի պոստերը: Ահա այս 10 մինիստրները կազմում են մինիստրների կաբինետ, որը Սուկառնոն անվանել է «գործարար կաբինետ»: Բացի դրանից կազմվել է ամբողջ կառավարության պլենար կազմը, որի մեջ «գործարար կաբինետի» անդամների հետ միասին մտնում են այլ մինիստրներ: Նոր կաբինետի առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ ներկայիս կառավարության և ոչ մի անդամ քաղաքական որևէ պարտիայի անդամ չէ:

Այս տարի երկրում անց են կացվելու ինդոնեզական պառլամենտի համընդհանուր ընտրություններ: Ամենամոտ շրջանում ստեղծվելու են նաև ժամանակավոր կոնգրես և ժամանակավոր գերագույն կոնսուլտատիվ խորհուրդ: 1945 թվականի կոնստիտուցիային համապատասխան, ժողովրդական կոնգրեսը իշխանության բարձրագույն օրգանն է ռեսպուբլիկայում:

Բարեկամական խոր ու անկեղծ զգացումներ են տածում սովետական ժողովուրդը, սոցիալիստական ամբողջ լագերի ժողովուրդները ազատասեր ինդոնեզական ժողովրդի նկատմամբ: Սովետական Միությունը Ինդոնեզիայի համար դժվարին փորձությունների տարիներին միշտ էլ հանդես է եկել նրա օգտին: Սովետական Միությունը ՄԱԿ-ում առաջինը պաշտպանեց Ինդոնեզիայի անկախությունը: 1950 թվականի հունվարի 25-ին Սովետական Միությունը պաշտոնապես ճանաչեց Ինդոնեզիայի ռեսպուբլիկան: Պրեզիդենտ Սուկառնոյի այցելությունը Սովետական Միություն լուրջ իրադարձություն էր, որի շնորհիվ ավելի ամրապնդվեցին բարեկամական հարաբերությունները Ինդոնեզիայի և ՍՍՌՄ-ի միջև: Բանակցությունների ընթացքում ընդգծվեցին երկու պետությունների հայացքների ընդհանրությունը միջազգային հարաբերությունների կարևորագույն հարցերի շուրջը, կարգավորվեց երկու երկրների առևտրական, տեխնիկական ու տնտեսական համագործակցությունը՝ հավասարության ու փոխադարձ շահավետության հիման վրա:

Պրեզիդենտ Սուկառնոյի հրավերով փետրվարին Ինդոնեզիա մեկնեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ ընկ. Ն. Ս. Խրուշչովը: Ինդոնեզական ժողովուրդը խորապես հավատացած է, որ Սովետական կառավարության ղեկավարի այցն է՛լ ավելի կամրապնդի սովետա-ինդոնեզական բարեկամությունը, կբարելավի խաղաղության ամրապնդման հեռանկարները ամբողջ աշխարհում:

---

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ՀԱՐՑ

*Եթե կոմունիստը սկզբնական կազմակերպության բյուրոյի կազմում չի ընտրվում, կարելի՞ է նրան ընտրել պարտիայի շրջանային կոմիտեի անդամ։*

Գ. Թովմասյան
*(Մարտունու շրջան, Ղարանլուղ գյուղ)*

## ՊԱՏԱՍԽԱՆ

*Այո, կարելի է։ Պարտիական կոմիտեները կոլեկտիվ ղեկավարման օրգաններ են։ Պարտիական կոմիտեի ընտրությունները կատարվում են համապատասխան պարտիական կազմակերպությունների կոնֆերանսներում, փակ (գաղտնի) քվեարկությամբ։*

*Պարտիական կոմիտեի անդամ լինելը մեծ վստահություն է։ Նրա կազմում կարող է ընտրվել արտադրության առաջավոր, հասարակական-քաղաքական աշխատանքներում իրեն առավել ակտիվ ցուցաբերած կոմունիստը։ Պարտիական կոմիտեների կազմում առաջադրվում են սկզբունքային, թերությունների հանդեպ անհաշտ, գործի նկատմամբ սրտացավ վերաբերմունք ցուցաբերող, պետական շահերը բարձր դասող կոմունիստներ։ Նախքան կոմունիստին պարտիական կոմիտեում առաջադրելը, շրջանային և քաղաքային կոմիտեները նրանց լրջորեն ուսումնասիրում են պրակտիկ աշխատանքներում, հաշվի առնում առաջադրվողի քաղաքական ու գործնական ունակությունները։ Իսկ եթե սկզբնական պարտիական կազմակերպությունը կոմիտեի կազմում ընտրվող կոմունիստի նկատմամբ ունի փաստեր, որոնք արատավորում են նրա հեղինակությունը, ապա անհրաժեշտ է այդ մասին տեղյակ պահել պարտիական կոմիտեին, օգնել նրան խորամուխ լինելու այդ փաստերի մեջ, համապատասխան միջոցներ ձեռնարկելու համար։*

## ՀԱՐՑ

*Սկզբնական պարտիական կազմակերպության համար օրինակա՞ն է այն որոշումը, որը հաստատվել է ժողովին ներկա կոմունիստների մեծամասնությամբ, եթե նրանց թիվը չի կազմում կազմակերպության անդամների ընդհանուր թվի մեծամասնությունը։*

Վ. Մելիքյան
*(Կիրովական)*

## ՊԱՏԱՍԽԱՆ

*Սկզբնական պարտիական կազմակերպության ժողովին պետք է նախորդի լուրջ նախապատրաստական աշխատանք, որպեսզի ոչ միայն բազմակողմանիորեն քննարկվեն հարցերը, այլև ժողովին ներկայանան բոլոր կոմունիստները։ Յուրաքանչյուր առանձին դեպքում ժողովի իրավասության հարցը լուծում են ժողովին ներկայացած կոմունիստները։ Բոլոր դեպքերում էլ ժողովի ընդունած որոշումները, միջոցառումները պարտադիր են կազմակերպության անդամների համար։*

ստեղծման, զինված ապստամբության նախապատրաստման համար:

**К. ЦЕТКИН—„Воспоминания о Ленине“** Госполитиздат, 140 стр., т. 70 000, цена 50 коп.

Կլարա Ցետկինը, որը հանդիպել է Վ. Ի. Լենինին 20-ական թվականներին, գծում է միջազգային պրոլետարիատի առաջնորդի պատկերը, ցույց տալիս այն մեծ ուշադրությունն ու հոգատարությունը, որ նա ցուցաբերում էր մարդկանց, իր աշխատանքային ընկերների նկատմամբ: Նա պատմում է, թե ինչպես է Վ. Ի. Լենինը ղեկավարել Կոմունիստական Ինտերնացիոնալի III կոնգրեսի աշխատանքը, խոսում է Վլադիմիր Իլյիչի հռետորական արվեստի մասին: Հիշողություններում մեջ են բերված առաջնորդի ասույթները պրոլետարական կուլտուրայի ու արվեստի, ժողովրդական կրթության ու դաստիարակության, միջազգային կոմունիստական շարժման մասին:

**Н. ГОРБУНОВ—„Как работал Ленин“.** Госполитиздат, 16 стр., т. 100 000, цена 15 коп.

Հուշերի հեղինակը աշխատել է Ժողկոմսովետում որպես քարտուղար, ապա գործերի կառավարիչ: Նա ընթերցողին ծանոթացնում է Վ. Ի. Լենինի ամենօրյա գործունեության հետ, պատմում Իլյիչի բացառիկ համեստության, նրա պահանջկոտության, հասարակ մարդկանց՝ բանվորների և գյուղացիների հետ նրա ունեցած զրույցների մասին:

**Л. ФОТИЕВА —„Из жизни Ленина“,** Госполитиздат, 152 стр., т. 90 000, цена 2 руб.

Լիդիա Ալեքսանդրովնա Ֆոտիևան հին բոլշևիկ է: 1904—1905 թվականներին ապրել է էմիգրացիայում, աշխատել է բոլշևիկների ռուսական խմբում: Սովետական իշխանության առաջին տարիներին նա աշխատում էր Ժողկոմսովետում, միաժամանակ Վ. Ի. Լենինի քարտուղարն էր: Լ. Ա. Ֆոտիևայի այս գիրքը գրված է շատ կենդանի: Դա մի հուզիչ պատմվածք է Իլյիչի՝ Կոմունիստական պարտիայի ստեղծողի և առաջնորդի, Սովետական սոցիալիստական պետության կազմակերպչի մասին:

**Ն. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ—«Լենինը որպես պրոպագանդիստ և ագիտատոր»:** Հայպետհրատ, 40 էջ, տիրաժ 10 000, գինը՝ 30 կոպ.:

Վլադիմիր Իլյիչի կինակից ու մտերիմ ընկեր Նադեժդա Կոնստանտինովնան պատմում է, որ Լենինը հանդիսանում էր մարքսիզմի բոցավառ ու կրքոտ պրոպագանդիստ, նա յուրաքանչյուր անգամ, պարապմունքի գնալուց առաջ, շատ խնամքով էր պատրաստվում, մեծ նշանակություն էր տալիս բանավոր ու գրավոր խոսքին: Գրքույկում ընթերցողը կգտնի Լենինի մտքերը, ասույթները պարտիական պրոպագանդայի և ագիտացիայի դերի ու նշանակության մասին:

**Բ. ՎՈԼԻՆ—«Վ. Ի. Լենինը Պովոլժիեում»:** Հայպետհրատ, 140 էջ, տիրաժ 10 000, գինը 1 ռ. 60 կոպ.:

Կենսագրական այս գրքույկում հեղինակը տալիս է Լենինի կյանքի դրվագները Պովոլժիեում՝ սկսած 1870 թվականի ապրիլից մինչև 1893 թվականի օգոստոսը: Գիրքը բաղկացած է չորս բաժնից. I—Վ. Ի. Լենինը Սիմբիրսկում. նկարագրվում է Լենինի մանկությունը և վաղ պատանեկությունը՝ 1870 թվականի ապրիլից մինչև 1887 թվականի հունիսը. II—Վ. Ի. Լենինը Կազանում. ընդգրկում է 1887 թվականի դեկտեմբերից մինչև 1888 թվականի հոկտեմբերը, III — Կուկուշկինյան աքսորը և Վ. Ի. Լենինի վերադարձը Կազան՝ 1888 թվականի հոկտեմբերից մինչև 1889 թվականի մայիսը և IV — Վ. Ի. Լենինը Սամարայում՝ 1889 թվականի մայիսից մինչև 1893 թվականի օգոստոսն ընկած ժամանակաշրջանի կյանքն ու գործունեությունը:

---


Խմբագիր՝ Ա. ԱՍՐՅԱՆ,
Թողարկիչ՝ Բ. ՄԽԻԹԱՐՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան
ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—56—92

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. (գլխավոր խմբագիր),
ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՅՐՅԱՆ Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս:

ՎՖ 00961 Պատվեր 351 Տիրաժ 10.350

Ֆք. 7 մամուլ, մամուլում 68,340 նիշ: Ստորագրված է տպագրության 17/II 1960 թ.:

Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակին չեն վերադարձվում:

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51: